# ԼՈՒՍԱՒՈՐ ՎԱՐՔ
## ԵՒ ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ
## ՍՐԲՈՑ

Որք կան 'ի Հին Տօնացուցի Եկեղեցւոյ Հայաստանեայց ։

Յօրինեալ վաւերական բանիւք ճառընտրաց Վարուց և այլոց աղբերաց, համառօտ ծանօթութեամբք ։

'Ի Հ. Մկրտիչ վարդապետէ Աւգերեան, յաշակերտութենէ մեծին Մխիթարայ Աբբայհօր ։

Հրամանաւ Տն. Տն. Ստեփաննոսի Ագոնց Աբբայի և Արքեպիսկոպոսի ։

[illegible] ծախուք Մանուկ Աղայի Կարինեցւոյ մահտեսի Աճատուրեան ։

## ՀԱՏՈՐ Գ.

Միջոց Վարդավառի մինչև ց[illegible] ։

[illegible] մարգարէն, մինչև 'ի փոխումն [illegible] ։



1813. 'Ի ՎԵՆԵՏԻԿ. ՌՄԿԲ ։

'Ի Վանս Սրբոյն Ղազարու ։



Ոչ արասցէ տր ած իրս ինչ. եթէ ոչ յայտնեսցէ ծա
ռայից իւրոց մարգարէից:



# ՎԱՐՔ ԵՒ ԿԱՏԱՐՈՒՄՆ

## Սրբոյն Եսայեայ մարգարէի :

Հ. մայիսի. 12. կմ 19: Տր ԷԷԼ, և հին ճաշոցս, յուլիսի. 6: Յ. և Հ=Յ. մայիսի. 9: ժամագր. յն. մայ. 9. և յունվար. 25: Լ. յուլիսի. 6: Բոլլանդեանն աուլլեբրիոս. 'ի Է. հատ. յուլ. 6. էջ. 250: Սբն եղիփան. դորոթեոս. հերոնիմոս. և այլ հարք և մեկնիչք:



ՐՅԾԱԿԱՄԱՒԹՈՒՐՆ Եսայիաս՝ հռչակաւորն 'ի մարգարէս, և բարձրաբարբառ աւետարանիչ, էր յազգէն յուդայ՝ ծնեալ և սնեալ յեր՟մ, որդի ամովսայ. վ՟յ և ամովսածին կոչի. բայց ոչ որդի մարգարէին ամովսայ՝ որպէս ոմանց թուեցաւ, այլ ամովսայ թագաւորազնի՝ եղբօր, ոմ՟ կարծի՝ ամասիայ արքային յուդայ. որում և եսայիաս լինի հօրեղբօրորդի ոզիայ արքային հօրն եզեկիայ. յոր յաւելուն այլք՝ թէ եզեկիա փեսայացաւ եսայեայ, և ծնաւ զմանասէ 'ի դստերէն եսայեայ. որպ՟ս թէ մանասէ իցէ



թոռն

Թոռն եսայեայ ՚ի մօր կողմանէ ։ (1)

Սորդ՝ եկեաց եսայի ճը երկայն աւուրս, եւ որում մարգարէանայր յաւուրս չորից և հընդից թագաւորացն յուդայ, սկսեալ յաւուրցն ոզիայ՝ որ թագաւորեաց ամս ծբ. և յովաթամայ՝ որ թագաւորեաց ամս ժզ. և եզեկիայ՝ որ թագաւորեաց ամս. իթ. և եհաս մինչև յաւուրս մանասէի ։ Նաայիաս կոչի ածատես և ածախօս կամ ածաբան ՚ի տեսանօղս. վասն զի արժանաւորեցաւ մեծամեծ տեսլեանց և յայտնութեց բարձրելոյն. և եղև համարձակախօս և հզօր քարոզ ածեղէն պատգամաց՝ ահաւոր և պերճաբան վայելչութբ առաջի թագաւորաց և իշխանաց և ամ ժողովրդեան ։ Նա յայտնագոյնս և խորագոյնս գուշակեաց զխորհուրդս փրկական տնօրէնութե բանին ածյ. զի՛ կուսէն ծնունդն ասեմ էմմանուէլի, և զոր վս ծի զմահն անպարտական գառինն ածյ. զմերժումն հրէից, և զկոչումն հեթանոսաց, և զփառաւորութի սիոնի նորոյ. որպ և զմիւսանգամ գալուստ փրկչին, և զհաստատութին յաւիտենից, ոչ այնչափ իբրև աղօտ գուշակ, որչափ թէ իբրև աւետարանագիր նախաձայն ։

Փայլեաց և սքանչելահրաշ նշանագործութբք. զի ՚ի ձեռն եսայեայ և աղօթիւք նր դարձոյց ած զարեգակն յաւուրս հիւանդութե եզեկիայ արքայի, և բժշկեաց զթագաւորն. և դարձեալ ետ սատակել զբանակն ասորեստանեայց ՚ի ձեռն հրեշտակի ածյ ։ Միաբան աւանդութի է նախնեաց և այն,

թէ

թէ ըղխեցոյց և ջուր յաւազանն սելովմայ՝ որ թարգմանի առաքեալ, 'ի պաշարմանն եհմի յերեսաց ասորեստանեայց. յորմէ ըմպէր ժողովուրդն հրէից, ուր թշնամիք ոչ գտանէին անդ ջուր : (2)

Արդ՝ յորժամ եհաս եսայի 'ի խոր ծերութ̃, տեսեալ նր̃ զանհնարին չարիս կռապաշտութե̃ և արիւնհեղութե̃՝ զոր առնէր մանասէ արքայ յուդայ տղայ տիօք և չարասէր մտօք, համարձակ յանդիմանէր զանօրէնութիւն թագաւորին և զխորհրդականաց նր̃ : Իսկ մանասէ ոչինչ զանգիտեալ 'ի սպառնալեացն այ̃՝ որ 'ի բերանոյ մեծին եսայեայ, և ոչ յիշատակեալ զայնչափ երախտիս այ̃ մարգարէին, և ոչ ակնածեալ յարենակցութե̃ կի̃ 'ի պատուական ալեաց, հրաման ետ նորորինակ կտտանօք չարաչար սպանանել զայրն այ̃՝ կենդանւոյն սղոցելով զնա 'ի գլխոյն և 'ի վայր. զոր և արարին իսկ անօրէն սպասաւորք. քանզի սղոցեցին զնա իբրև զգերան յերկուս մասունս՝ մեծ սղոցաւ, որով հերձուն զբուն ծառոց. և այն՝ էր̃ գրելոյ բազմոց, փայտեայ սղոցաւ՝ թերևս առ առաւելագոյն կտտանս, զի դժուարաւ մեռանիցի :

Յայս միտս իմանան հարք և հին մեկնիչք զառաքելոյ ասելն, սղոցեցան, 'ի հաստատութ̃ վկայական կատարմանն եսայեայ. այլ̃ և առ ազգն եբրայական նոյն աւանդութի̃ է : (3)

Սոյն 'ի բազմաց, թէ 'ի մտանել ծ̃արեալ մարգարէին յայն տագնապ քստմնելի տան-

ջանաց՝ խնդրեաց ջուր 'ի դահճաց, օրհնակելով իմն զանցս քի փրկչին իւրոյ 'ի վերայ խաչին՝ 'ի բարբառել անդ, ծարաւի եմ։ Եւ երբև չետուն նմա արբուցմն՝ անողորմ դահիճքն, որ ինքնին երկնառաք ջրով զովացոյց ասեն զծարաւ սրբոյն. կմ թէ 'ի ձեռն սպասաւորութե հրեշտակաց առաքեաց նմ ջուր յաւազանէն սելովմայ բղխելոյ աղօթիւք նորա։

Եւ եղև յետ կատարման սբ մարգարէին՝ առեալ ոմանց յերկիւղածաց ժողովրդեան զպատուական մարմին նր՝ թաղեցին մերձ 'ի սելովամ յանցս ջրոց առ կաղնեաւ հռոգելոյ արտաքոյ դռբաւոնի. որպէս զի նոյն ջուր սքանչելի և ածառաք՝ որ բղխեաց 'ի ձեռն եսայեայ, յորմէ և աւազանն կոչեցաւ սիլոյէ կմ սելովամ, այս է առաքեալ, աղօթիւք նոյն սբ մարգարէին բղխեսցէ անպակաս, և լիցի ամ ժամանակին 'ի բժշկութի ամ ախտացելոց. որև կայր ցաւուրս փրկչին. և անդ լուաց զաչս իւր 'ի ծնէ կոյրն՝ բանիւան, զի տեսցէ. քանզի այն՝ որ կարօղ էր բանիւ և եթ ասել և բանալ զաչս կուրին, որ պատուասիրել կամեցեալ զծառայն իւր զեսայի՝ հաճեցաւ, զի աչք կուրին ծեփեալ կաւով՝ զոր զանգեաց 'ի թքոյ ածային բերանոյն, զկատարեալն առցէ զառողջութի յաւազանէն անտի սելովմայ, 'ի լուսաղբիւրն եսայեայ տալով զլոյս։

Իսկ մարմին սբ մարգարէին մնաց անդէն 'ի սելովամ հրէաստանի զամս բազումս մինչև

'ի

'ի հինգերորդ դար զկնի քսի ։ և յայնժամ յայտնեցաւ, և ածաւ 'ի քրիստոնէից 'ի պանիադ քաղաք՝ որ և կեսարիա փիլիպպեայ կմ պաղեստինոյ ։ Որ տեղեկացեալ կայսրն յունաց փոքրն Թէոդոս, կմ յաջորդ ինքնակալութեան նր մարկիանոս, ետ բերել 'ի Թագաւորեալ քաղաքն 'ի կոստանդինուպօլիս ։ և եդ զայն պատուով մեծ 'ի վլաչերնաս 'ի տաճար սրբոյն լաւրենտիոսի, շինեալ առ նմին առանձին վկայարան կմ մարգարէարան յանուն սրբոյն եսայեայ մարգարէի, ուր հանդիսապէս տօնախմբութիւն լինէր նր (4) ։ մինչև զկնի ժամանակաց յաւուրս վրդովմանց մեծի քաղաքին այնորիկ՝ գողացեալ ոմանց զսբ նշխարս եսայեայ՝ տարան սփռեցին յարևմուտս ։ ուր և ցարդ գտանին 'ի զանազան եկեղեցիս այլևայլ մասունք սբ ոսկերաց նորա ։ (5)

Այլ մանաւանդ՝ որ զմարգարէն ոյ չարաչար սպան, նորին սքանչելի տեսանողին աղօթիւք՝ ոչ արժան է հաւատալ, թէ անյիշաչարութբ բարիս մաղթեաց չարարարին իւրոյ, խրատեալ յայ՝ գայր 'ի դարձ անկարծելի, յօրինակ սմ ծանրաբեռն ապաշխարողաց ։ զի ոչ յայտ է 'ի պատմութեն, գերի վարեալ 'ի բաբելոն՝ 'ի կապանս անդ եկն 'ի զղջումն յոյժ, և արար զայն աղօթս կատարեալ ապաշխարողի, տր ամենակալ ։ և տր դարձոյց ընդ նա անդրէն յաթոռ իւր և 'ի թագաւորութիւն իւր ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) [redacted]այրն Եսայեայ Ամովս՝ յեբրայական ընթերցուածի գրի սկզբնատառիւն ալէֆ, և ծադէ վերջնատառիւն․ իսկ անունն Ամովսայ մարգարէի գրի ային սկզբնաւորութբ, և սամէք յանգիւն: Այլ այսու նմին մի և նոյն անձն համարեցաւ 'ի կղեմայ աղեքսանդրացւոյ, յեպիփանէ, 'ի կեդրենոսէ, և յայլոց ոմանց․ ուր այլք 'ի հնոց և 'ի նորոց իրաւամբք զանազանեն․ զի Ամովս մարգարէն էր հովիւ․ իսկ հայրն Եսայեայ աւանդի լինել յեբրայեցւոց՝ եղբայր Ամասիայ արքայի: Իսկ թէ Եսայի էր նախանի կամ նախահաւ մանասէի, որ մանասէ էր թոռն Եսայեայ 'ի դստերէն՝ դարձեալ վկայէ հերոնիմոս լինել աւանդութի եբրայական․ նոյնպէս խօսի և խրիզորոս: Եւ զի որ գիրն յիշէ զանուն մօրն մանասէի, եփսիբա․ (դ․ թագ․ իա․ 1․) և ոչ յիշէ զանուն հօրն եփսիբայայ (որ զանուն Եսայեայ), զայս պատճառ տան հրեայք, թէ կամի գիրն յայտ առնել՝ եթէ անարժան էր մանասէ այնպիսի հաւրս:

(2) Ջուրն՝ որ 'ի սեղոված կմ 'ի սեղովէ կմ 'ի սիլովի, աղօթիւք Եսայեայ բղխեալ ասեն է եպիփանու և ընդ գործեսի բազում մատենագիրք և յայսմաւուրք զանազան ազգաց․ նոյնպէս է գործեսի գրեն բազումք և զերկնաւոր ջուրն 'ի զովացումն Եսայեայ՝ յառաջ է զաղօթելն, կմ 'ի ժամու սղոցմանն:

(3) Ստոյգ է առ ամենեսին՝ թէ պատճառ նահատակութե Եսայեայ էր համարձակ կշտամբելն նր զանօրէնութիւս մանասէի և իշխանաց նորա և ժողովրդեանն․ թող զի և անգստին կոչեալ էր նր զնմ իշխանս սոդոմացւոց և ժողովուրդ գոմորացւոց․ և բազմօք յայտնաբանեալ՝ թէ 'ի կուրանալ հրէից ունի ած կոչել փոխանակ նց զհեթանոսս: Յաւելուն ռաբբիք հրէից և զայն պատճառ դժուարահաւատալի, որ թէ չարախօսեալ իցեն նախնիք նորեանց զԵսայեայ՝ թէ հակառակ մովսեսի խօսեցաւ կմ գրեաց․ զի ուր ասացեալ էր ած առ մովսէս, թէ ոչ կարես տեսանել զերեսս իմ, զի ոչ տեսանէ մարդ զերեսս իմ և ապրի, Եսայի վկայեաց զանձնէ, թէ տեսի զտր նստեալ յաթոռ բարձրութե և վերա-

բացելոյ. Թող զի և զարդարոյն ասէ, զԹագաւորն փառաց տեսցեն աչք նորա:

Միաբանին հրեայք ը՟ մեզ յասել՝ Թէ Եսայի սղոցեցաւ, բայց հանդերձ պատճառութ՟ք այսպիսի հանգամանաց. ոչ Թէ 'ի փախչել մարգարէին 'ի ձեռաց մանասէի՝ ծառ մի եղևնափայտի պատառեալ ինքնին՝ 'ի ներքս ամփոփեալ իցէ զմարգարէն. և անդ 'ի մէջ ծառոյն հանդերձ ծառով սղոցեալ իցեն զնա դահիճք հրամանաւ մանասէի: Այլ Թողեալ զանստոյգ բանս՝ դիցուք 'ի ստուգութ՟ի սղոցման մարգարէին զվկայութիւ ոմանց 'ի նախնեաց: Ս՟ն յուստինոս վկայ և փիլիսոփայ 'ի տրամախօսութ՟ն իւրում ը՟ տրիփոնի հրէի՝ յետ 'ի մէջ ածելոյ զյայտնի վկայութի եսայեայ վ՟ս կրկնակի գալստեանն ք՟ի, ասէ, Թէ ոչ զայլս 'ի մարգարէից սպանէք, նոյնպէս և զեսայիաս * փայտեայ սղոցաւ սղոցեցէք ||: Նոյնօրինակ պարզապէս 'ի վ՟ր եսայեայ իմանան զբան առաքելոյն՝ ἐπρίσθησαν, հաստատելով Թէ եսայի սղոցմամբ կատարեցաւ, տերտուղիանոս, որոգինէս, գորոԹէոս, իսիդորոս, օգոստինոս, հերոնիմոս, ոսկեբերան, եպիփան, Թէոդորետոս, և այլք 'ի յոյն և 'ի լատին վ՟պաց, ո՟չ և հարք և վ՟պ.ք հայաստանեայց. մինչ զի և 'ի լուսանցս ձեռագիր օրինակաց՝ հանդէպ աստուածածոյ առաքելոյն, * ἐπρίσθησαν ||, գնի 'ի մէջ յայտնապէս, * Ἡσαΐας ||: Թող զձայնակցութի յայսմաւուրաց մերոց և այլոց ազգաց:

Բա՟ն ըսցի նոճապէլն տերտուղիանոսի 'ի Ժ՟Գ. Գիրս. ընդդէմ Մարկիոնի, զեսայեայ. * Զոր այն անմիտ ժողո-
„ վրդեան, անբիծ գտեալ՝ անպարտական. փայտիւ հեր-
„ ձեալ (սղոցանման), դառըն մահուամբ՝ զնա սպան ||:
Որ 'ի վ՟ր բերէ սոլերիոս բուլանդեան ը՟ աւափխոէի.
* Որ էր արդարև դառն և աչագին տանջանք, մանա-
„ ւանդ յայր ծերունի՝ ճ՟ի ամաց: Ուստի յայտ է, Թէ
„ եսայի մահուամբ իւրով՝ որ 'ի ձեռն փայտի, նախանը-
„ կար օրինակեաց զմահ ք՟ի 'ի խաչափայտին. որպէս և
„ կենօք իւրովք զկեանս ք՟ի, մանաւանդ Թէ և ան-
„ ուամբ իւրով զանուննն յ՟ի նկարագրեաց. քանզի ե-
„ սայիաս եբրայեցերէն Փրկութի լ՟ի, կմ՟ Փրկիչ տ՟ն,
„ կմ՟ Յիսուս Ա՟Ծ ||:

Գրէ և ս՟բն ամբրոսիոս 'ի ղ. Ե. * Ո՞յն իցէ 'ի գլուխն
„ վերաւորեալ: Սա ինքն է եսայի, զորոյ զկազմած
„ մարմնոյ կարող եղև դիւրաւ հերձուլ սղոցն, այլ ոչ
„ զհաւատոն ցածոյց, և ոչ զհաստատութիւն ոգւոյն
„ խը-

„ խղեաց, և ոչ զպնդութիւն սրտին երկփեղկեաց ||։
Պանծալի է և պերճախօսութի ազգին զեննոնի վկայի՝ եպսին
վերոնայու, յասել անդ զեսայեայ. * Եսայի յորժամ զքն
„ քարոզէր, կմ̅ այն ինչ զհանդերձելոյ դատաստանէ
„ ճառս 'ի մէջ ածնոյր ը̅դդէմ իւրեան ժողովրդեան,
„ ահագին գաղանութե̅ շարժեալ 'ի բարկութի բար_
„ բարոսամիտ խուժանն հայհոյչաց, 'ի գլխոյն 'ի վայր
„ հերձուին՝ անողորմ տանջանօք իբր յերկուս պատա_
„ ռեալ ծուէնս. ուր և 'ի գլխոյն ը̅ ականջս հրամայիւր
„ սղոցել մինչև ցծործրակն . . . Յորժամ 'ի գլուխն՝
„ ղընդունարանն ասեմ զգայութեց բոլորից՝ ճանա_
„ պարհ առնէր սղոցն, և ատեալ ատեալ կրճամամբ ա_
„ տամանց զակօսս պատառէր, սահեալ անցանէր՝ ուր
„ ինձ թուէի, խիղարն ատամնամուխ ը̅ շարս տատամանց
„ նր̅։ Եւ այն ինչ սղոցիչն փութով խիղախմանն 'ի սե_
„ նեակ անդր սրտին 'իխոր խաղացուցանէր զգործին,
„ անդէն և անդ յորդահոս բղխմամբ աղբերականց ը̅
„ արձակ երակս ծիրանաթիւր ծաւալեալ՝ անձրև յոր_
„ դէր քրքմառեալ . . . Բացան այնուհետև ներքին
„ փորոտեաց գեղեցկաշար թանգարանք ազնիւք՝ մաք_
„ րութեն քարոզի . . . Աւլ բելիար (մանասէ) որդին
„ եզեկիայ՝ այր արեանց և վատնիչ հայրենեաց, կա_
„ խարդասարաց առաջնորդ, 'ի մէջ լանջապանակաց
„ մաքրափայլ լանջաց յեակար հաւատոյն ժառանգութե
„ քաղաքական քարոզութե՝ զղ իճանն մատենից յուզէր ||։
Եւ հեղինակ անկատար գործոյ 'ի մտթ. ճառ խղ. ասէ
'ի բերանոյ տն առ եհմ. * Առաքեցի առ քեզ զեսայի,
„ և սղոցեցեր զնա. առաքեցի առ քեզ զերեմիա, և
„ քարկոծեցեր զնա. առաքեցի զեզեկիէլ, և ձգեալ
„ զնա ը̅ քարինս՝ ցնդեցեր զուղեղն նր̅ ||։ Յայտնի է
և աստուածածն հօգեկիր հռետորին մերոյ 'ի բանն. ծա.
* Որ զի թէ մանասէի փրկութին խոստովանելի է՝ ան_
„ տուստ վկայեալ յետ այնքաննեաց մեղանաց անբժըշ_
„ կականաց. որ արեամբն արդարոց ելից զնուիրեալն
„ մեծի թագաւորին հրաշանուն քաղաք հայրենի, ըստ
„ մարգարէագիր անսուտ պատմութեն։ Որ և զմեծն
„ իսկ տեսանողաց՝ բազմերախտիս ձեռնկալութե՝ խնա_
„ մոզորէնն պաշտպանութե՝ նախնակերտ յարկին տես_
„ չութե, մանկավարժ ինքեան և նախնի, մեքենայիւ
„ մահու սղոցեաց, 'իյերկուս մասունս խզեալ՝ դժն_
„ դակ տանջանօք մաշեաց իբր խորհրդով ապաստամբու_
„ թե՝ զյուսոյն փրկանակ կտրեալ . . . . և զաղօթկե_
„ րացն

,, րացն բազմութիւն սուսերաւ մահու խողխողեալ. ըն-
,, տանի գաւազան, մերձաւոր վտանիչ, հարազատ սա-
,, տակիչ, կցորդակից սպանող ||։

(4) Կեդրենոս գրէ յէջս 442. թէ * 'Ի լէ ամի (Թէո-
,, դոսի փոքու) 'ի պանեադայ բերեալ եղեն (նաւու 'ի
,, բիւզանդիա) նշխարք մարգարէին Եսայեայ, և համ-
,, գուցան 'ի տաճար սրբոյն Լաւրենտիոսի ||։ Իսկ Կոդի-
նոս գրէ յղ. ծագման կոստ. երես. 48. այսպէս. * Տաճարք
,, սրբոյն Եսայեայ և Լաւրենտիոսի շինեցան 'ի Մարկիա-
,, նոսէ կայսերէ և 'ի կնոջէ նորա պուլքերայ, յորոց 'ի ժա-
,, մանակս նոր մարմինն Եսայեայ մարգարէի բերեալ եղե-
,, յեճմէ ||։ Զոր այսպէս միաբանեն քննիչք. որպէս թէ
առ Թէոդոսիւ բերեալ իցեն նշխարքն, և առ Մարկիա-
նոսիւ շինեալ իցեն վկայարանքն ։

(5) Աստանօր ծանիր, զի որպէս եսանի յօրինակս ինչ
տօնացուցից. յառաջ քան զաւուրս շնորհալւոյն՝ որ ե-
ւօրեայ կարգեաց զպաշտամունս տօնի վարդավառին,
մինչդեռ միօրեայ էր տօն այլակերպութեն յաւուր կիւ-
րակէի եւեթ, անդ միջապէս 'ի շբթ կատարիւր տօն սրբոց
աբրահամու և խորենայ, և անաշխատ բժշկացն կոզ-
մայի և դամիանոսի. 'ի գշբի տօն կղտփրուզայ վկային,
որ է Ծծատուր. և ապա 'ի եշբի տօն Եսայեայ մարգա-
րէի ։ Այլ. քանզի այժմ գշբի և դշբի են տրունական,
վսյ և տօնք այդց վկայից փոխադրեցան 'ի միջոցն յիս-
նակաց՝ մօտ 'ի կատարած տօնացուցին. վսյ անդ մնայ
և մեզ գրել զնշ վերս ։



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Թադէոսի առաքելոյն, և Սանդխտոյ կուսին, և որոց ընդ նմա։

Դ. դեկտ. 23։ Տօնելի. դեկտ. 17. և 23։ Ճառընտ. Բ. ձճէ = ձշե. և ջհզ = ջհը։ և Ա. մճդ = մկէ։ Խորեն. Բ. 30. 31. և այլ պատմիչք հայոց, նա և Եւսեբ. պատմ. եկեղ. Ա. 13. և այլք 'ի ն. լա. և առաջ։ (1)



## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ

Հայր հոգևոր առաջին՝ սբ առաքեալն Թադէոս՝ էր մի յերանելեաց և 'ի գլխաւորաց 'ի մէջ եօթանասուն և երկու աշակերտացն քնի, երկուորեակ եղբայր համարեալ սրբոյն Թովմայի առաքելոյ՝ որ մին է յերկոտասանից (2)։ Սա եւս յետ համբառնալոյ փրկչին՝ յորժամ բաժանեցին առաքեալքն վիճակաւ զաշխ 'ի մէջ իւրեանց՝ գնալ և աշակերտել զամ հեթանոսս ընդ ամ բանի, գործակցաւ եօթանասուն և երկու աշակերտաց՝ որպէս թէ վեց վեց 'ի նոցանէ թևակից գոլով միոյ միոյ յառաքելոց, յիշեաց սբն Թովմաս զխոստումն յսի առ աբգար արշամեան արքայ հայոց՝ առաքել զոմն յաշակերտաց իւրոց առ նա

նա զկնի համբառնալոյ իւրոյ՝ առ 'ի լուսաւորել եւ բժշկել զնա ։ Սոյն եւ հաւանութեամբ սրբոյն պետրոսի եւ այլոց առաքելոց առաքեաց անյապաղ զեղբայր իւր զերանելին Թադէոս իբր առանձին առաքելութեամբ 'ի կողմանէ քրիստոսի առ աբգար ։

Արդ՝ եկաւորեալ սրբոյն Թադէի 'ի միջագետս ասորւոց եւ հայոց՝ քարոզէր եւ սերմանէր զբանն կենաց իբրեւ 'ի սեպհական վիճակի իւրում, եւ առնէր նշանս եւ սքանչելիս անուամբն յիսուսի ։ մինչեւ եկն եհաս յեդեսիա քաղաք, որ եւ ուռհայ՝ աթոռ Թագաւորութեան աբգարու հայոց արքայի, միանգամայն եւ իշխանի ազգին ասորւոց ։ զի 'ի ձեռս արշակունի Թագաւորաց մերոց էին 'ի ժամանակին համօրէն կողմանք միջագետաց ։ Եւ իջեւանս կալաւ Թադէոս զառաջինն 'ի տան տոբիայ կամ տուբիայ բագրատունւոյ՝ մեծի նախարարին հայոց, որ հայրենեօք 'ի հրէից անտի էր ։ եւ սկսաւ բժշկել անդ զբազումս 'ի պէսպէս ախտից եւ 'ի հիւանդութեանց, եւ լուսաւորեաց զնոսա երկնային լուսովն՝ 'ի ներգործութեամբ շնորհաց հոգւոյն սրբոյ ։ մինչեւ ինքնին հասցէ լուրն 'ի լսելիս Թագաւորին՝ ոյր վասն առաւելապէս առաքեալ էր ։ որպէս եւ եղեւ իսկ ։

Քանզի լուեալ արքայի զգործս Թադէոսի՝ իսկ եւ իսկ ծանեաւ, եթէ նա է առաքեալն քրիստոսի եւ 'ի քրիստոսէ առ ինքն ։ Նմին իրի մեծափափաք կարօտանօք եւ մեծարանօք հրաւիրեաց զնա յարքունիս ։ Եւ իբրեւ յանդիման եղեւ ար-

արքայի սր̃ն Թադէոս , տեսեալ աբգարու
տեսիլ սքանչելի 'ի դէմս սր̃ առաքելոյն՝ իբ֊
րև նշան երկնառաք հրեշտակի լուսափայ֊
լելոյ յա̃ծուստ , զահի հարեալ անկաւ 'ի վր̃
երեսաց իւրոց , և երկիր եպագ նմա ։ Իսկ
սր̃ն Թադէոս կանգնեաց զնա , և մատու֊
ցեալ եդ ձեռն 'ի վերայ նորա , և բժշկեաց
զնա բոլորովին 'ի բազմամեայ ցաւոց նորա .
և լուսաւորեաց զն̃մ զտուն նր̃ քն̃ական հա֊
ւատով ։ Բժշկեաց և զաբդիու որդի աբդեայ
'ի չար ցաւոց՝ զայլն երևելի 'ի դրան Թա֊
գաւորին . և օր ը̃ օրէ հրապարակաւ քարո֊
զեալ 'ի քաղաքին առաջի ա̃մ բազմութեան
զհաւատս քն̃ի ա̃յ՝ լուսաւորեաց զն̃ա մկրտու֊
թե̃ սր̃ աւազանին հանդերձ Թագաւորաւն .
մինչ զի ինքնին իսկ Թգ̃աւորն աբգար լինէր
այնուհետև քարոզ Ճանապարհին Ճշմար֊
տութե̃ , և յորդորիչ ա̃մցն յա̃մ բարիս ։

Ընդ յեդեսիա՝ ուր էր և անձեռագործ
դաստառակն քն̃ի առաքեալ վաղագոյն ըն֊
ծայ առ աբգար , հիմնարկեաց նախ սր̃ն Թա֊
դէոս , և այն՝ յառաջ քան զայլ առաքեալսն՝
շինել զեկեղեցի , ուր հանգոյց զայն սր̃
դաստառակ . այն տաճար է՝ որ յետոյ նուէի֊
րեցաւ յանուն սր̃ ա̃ծածնի . կարգեաց և
քահանայս և պաշտօնեայս . և ձեռնա֊
դրեաց եպ̃ս քաղաքին զադդէ կերպասա֊
գործն՝ զոր աշակերտեաց , ո̃պ ասի՝ 'ի տանէ
բագրատունեաց . և գրեալ կանոնս զգուշա֊
ւորս՝ ետ 'ի նա , և յանձնեաց 'ի նր̃ ձեռս
զհօտն ա̃յ ։ Ապա օրհնեալ սր̃յն Թադէի

զԹագաւորն եւ զհաւատացեալ ժողովուրդ-նորա, եւ Թողեալ անդ զոմանս յաշակերտաց իւրոց 'ի հոգեւոր վերակացուԹիւն նց, եւ 'ի գործակցուԹի ադդէի հայրապետի, ինքն եառ ԺԲ իւր զայլս յաշակերտաց, եւ դիմեաց 'ի ներքսակողմն Հայոց աշխարհին, ունելով եւ հրովարտակ յաբգարէ առ քեռորդին իւր սանատրուկ, որ նստէր յարտազ գաւառի 'ի շաւարշան քաղաք 'ի Թգրական հովանոցն՝ իբրեւ իշխան արքունի զօրաց, եւ փոխանորդ արքայի ։

Հասեալ անդր սրբ առաքելոյն՝ քարոզէր զբանն կենաց առ ամենեսին՝ նշանօք եւ զօրուԹբ սրբ հոգւոյն ․ մինչեւ հաւատալ բազմաց 'ի քսն, ընդ որս հաւատաց եւ ինքն սանատրուկ ․ այլ ոչ կատարեալ սրտիւ ․ քանզի երկեալ էր 'ի մտի Թագաւորել 'ի վր ազգին ․ եւ գիտէր՝ զի նախարարք դիցապաշտք չառնուն յանձն զհաւատացեալ Թագաւոր ․ սորին վասն չետ տեղի եւ սրբյն Թադէի կալ մնալ զբազում ժամանակս առ իւր ։

Յայնժամ եԹող անդ սրբ առաքեալն զմի յաշակերտաց իւրոյ՝ զաքարիա անուն, եւ ինքն եկեալ շրջէր յայլեւայլ կողմանս Հայոց մեծաց մինչեւ 'ի սահմանս աղուանից ․ եւ յամեալ ոչ սակաւ ժամանակս՝ եգիտ զրեԹէ զամենեսին ընկղմեալս 'ի խոր խաւար հեԹանոսուԹն, եւ յոյժ սակաւս՝ որք յօժարեցին ընդունել զլոյս ածգիտուԹե ․ բայց ուր եւ ետ նմա ած աշակերտս հաւատոց՝ ձեռնադրեաց 'ի նոցանէ քահանայս ․ զի արմա-

տացի քրիստոնէութին զօնէ 'ի ծածուկ ։ Գնաց սրբն Թադէոս և 'ի մաժակ զամրաց , որ և կեսարիա կապադովկացւոց . և աշակերտեալ անդ զոմանս՝ հաստատեաց եկեղեցի ուրոյն . և ձեռնադրեաց նոցա եպս զմի ոմն յաշակերտելոց՝ Թէոփիլոս անուն . որում յաջորդեցին և այլք զկնի առաքելական շաւղօք ։

Իսկ մինչդեռ սբ առաքեալն շրջէր 'ի քարոզութե , մեռաւ երջանիկ Թգւորն աբգար . և սանատրուկ Թագ կապեալ անձին՝ Թագաւորեաց 'ի մեծն հայս , և հաստատեցաւ անդրէն 'ի հեթանոսական կրօնս իւր . և զկնի սակաւուց 'ի մեռանիլ նաև անանուն որդւոյ աբգարու՝ տիրեաց և իշխանութե նորա . և եղև ահարկու ը̅դ ամենեցուն ։ Յայնմ ժամանակի 'ի գալ միւսանգամ սբյն Թադէի 'ի սահմանս միջագետաց՝ այց առնել զաշակերտելովքն , պատահեցան նմա զճանապարհայն արք հինգ պատուականք և Թագաւորազունք , որք գային 'ի հռովմայ դեսպանութբ առ նոր արքայ հայոց սանատրուկ . և անուն գլխաւորի նոցա խուիւսի , ը̅ ոսկի . սոքա իբրև լուան զքարոզութիւն սբյն Թադէի , և տեսին զնշանսն՝ զոր առնէր , հաւատացին 'ի քս . և մկրտեալ 'ի նմանէ՝ աշակերտեցան նմա . և երանելին ոսկի ձեռնադրեցաւ քահանայ ։ Շրջեալ սմ ըդ-ժամանակ ինչ ը̅ առաքելոյն 'ի քարոզութե՝ յետոյ առանձնացաւ 'ի միայնարան ճգնութե 'ի լեառն ծաղկեոյ մերձ յակունս եփրատայ .

ուր և նահատակեցան իսկ յետ բազում ժա-
մանակաց՝ 'ի պատճառս աշակերտելոյ նոցա
զուքխասանս :

Իսկ սբն Թադէոս դէմ եդեալ գնաց ան-
դրէն յարտաղ գաւառ՝ հաստատել զառա-
ջին աշակերտեալսն . և Թագաւորն սանա-
տրուկ լուռ լինէր 'ի ժամուն . քանզի տեսա-
նէր զնշանսն մեծամեծս՝ զորս առնէր երա-
նելի առաքեալն անդէն իսկ 'ի համբաւոյ
բանակսն , և բժշկէր զամ ախտս հիւանդու-
թեց . մինչև եկեալ և բազմաց յարքունա-
կան դրանէն՝ լսէին 'ի սբ առաքելոյն զքաղ-
ցրաբարբառ քարոզութի աւետարանին , և
սքանչանային ը զօրութիս՝ որք 'ի ձեռն նր
լինէին . քանզի տեսանէին՝ զի զբորոտս սըր-
բէր , զկաղս գնացուցանէր , զդևս հանէր ,
և զամ ցաւս անբուժելիս փարատէր ան-
ուամբն քի . վյ բազումք հաւատացին 'ի
քս , և յաւելան յառաջին հաւատացեալսն :
Լուաւ զայս ամ և դուստր Թագաւորին՝ կոյս
օրիորդ , որում անուն էր Սանդուխտ ( այ սա-
նատրկոյ դուստր ) , ծաղկահասակ և տղայ
տիօք , ը ոմանց իբրև ժ ամեայ , կմ ժեա-
մեայ (3) , այլ իմաստուն մտօք , վայելչադի-
տակ , և անհամեմատ գեղով երեսաց : Նորդ-
սա եկեալ 'ի գիշերի առ սբ առաքեալն՝ նըր-
տաւ առ ոտս նր , և լսէր ախորժ կամօք ըղ-
բան քարոզութե աւետարանին , և ուսանէր
մի առ մի զամենայն փրկական խորհուրդս ,
և քաղցրանայր 'ի հոգին . անկանէր առաջի
սբ ոտից Թադէի , և արտասուօք համբու-

րէր՝ կարդալով զնա իւր հոգւոյ հայր․ և ոչ թողոյր զնա զբազում աւուրս․ զի իսպառ վառեցաւ 'ի սրտէ, և միացաւ 'ի սէրն քնի։ Տեսեալ սբ առաքելոյն զջերմեռանդն գութ-սիրոյ նր առ քն՝ առեալ մկրտէր զնա յանուն հօր և որդւոյ և հոգւոյն սբյ․ և ահա նոյն ժամայն եղև նշան լուսեղէն յերկնից 'ի վր սբյ կուսին սանդխտոյ․ և 'ի միջոյ լուսոյն լսելի լինէր ձայն երկնաւոր զուարթնոց, որք ասէին․ զուարճացիր և ուրախ լեր դուստր գովելի և հարսն բարի երկնաւոր փեսային։ Մինչև տեսեալ բազմաց զլոյսն, և լուեալ զձայնն՝ նոյնժամայն հաւատացին 'ի քն։ Իսկ ոմանք 'ի քրմածողով դիցապաշ-տից ընթացեալ փաղփաղակի՝ պատմեցին զայս ամ խստերախ թագաւորին իւրեանց սա-նատրկոյ։ Յայնժամ չարագլխեալ անօրէն արքային՝ իսկ և իսկ հրաման տայր ունել և կապել զթագուհիս, և սրամահ առնել զհա-ւատացեալսն․ և զոմանս 'ի գլխաւորաց գան հարկանել և դնել 'ի դիպահոջ բանտի․ Ե որս և զսանդուխտ։

Եւ իբրև սուր 'ի վր եդեալ՝ սպանին զբա-զումս, անդէն եղև նշան յերկնից․ զի ծա-գեաց լոյս մեծ և ահաւոր 'ի վերայ սպանե-լոցն վն անուանն ան․ զոր տեսեալ այլոց՝ հաւատացին 'ի քն․ և անկաւ ահ 'ի վերայ անհաւատիցն․ և բազումք 'ի նոցանէ կու-րացան յահէ լուսոյ ճառագայթիցն․ և ոչ իշխեցին ձեռն արկանել 'ի սբ առաքեալն։ Յայնմ վայրի երևեալ նմա փրկիչն 'ի բար-

Ձանց՝ ասէ. պի՛նդ կաց Թադէոս, զի ես Յս քեզ եմ 'ի փրկել զքեզ: Եւ տեսեալ սբյն Թադէոսի զվշտպն իւր եւ զփրկիչն քն՝ լցաւ անպատում ուրախութբ. եւ անկեալ առաջի նորա հանդերձ արտասուօք ասէր. տէր իմ եւ ած՝ մի թողուր զիս միայն. զի ահա իբրեւ եկի 'ի բարբարոս ազգս 'ի դուռն Թագաւորիս՝ հրամանաւ եւ զօրութբ քով, որպէս եւ ասացերդ մեզ երանել եւ քարոզել զբանն կենաց, եւ սկսայ քարոզել զբանս սբ աւետարանին քո՝ զոր եդիր 'ի բերանի իմում, ոչ կամին լսել. զի եւ զորս հաւատացին 'ի քեզ տր՝ սրամահ կորուսին, եւ զոմանս զանիծ տանջեալ եդին 'ի բանտի. կամէին եւ յիս արկանել ձեռն, այլ յահէ փառաց քոց սասանեալ կորեան, եւ ոչ կարացին համդիպել ինձ:

Եւ ասէ տր. արի՛, եւ երեւեա՛ց դոցա, եւ համբերեա՛, զի բազում նեղութիւնք հասանեն քեզ. զի ոչ են ընդունելոց զքարոզութի աւետարանի իմոյ աստ, բայց միայն սակաւք 'ի բազմաց. եւ ես պահեցից զնս, եւ առից զնս առ իս. եւ որք կատարեցան վասն անուան իմոյ՝ տաց նց տեղի 'ի տան հօր իմոյ: Ասէ Թադէոս ցտր. տր եւ ես փութամ հասանել 'ի լոյս ածութեդ քո, եւ լինել երկնային սիրովն 'ի լուսեղէն փառաց քոց: Եւ ասէ տր. խնդա՛ եւ ուրախ լեր, զի կատարեցից զկամս հայցման քո: Եւ զայս ասացեալ՝ օրհնեաց զնա, եւ համբարձաւ:

Եւ 'ի գիշերին յայնմիկ գնաց ինքնակամ սբ

առաքեալն ուրախութ՟ մեծաւ 'ի բանտն արքունի, ուր պահէին զսբն սանդուխտ և զորս ը՟ նմա հաւատացեալս 'ի պատուհականացն. և ահա բացան դրունքն ինքնին, և եմուտ սբն Թադէոս 'ի ներքս՝ ասելով. խաղաղութի՟ ը՟ ձեզ սիրելիք իմ. զոր տեսեալ երանելի կապելոցն՝ զօրացան յանձինս իւրեանց: Դա մատուցեալ մեծին Թադէի առ կոյսն սանդուխտ՝ որ փոխանակ ոսկի կամարաց և զարդուց արկեալ էր զիւրև զշղթայս, համբուրեաց զկապանս նորա, և ասէ. երանի է քեզ դուստր երկնաւոր Թագաւորին: Իսկ սբն սանդուխտ համբուրեալ զոտս առաքելոյն՝ խնդրէր անդրէն լսել 'ի նմանէ փափաքանօք զբանս կենաց 'ի սփոփանս հոգւոյ իւրոյ, և առ անարատ պահել զանձն մինչև

իսպառ:

Եւ սբ առաքեալն բարեյորդոր բանս բարբառեալ ասէր. զօրացի՛ր և մարտի՛ր զբարւոք մարտն հաւատոց. դի՛ր 'ի սրտի քում զքս, և կարդա՛ բոլորով սրտիւ քով զնա. և հասցէ քեզ յօգնականութիւն, և զօրացուսցէ զքեզ. և յամօթ առնէ զհակառակորդս քո: Մի՛ քաղցրասցի քեզ սէր երկրային և անցաւոր, որ այսօր է՝ և վաղիւ կորնչի, և ոչ ևս երևի. այլ հաւատով և յուսով և սիրովն քսի ամրացո զքեզ. և ոչ մերձեսցի առ քեզ չարն. և ոչ կարիցեն հնարք չարին դրդուել զքեզ 'ի յուսոյն յաւիտենից և յանանց ուրախութեացն, յորս վայելեցուսցէ զքեզ ը՟ սբս և սիրելիս անուան իւրոյ՝ 'ի ձեռն կամաւորնա֊

հա

հաստատութե՟, զոր ընդունելոց եմ վ՟ն ան-
ուանն ք՟սի յ՟սի և ա՟յ :

Բ՟ստ սմին օրինակի սրտապնդեալ ս՟րբյն Թա-
դէի և զամենեսին, և հաստատեալ 'ի սէրն
ք՟սի՝ հրաման ետ լռութ՟ի յաղօթս կալ . և
ինքն տարածեալ զձեռս իւր յերկինս՝ ասէ .
Գոհանամ զքէն տ՟ր իմ և ա՟ծ յ՟ս ք՟ս՝ միածին
որդի ա՟յ, որ վ՟ս փրկութե՟ ազգի մարդկան
եկիր յերկիր . հայեաց այժմ յերկնից 'ի պատ-
րաստ բնակութե՟ քումմէ յաղախին քո սան-
դուխտ, որ ընծայեաց զողջոյն իւր քեզ .
որդ պահեա զսա տ՟ր իմ, և զօրացո յառա-
ջիկայ հանդէս մրցանացս հանդերձ ընկե-
րօքն . և ծագեա զլոյս ա՟ծութե՟ քո 'ի վերայ
սոցա, և արա յամօթ զխաւարակուլ թշնա-
մին . երևեցո զնշան զօրութե՟ քո 'ի վտան-
գեալս մարմնով . զի քո են, և 'ի քո ահեղ
անուն եղիցին զօրացեալք մինչև յաւիտեան .
վասն զի դու միայն ես ա՟ծ աստուծոց, և տ՟ր
տ՟րանց . և քեզ վայելէ փառք յ՟ամի :

Եւ 'ի կատարել աղօթից ս՟րբյն՝ յանկարծակի
եղև թնդիւն սաստկութեան, և վերացաւ
ձեղուն բանտին . և ծագեաց լոյս յերկնից
առաւել պայծառ քան զճառագայթս արե-
գական . և 'ի մէջ լուսոյն ձայն երկնաւոր
աւետեաց՝ որ ասէր առ նահատակսն . Բա-
ջալերեցարուք և պինդ կացէք, զի ես եկից
և առից զձեզ առ իս . և դու սանդուխտ՝ որ
եկիր զկնի իմ, և արհամարհեցեր զերկրա-
ւոր պատիւս, և կոչեցեր զիս հայր, տաց
քեզ զվերագոյն լոյսն, և առաւել պայծառ

քան զբազմաց ։

Նու'ի լսել սո̃ց կապելոյն զերկնաւոր զձայնն՝ լուծան կապանք նո̃ց, և ողջացան անդամք մարմնոց նո̃ց. և յարուցեալ փառաւորէին զքո̃ ա̃ծ, և ասէին միաբան. Տէ̃ր յո̃ քո̃ ա̃ծ մեր՝ գոհանամք զքոյոյ մարդասիրութեդ, որ եկիր յայց և 'ի խնդիր մեզ կորուսելոցս, և փրկեցեր զմեզ 'ի գերապաշտութեց, և ետուր մեզ յաղթող լինել 'ի վե̃ր աներևոյթ թշնամւոյն, և սփոփեցեր զմեզ քոյով այցելութ̃դ և այսպիսի սքանչելի երևմամբ. արդ՝ մեք զի՞նչ կարեմք մատուցանել քում ա̃ծութեդ, բայց զանձինս մեր մատուցուք 'ի հոտ անուշից հօրդ ։

Իսկ բանտապանացն տեսեալ զայն նշանս՝ ընթացան 'ի դուրս բանտին, և տեսին՝ զի դեռ բաց կային. և սո̃ առաքեալն յաղթօկայր 'ի մէջ կապելոց. վա̃յ զահի հարեալ դիմեցին'ի ներքս, և անկան առաջի սո̃յն թադէի դողալով և ասելով. և մեք հաւատամք յա̃ծն քո, զոր դու քարոզես սո̃դ ա̃յ. ընկա՛լ և խառնեա՛ զմեզ 'ի թիւ հաւատացելոցդ ։ Նու դարձեալ փարէին զոտիւք նո̃ր արտասուօք, աղաչէին և ասէին. թո՛ղ մեզ սո̃դ ա̃յ, զի ոչ 'ի կամաց, այլ ակամայ պահէաք զծառայսդ ա̃յ 'ի ծանր նեղութե վս̃ ահի անօրէն թագաւորին. և իբրև տեսաք զփառս բարձրելոյն՝ զոր դուն քարոզես, ծանեաք հաւաստեաւ՝ զի նա է արարիչ երկնի և երկրի. և մեք հաւատամք 'ի նա. ա̃ծ խորհրդովք, և խոստովանիմք զա̃ծութի նորա. և

ոչ

ոչ ոք կարէ այսուհետև մեկնել զմեզ 'ի նմանէ, ո՛չ կապանք և ո՛չ նեղութիւնք. արդ՝ արի՛ փութա՛ սրբդ տ̃յ. և խառնեա՛ զմեզ ընդ տամբ 'ի գունդդ քո̃ի. զուցէ մեռանիմք յահէ փառաց տ̃յն քո ։

Յայնժամ գիտաց սբ̃ առաքեալն, եթէ 'ի մէնէ տ̃յ եղև կոչումն նց̃. և քաջալերեալ զօրացոյց զն̃ս. մի՛ երկնչիք ասէ եղբա՛րք իմ, զի մարդասէր է տ̃րն մեր և ողորմած, և կամի զտանել զամենեսեան՝ որք կորուսեալ են 'ի մեղս, ա՛յլ և զուարդ էիք. արդ սիրեաց զձեզ վասն բազում ողորմութեան, և ազդեաց զլոյս ա̃ծութեան իւրոյ 'ի սիրտս ձեր. համպա պինդ կացէք և զօրացարո՛ւք 'ի հաւատսն քո̃ի տ̃յ, 'ի մոռացօնս արկեալ զձեր սնոտի և զդիւական մոլորութիւնդ.

Ապա ասէ ցն̃ս. արի՛ք աղօթեցէք. և ինքն հայեցեալ յերկինս՝ հառաչելով ասէր. Տէ՛ր ա̃ծն մերոյ յս̃ք քս̃ի, որով կամեցար և ծանուցար սոցա, և կոչեցեր առ քեզ. արդ պահեա՛ զսոսա սբ̃ անջով̃դ, և մի՛ տար խոտորել յաջ կամ յահեակ, և բնեռեա՛ զսոսա 'ի ջերմեռանդն գութ ա̃ծութեան քո. սրբեա՛ զսոսա երկնայինն ազատութեամբ̃դ. զի միաւորեալ բնեռեսցին 'ի սէր միածնի որդւոյ քո սիրելւոյ ։ Եւ կատարեալ զաղօթսն, առեալ 'ի նմին գիշերի մկրտեաց զն̃ս. որք էին թուով ոգիք երեսուն և երեք Ի̃ այր և Ի̃ կին՝ 'ի տանէ բանտապանացն ։

Իսկ սատանայ եղեալ 'ի կերպարանս առն սևոյ, և եկեալ 'ի բանտն՝ կայր 'ի հեռաստանէ,

նէ, և ձայն բարձեալ ասէր ցպահապանսն.
զի՞նչ պակաս էր ձեզ, զի թողէք զմեծ Ա̃ծն
արարողդ և զպահողդ, և զմայր Ա̃ծոյն
անահիտ զբարերարն հայոց ազգիս, և մոլորե-
ցայք զհետ առն միոյ հրէի՝ որ ուսոյց ձեզ
նոր ուսումն, և խաբէր զմիտս ձեր՝ կորոյս.
եկայք դարձարուք և պագէք երկիր անահ-
տայ, և ես աղաչեցից զա̃ծն ա̃մ՝ որ առնեն
ձեզ թողութի՛: Յայնժամ տեսեալ թադէոսի
զխորամանկութի՛ չարին՝ ասէ. ով բանսար-
կու չարեաց, լե՛ր յետս դարձեալ թշուառա-
կան: Եւ լռեալ սատանայի 'ի ներքուստ
զձայն սբ առաքելոյն՝ ասէր. զձայնդ քո
լսեմ, այլ գիտեմ ոչ, ո՞ւր ես: Ասէ սբ առա-
քեալն. և այլ մի՛ տեսցես զծառայս քի ա̃յ
ով աղտեղի և պիղծ՝ չար և անամօթ. մինչև
յե՞րբ ոչ ամաչես դու յա̃յ. երկի՛ր 'ի զօրու-
թե̃ ա̃ն, և երթ յետս չարագլուխ վիշապ:
Եւ ը̃ սաստել առաքելոյն՝ գտաւ դեւն զխո-
վին խաւարեալ՝ ո՛չ խանձող դժոխական, և
տանջիւր չարաչար 'ի հրեշտակաց սբց ակնե-
րև ամենեցուն. և տեսեալ նորահաւատիցն
զաններևլի տանջանս չարին՝ հաստատէին 'ի
հաւատոն քի: Իսկ սատանայ լայր դառնա-
գին, և ասէր. եղո՜ւկ եղէ ես, որ յաղթե-
ցայ 'ի խաչելոյն, և կորեայ. բայց գիտեմ՝
զի՛նչ արարից. մտից 'ի սիրտ իշխանացն, և
գրգռեցից զնո հանդերձ թագաւորաւն, զի
մահուամբ սրոյ կոտորեսցեն զձեզ առ հա-
սարակ: Ասէ անդրէն սբ առաքեալն. երթ
յետս սատանայ, սաստեսցէ 'ի քեզ տր: Եւ

նայն

նոյնժամայն անհետ լինէր չարն . և երթեալ դրդուէր զթագաւորն և զիշխանսն նորա ընդդէմ

սրբոյն :

Իբրև առաւօտ եղև, խորհուրդ արար թագաւորն վասն դստերն իւրոյ սանդխտոյ, թէ զի՞նչ պարտ իցէ առնել . վասն ապականման նորա ոչ կարէր տալ հրաման առ աղէտից գթոյ հայրութեան, զի յոյժ սիրէր . և 'ի յիշելն զնա լայր դառնապէս : Ապա յղեաց զոմն 'ի նախարարաց՝ երթալ հանել զսանդուխտ 'ի բանտէն, և ածել առաջի իւր . յղեաց և զայլս ընդ նմա վասն թադէոսի՝ յուզել այսր և անդր, և ձերբակալ առնել զնա իբրև մոլորեցուցիչ դստերն իւրոյ . զի ոչ գիտէր զինքնակամ երթ նորա 'ի բանտն :

Յորժամ եհաս իշխանն 'ի բանտն բազում ամբոխիւ, տեսեալ զդուռն բանտին 'ի բաց զարմացաւ . հայեցեալ տեսանէր 'ի ներքս բազմութիւն աւելի քան զոր կարծէրն, և լոյս սաստիկ շուրջ զնոքօք . և սուրբ առաքեալն յոտն կալով ուսուցանէր զբանն կենաց : Յայնժամ պակուցեալ իշխանին և որոց ընդ նմա յերեսաց ահաւոր լուսոյն՝ յերկիր կործանեցան առ դուրս արտաքոյ, և տագնապէին աներևոյթ տանջանօք, և լսէին ձայնս ահեղս : Իմացեալ սրբոյն թադէի զվտանգ նոցա՝ ել 'ի դուրս, և եգիտ զնոսա՝ զի անկեալ թաւալէին ընդ գետին . եդ ձեռն 'ի վերայ, և անուամբ քրիստոսի բժշկեաց զնոսա : Իսկ անդէն հաւատաց իշխանն, և յիսուն այր ընդ նմա . և էր այրն մեծ՝ հրամանատար ամենայն տանն արքունի, և երկրորդ

Մնայաբանութիւն սէրն
բորդ՝ տէրութեան հայոց :

Յայնժամ միւսանգամ երևեցաւ սատանայ իբրև վարանեալ ոք ի կորուստ անհնարին. և նստեալ արտաքոյ դրաց բանտին՝ խիղճս զծնկով արկեալ լայր դառնութ̃բ, և ասէր. զմեծ զէն զլխոյս իմոյ կորուսի : Եւ զի ոչ կարէր մտանել 'ի բանտն յահէ երկնաւոր զօրութե̃ն, փութով հասանէր յարքունիս՝ շարժել զթգ̃րն ը̃դէմ հաւատացելոցն : Ա̃յ և 'ի լսել արքայի զկիրսն՝ որ եղեն, զշարեցաւ յոյժ, և հրաման ետ սրով սպանանել զայնոսիկ՝ որք աշակերտեցան բանիցն Թադէոսի : Եւ կատարեցան յաւուր յայնմիկ ոգիք երկերիւր՝ արք և կանայք . և եղև 'ի տեղւոջն ձայն ահեղ և Թնդիւն երկնաւոր զօրացն, որք իջեալ ողջունէին զսր̃բ նահատակսն. յորոց երկիւղէ բազումք յանօրինացն կորեան :

Իբրև եղև գիշեր, կայր լոյսն երկնաւոր համատարած 'ի վ̃ր ն̃ց վկայիցն : Յայնժամ յղեաց ս̃ն սանդուխտ զոմանս 'ի հաւատարիմ պաշտօնէից իւրոց 'ի տուն իւր գաղտ 'ի հօրէն իւրմէ, և ետ բերել բարակ կտաւս. և առեալ ինքնին զմարմինս սր̃բ ընկերաց իւրոց՝ ամփոփէր զնոսա համբուրելով արտասուօք, և ասելով. երանի՛ է ձեզ եղբա՛րք իմ և քորք, որք արժանի եղէք երկնաւոր ուրախութե̃ցն . յիշեցէ՛ք և զիս զաղախինս ձեր : Եւ տարեալ Թաղէր զն̃ս 'ի ձեռն սպասաւորաց իւրոց մօտ յապարանս իւր . և տայր ըզգուշութի̃ զի մի՛ ոք գիտասցէ յարքունի տանէն . և ինքն փութով հասանէր 'ի բանտն :

Եւ

Այս գտեալ զնա առաքեալն յաղօթս՝ շուրջ պատեալ սքանչելի լուսով, դիմեաց ս՟ն սանդուխտ յոտս նորա, և համբուրէր զգարշապարս առնն ա՟յ . հեղոյր արտասուս բազում, և ասէր հառաչմամբ . տէր իմ և հայր, որ գտեր զիս զմոլորեալս, և ծանուցեր ինձ զերկնաւոր տ՟րն իմ զք՟ս զմիածին որդին ա՟յ, այժմ աղօթեա՛ վ՟ս իմ, և օրհնեա՛ զիս . զի և ես փութացեալ հասից ընկերացն իմոց՝ որք կատարեցան ՚ի ք՟ս, և եղէց արժանի տեսանել զտ՟րն ք՟ս՝ քև հանդերձ : Այլ տեսեալ նա առաքելոյն զարտասուս ս՟բյ կուսին սանդխտոյ, և զջերմեռանդն փափաք սիրոյ ն՟ր առ ք՟ս, ասէ . երանի՛ է քեզ դուստր երկնաւոր Թագաւորին . համբերեա՛ սակաւ ժամանակ, և առ ժամայն տեսանես զլոյսն ա՟մ արարածոց :

Այնպէս քաջալերէր և զմնացեալսն ՚ի հաւատացելոց՝ ասելով . պնդ կացէք, զի այժմ առնուք զլուսեղէն պսակն : Այլ ՚ի կատարել ն՟ր զբանսն՝ մատուցին առաջի հաց . և նա առեալ զհացն՝ օրհնեաց և ետ ս՟բյն սանդխտոյ և ընկերացն . Ճաշակեաց սակաւիկ մի և ինքն . և իբրև յարեան, օրհնեցին և գոհացան զս՟բ երրորդութենէն . և կնքեալ զանձինս նշանաւ ս՟բյ խաչին՝ ննջեցին : Իսկ առաքեալն Թադէոս կայր յաղօթս, և ասէր . տ՟ր ա՟ծ իմ՝ հայր տ՟ն մերոյ յ՟սի ք՟սի, չեմ բաւական գոհանալ զառատ ողորմութէ քումմէ, որ կոչեցեր զիս զանարժանս ՚ի կոչումն առաքելութե՟ն, և սրբեալ մաքրեցեր

և

Եւ տարաբերէր զիս տաժանք ոչ հոգւոյս . եւ ե-
տուր ինձ վիճակ զԾս զայս՝ քարոզել զանուն
մի աւետարանի քո . զի որ հաւատասցեն 'ի
ոչ աւհեղ անուանդ քո , կատարեսցին ընկալցիս
զնա 'ի հաս անուշից 'ի լոյս ածութեան քո ,
եւ խառնեսցես զնա 'ի հրեշտակերամ զդասս
վերին բանականացն : Ընկա՛լ եւ զմեզ . պատուա-
րաց 'ի հոտ անուշից տրութեանդ քո . պահեա՛
եւ զողջոյս զայս սանդուխտ , զի է ոչ կուսու-
թբ . եւ տուր համբերութիւն սմա՝ կատարել
քաջութբ զհանդէս մարտիրոսական ընթաց-
ցիցն , եւ առնուլ զանթառամ պսակն լուսոյ
'ի գլուխ իւր՝ փոխանակ անցաւոր եւ եղծա-
նելի պսակի 'ի տան հօր իւրոյ :

Եւ յաղօթել անդ սրբյն Թադէոսի՝ երեւեալ
անդրէն փրկիչն ասէ . խաղաղութի ը. ձեզ
սիրելիք իմ : Եւ տեսեալ առաքելոյն զՏր՝
անկաւ 'ի վր երեսաց իւրոց , եւ երկիրպագա-
նէր . եւ ասէ փրկիչն . Լուայ աղօթից քոց , եւ
զոր ինչ խնդրեցեր յինէն՝ ետու քեզ . եւ կա-
տարեսցիս մարտիրոսական հանդիսիւ՛ հան-
դերձ սանդխտով եւ այլ աշակերտելովքդ .
եւ ծագեցից զլոյս ածութե իմոյ 'ի վր ոսկե-
րաց ձերոց . եւ որք կատարեսցեն զյիշատակս
ձեր , եւ նուէրս նուիրեսցեն ուխտից վն անու-
ուան իմոյ , լուայց խնդրուածաց նց , եւ ա-
ռարից զնմ՝ առաւել վն քո :

Յայնժամ ասէ Թադէոս փրկիչն . Տր իմ եւ
Ած իմ՝ գիտեմ , զի սիրեցեր զիս , եւ ոչ թո-
ղեր զիս . մի թողուր աղաչեմ եւ զայնոսիկ՝
որ ինեւ հաւատացին 'ի յոր անուանդ քո . եւ պա-

հեա՛

հեալ զնա աղօթիւ քո յետ մահուան իւրոյ . և մեզ
անարժանս առնելով զմխիթարութ. քո զօրս , զոր չհաւա-
հեցեր ինձ մեր իմ . փարատեալ զխաւար կռա-
պաշտութեն ՚ի բարբարոս աշխարհս ահեղ լու-
սով մեծութեն. քո , և մեզ առնելով զօրացուց ա-
նօրէն գործոց իւրեանց . զի մոլորեցոյց զզօ-
րս բանսարկուն չար . որում զնա յաղթ. և
հալածական . և վրիժակեալ զբնակիչս Տիե-
զեզ ՚ի ժողովուրդ յաւիտենական՝ լինել ՚ի
հօտս երկնաւոր գաւթիդ . զի միաբան փա-
ռաւորեսցեն զքո մեծութին քո անուշահոտ
վարուք իւրեանց :

Այլ աւաղ մեր . լո՛ւայ և այժմ աղաչանաց քոց.
ոչ թողեր զհաւատացեալս ՚ի ձեռաց իմոց
մինչև ՚ի վախճանն տի , և ոչ զմխիթարկ բաժնի
քո . այլ փութով կատարեցեր զկամս քո , և
այց արարեր դոցա՝ ընտրել ինձ ժողովուրդ
սեպհական , և տաց զաւետիս իմ ՚ի միտս նց .
Հայեցայց ՚ի դոսա , և ողորմեցայց դոցա . և
դու խնդամ և ուրախ լեր : Այս զայս ասացեալ
օրհնեաց և վերացաւ :

Ապա մատուցեալ սբ առաքեալն՝ զարթոյց
զհաւատացեալսն և զաշակերտսն իւր և զա-
ղախինն քնի զանդուխտ , և պատմեալ նց
զտեսիլն և զխոստումն տն՝ զուա՛րթացոյց
զսիրտս նց . և ասէ , աղօթեցէք : Այս սկսա-
նեքն սաղմոսել . օրհնեցից զտր յամ ժամ .
որում ձայնակից լինէին առհասարակ . և
կատարեալ և այլ սաղմոսս բազում , փառա-
ւորեցին զտն ուրախութբ մեծաւ և քաղցր ար-
տասուօք : Այս երբև դադարեցին յաղօթից ,
դար-

դարձեալ ասէր՝ ցնոյն առաքեալսն . զինչ կա-
ցէք և համբերեցէք , զի այժմ առնուք ըզ-
պսակն լուսոյ 'ի գլուխս ձեր ։ Եւ հայեցեալ
'ի ս՟րբն սանդուխտն՝ ետես զերեսս ն՟ր առաքեա-
ռօք լի . և ասէ . մի՛ վհատասրտիր դուստր ,
և մի՛ երկնչիր . զի 'ի կարծիս եղև՝ թէ գու-
ցէ յերկիւղէն լայ։ Իսկ երանելին սանդուխտ
լի հոգւով և վառեալ սիրով փրկչին ետ պա-
տասխանի , և ասէ . տէ՛ր իմ և հայր հոգւոյ
իմոյ՝ ոչ եմ վհատասրտեալ , այլ՝ ցնծամ և ու-
րախ եմ . և փութամ ժամ 'ի ժամէ տեսա-
նել զք՟ն իմ . և երբ իցէ՝ զի գնամ առ նա ,
և լինիմ առաջի ն՟ր յամ ժամ . զի կարի անձ-
կացեալ եմ տեսանել զլոյսն երկնայինն ։ Յայն
ժամ ուրախ եղև յոյժ ս՟ր առաքեալն , և ա-
սէ ցնա . երանի քեզ քոյր իմ և դուստր , զի
այժմ հասանես՝ առ որ անձկացեալն ես . և
առնուս զպսակն լուսեղէն 'ի գլուխ քո , և
լինիս յանդիման առաջի ա՟յ երկնաւոր թա-
գաւորին . զի պարզերես և պանծալի լինիս ,
և դեր 'ի վերոյ գտանիս քան զբազումս վ՟ն
ջերմեռանդն գնացից քոց ։
Յետ այսորիկ իբրև առաւօտ եղև , եկին
հասին իշխանք և սպասաւորք թագաւորին
'ի դուռն բանտին . և հանեն արտաքս զս՟րբն
թադէոս և զայլ քրիստոնեայսն՝ որ 'ի բան-
տին , ածին կապանօք յապարանս թագաւո-
րին . ընդ որս և զկոյսն սանդուխտ արձակ ։
Եւ 'ի մտանել նոցա 'ի գաւիթն արքունի ,
ձայն եբարձ սրբուհին սանդուխտ , և աղա-
չէր լի համարձակութե՟ն իբրև յատենի արքայ-
Բ. ական

տեսան տանն իւրոյ խօսել . սկսաւ առ երանե-
լի նահատակակիցս իւր , և ասէ . եղբարք
իմ , այժմ կացէք և զօրացարուք 'ի քս . զի
ոչինչ են սպառնալիք երկրաւոր Թագաւո-
րացս . յայն միայն հայեցարուք , յոր հաւա-
տացիքն՝ յերկնաւորն . նմա տուք զմիտս և
զխորհուրդս ձեր , և նա տայ ձեզ զօրութիւն .
զի նա միայն է ած , և չիք այլ ոք . նա պա-
հեսցէ զձեզ 'ի սնոտի և 'ի խաբէական պատ-
րանացս ։

Նոյն մինչդեռ խօսէր ընդ նոսա , խնդրեաց 'ի ներքս
Թագաւորն զսուրբն սանդուխտ . և իբրև ե-
մուտ կոյսն , ասէ ցնա արքայ սանատրուկ .
մօտ եկ առ իս դստր իմ , և հօրս որդի
սանդուխտ , և համբուրեցից զքեզ . իսկ սբ
կոյսն ոչ հայեցաւ 'ի նա , և ոչ գնաց մօտ .
այլ կայր իբրև հեզիկ գառն առ 'ի դատիլ ։
Ասէ Թագաւորն . ուրացի՞ր զիս որդեակ , և
զմոլորեցուցիչն զայն սիրեցեր . ասեմ քեզ .
եթէ ոչ դառնաս 'ի յամառ մտաց քոց , երդ-
ուեալ յանձն իմ , չար մահուամբ կորուսից
զքեզ և զնա ։

Պատասխանի ետ սանդուխտ հոգելից բարբառով ,
և ասէ . զոր դու մոլորեցուցիչ կոչես , նա
եղև ինձ անմոլար առաջնորդ 'ի ճանապարհս
ճշմարտութե , և փոխեաց զիս 'ի խաւարէ 'ի
լոյս . և ծանոյց ինձ զտէրն իմ և զհայր՝ զա-
րարիչն երկնի և երկրի , և զորդին միածին ,
և զսբ հոգին՝ որ 'ի նոցունց . և արդ ես փու-
թամ առ տէրն իմ քս , որ տէրն է տերանց , և
Թգր Թգրաց , լոյս և կեանք ամ արարածոց ։

Թագաւորն ասէ . ո՞վ է նա՝ զոր կոչես ա՟ծ և Հայր ։ Սանդուխտ ասէ . Ա՟ծ նա է ա՟ծ , որ արար զա՟մ յոչնչէ , և հաստատեաց զա՟մ արարածս բանիւ՛ բերանոյ իւրոյ . այլ ձեր մոլորեալ են միտք , և խաւարեալ խորհուրդք , զի թողեալ զա՟ծ զհաստիչն ձեր՝ որ զձեզ յոչնչէ արար , պագանէք երկիր ուրուանկա-նաց կռոց մեռելոտեաց , որ ոչ տեսանեն և ոչ լսեն , յորս բնակեալ են նոքին իսկ դևք՝ որք խաւարեալ կուրացուցին զմիտս ձեր , և կորուսին զոգիս ձեր՝ առնելով զձեզ որդիս գեհեննին . ուր և ունիք երթալ 'ի խաւարին արտաքին գործակցաւն ձերով սատանայիւ , ուր լալ աչաց է և կրճել ատամանց ։

Յայնժամ սրտմտեալ թագաւորին՝ ետ առա-տակել զնա և գանել . և մոռացեալ զգութ հայրութեան՝ ասէ . կապեցէք զդա և քերե-ցէք երկաթով , և հրով այրեցէք զբերանս մարմնոյն ։ Իսկ մատուցեալ դահճապետն կապեաց զսուրբն սանդուխտ . և սկսան դա-հիճքն պատրաստել զգործիս տանջանաց ։

Յայնմ վայրի ընթացեալ ոմն 'ի հաւատացե-լոցն՝ պատմեաց սրբոյ առաքելոյն , զոր պահե-ին 'ի փոքր ձորակի՝ ոչինչ հեռի 'ի տեղւո-ջէն , եթէ զսանդուխտ կապեցին և կամին չարչարել ։ Իսկ ս՟ր առաքեալն յարտասուս եղեալ ասէր . տ՟ր իմ յ՟ս ք՟ս հայեաց յաղա-խին քո , և զօրացո զնա . և արա յամօթ զդ-չար թշնամին ճշմարտութե ։

Իսկ ս՟րբն սանդուխտ մինչդեռ կայր կապեալ , և ձեռն արկեալ կամէին քերել , գոչեաց

յեր

յերկինս արքայութ, և ասէ․ Տէր իմ յս քս փութա՛ հաս ինձ յօգնականութի, և ծանիր ցնս ամենեքին զամենազօր տրութիդ քո․ զի դու ես իմ հայր և արարիչ, ապաւէն և կեանք․ մի՛ թողուր զոկար ոչխարս հօտի քո ։ Եւ յաղաղակել անդ սբյ աղջկանն մե-ծաբարբառ, եղև յանկարծակի շարժումն, և ծագեաց լոյս յերկնից․ և եղև ձայն 'ի վերուստ՝ որ ասէր․ քաջալերեա՛ դուստր իմ, զի Է ընդ քեզ եմ 'ի փրկել զքեզ ։ Եւ նոյնժա-մայն լուծան խնքնին կապանքն նր, և 'ի լու-սոյ փայլատականցն շանթահարել կորեաւ զդահճապետն, և բազումք Ը նմա․ և պա-տեաց ահ զամենեսեան թագաւորան հան-դերձ, զի կարծէին առհասարակ 'ի կորուստ մատնիլ ։

Նոյնժամ արձակ գտեալ սբյն սանդխտոյ՝ եւ ազատութեն յասեանն անտի, և փութացեալ եհաս 'ի տեղին՝ ուր պահէին զտր առաքեալն․ և եկեալ փարէր զոտիւք նր, և ասէր․ տէր իմ և հայր հոգւոյ իմոյ՝ ահա զիս քո փութով արձակեաց 'ի կապանաց․ և յամօթ արար զսատանայ և զարբանեակս նր․ և յաղթու-ցեալ գոհացան միաբան զայ ։

Նոյնժամ վայրի գայր իշխանն այն հրամանաւ սանատրկոյ, և անկանէր առաջի նր առաքե-լոյն՝ ասելով․ Թագաւորն խնքնին յղեաց զիս առ քեզ, և ասէ․ մեղայ քեզ և այն քում․ թող մեզ, և աղօթեա՛, զի անցցէ բարկութի ահեղ սաստկութեա, զի կործանիմք իսպառ․ և զոր ինչ կամիս դու՝ առնեմք․ հրամայ-

եաց արքայ և զձեռն արձակել 'ի կապանաց : Յայնժամ յաղօթս եկաց արտասուօք Թադէոս , և ասէ . Հայր տն̃ մերոյ յն̃ի քն̃ի Հայեաց 'ի ժողովուրդս քո , և մի՛ առներ ա̃ծ դացա մեղանաց . Թո՛ղ դոցա տր̃ , զի ոչ գիտեն զի՛նչ գործեն : Եւ 'ի կատարել սոյն զաղօթս՝ լուծան սքանչելեօք կապանքն ամ̃ Հաւատացելոցն . և դադարեաց ձայն աՀեղ

շարժմանն :

Եւ իբրև զահի Հարաւ իշխանին է̃ իրան՝ որ եղեն , ասէ ցնա առաքեալն . մի՛ երկնչիր , երթ պատմեա՛ թագաւորին քում , զոր ինչ տեսերդ : Եւ նա երթեալ ասէ ցթագաւորն . տեսի զառաքեալն սրբայ՝ ոչ որպէս մարդ , այլ առաւել քան զմարդ . և լոյս շուրջ զնովաւ . և որպէս աղօթեաց՝ եանց ամ̃ ցասուցին յերկրէս : Իսկ թագաւորն գրգռեալ 'ի չարէն՝ ասէ . միթէ նա՞ անցոյց զբարկութիւնս . այլ արամագդ և անահիտ մեծ ա̃ծքն , որ են շինութի̃ աշխ̃ս և փառք թագաւորացս : Յայնժամ ելեալ իշխանին յերեսաց արքային իբրև զայրացեալ գնաց ինքն անդրէն առ սր̃ն Թադէոս , և Հաւատաց 'ի քն̃ , և մկրտեցաւ ամ̃ տամբ իւրով . և կոչեցաւ անուն նր̃ սամուէլ . փոքրեաց զՀերս իւր , և եղև աշակերտ նր̃

առաքելոյն :

Իբրև զայն լուաւ թագաւորն , ընկղմեցաւ 'ի խոր տրտմութի և 'ի դառնութի մաղձի . զի էր այրն երևելի , և մտօք խորՀրդական . և ոչ գտանէր նման նր̃ 'ի մէջ աշխ̃ս Հայոց : Ապա առ չժուժել տրտմութե̃ն՝ Հրաման

եա

եւ սանտարուկ վարել բեւեռս հրացեալս է
ուս նորա, (կմ է սուս, քն 'ի ներքանս ոտից
նր.) եւ այնպէս կատարեցաւ երանելին սա-
մուէլ 'ի քս : Նոյն նմին նահատակեցան եւ
քանի մի աշակերտք առաքելոյն՝ որք էին նմա
իսկ եկեղեցին, եւ որք յետն հայոց ընտրեալք
յաշակերտութի նր, յորոց միոյն անուննն էր
խորայէլ. քանզի եւ զսոսա չարչարեալ՝ զո-
մանց գլխաուսն ծնգաց հրացեալ երկաթով
ծակեցին, եւ զոմանս սրով սպանին. եւ կա-
տարեցան յաւուր յայնմիկ է ամ ութ նահա-
տակք. եւ եդեւ նշան լուսոյ 'ի վր նց, եւ ահ
սաստկութե 'ի վր անօրինացն :

Իսկ 'ի հասանել գիշերոյ՝ եկեալ ոմն առա-
քելոյն հանդերձ կուսիւն սանդխտով եւ այ-
լովք եւս ուխտընկալ հաւատացելովք, եառ
զմարմինս նահատակացն, եւ պատեաց պատ-
ուական հանդերձիւք՝ խնկովք եւ խնկօք,
զորս պատրաստեալ էին հաւատացեալ կա-
նայք եւ նաժիշտք սանդխտոյ. եւ եդ 'ի փոքր
ձորակին՝ ուր էին օթեվանք նց. եւ ետ զգու-
շութի, զի մի ոք յանհաւատից գիտասցէ :
Յայնժամ խնդակից եղեալ սանդխտոյ կու-
սին առէր ցառաքեալն քի. երանի է քեզ
Տէր իմ եւ հայր, զի զբազում արարեր ար-
ժանի քնական պսակին : Ասէ ցնա առա-
քեալ. երանի եւս քեզ է, որ արժանի եղեր
յղարկել զնն. խնդա եւ ուրախ լեր, զի եւ
դու փութով հասանես առ քս :

Իսկ որբուհին սանդղուխտ եւս քան զեւս բոր-
բոքեալ սիրով փրկչին՝ 'ի նոյն սէր վառէր եւ

զնմ̄ հաւատացեալսն զարս և զկանայս. քա-
ջալերէր և մխիթարէր զնս̄, յանձանձէր և
սփոփէր. կերակրէր զնս̄ հացիւ, և զգեստու-
ցանէր հանդերձիւ, և ոչինչ առնէր նմ̄ պա-
կաս. և առաքելաբար քարոզէր զբանն կե-
նաց. և դարձուցանէր զբազումս յանհաւա-
տից 'ի սբ̄ հաւատս՝ առնելով նշանս և ս-
քանչելիս անճառամբքն քի̄ ։

Յայնժամ հաւատաց և կին ումն ազնուա-
տոհմ և մեծատուն 'ի մերձաւորաց Թագա-
ւորին՝ զարմանդուխտ անուն, ամ̄ տամբք իւ-
րով. և առեալ սբ̄յ առաքելոյն մկրտեաց
զնս̄՝ ոգիս երկերիւր ։ Իսկ լուեալ Թագաւո-
րին՝ տայր հրաման զզարմանդուխտ միայն
սպանանել սրով. և իբրև կատարեցաւ երա-
նելի կինն, եղև 'ի վր̄ նր̄ նշանս. և բազումք
'ի տեսողացն հաւատացին ։

Իսկ սանատրուկ արքայ իբրև իմացաւ զայն
ամ̄, ոչ գիտէր՝ թէ զի՞նչ արասցէ. մինչև այր
իբրև զառիւծ 'ի վր̄ սբ̄յն սանդխտոյ, և ա-
սէր. Նա զամենեսեան առաւել մոլորեցու-
ցանէ. վա̄յ և ոչ ես խնայեալ 'ի դուստր իւր՝
հրաման տայր, զի 'ի վաղիւ անդր սրով սպանե-
ցի ։ Իսկ լուեալ սբ̄յն Թադէի զհրամանն անօ-
րէն Թագաւորին՝ աղօթէր առ քս̄ զամ̄ գիշե-
րերն վս̄ սբ̄յն սանդխտոյ ։ Իբրև եղև առա-
ւօտ, եկն անկաւ սանդուխտ առ ոտս առա-
քելոյն, համբուրէր և ասէր. Տէ՛ր իմ, խոր-
հէի 'ի սրտի իմում ընդ երեկս աւուրն, թէ
զի՞նչ արասցէ ինձ քո լոյսն իմ. և այժմ ինչ
եղէ 'ի քուն յայսմ գիշերի, լոյս սաստիկ ծա-
գեաց

դեաց 'ի վշտ իմ. և 'ի մէջ լուսոյն այր մի լու-
սազգեստ, զորոյ ոչ կարէի առնուլ զկատա-
րեալ նմանութիւն յառաւել լուսոյ ճառագայ-
թիցն. ձայնեաց զիս, և ասէ. սա՛նդուխտ
արի՛ փութա՛, և զգեցի՛ր զլոյս իմ: Իսկ ես
յարտասուս եղեալ ահիւ և խնդութեամբ՝
ասեմ. Տէր իմ չեմ արժանի. և սաստելով
զգեցոյց ինձ զլոյսն ոսկ̃ զվերարկու. եդ և
պսակ լուսեղէն 'ի գլուխ իմ, և զարդարեաց
զիս լուսեղէն զարդուք. և ես հիացեալ կայի:
Իսկ ասէ ցիս. ուրախ լեր սա՛նդուխտ, ո՛չ
թողից զքեզ. և յանկարծակի եղև թնդիւն
ահեղ, և զարթոյց զիս. և ես յարուցեալ փա-
ռաւորեցի զքն̃ ած̃, որ արժանի արար զիս
այսպիսի սքանչելի տեսլեան:

Զայս ա̃մ լուեալ՝ իմացաւ սրբն̃ Թադէոս,
թէ այսօր փոխի կոյսն յն̃է, և զգենու զփառս
լուսեղէն դասուց հրեշտակաց, և առնու
զպսակն նահատակութե̃ 'ի գլուխ իւր: Իսկ
յարտասուս եղեալ սր̃ առաքեալն՝ ասէ. երա-
նի՛ է քեզ սա՛նդուխտ, զի այն՝ որ երևեցաւ
քեզ, ինքն քն̃ է. մ̃զի ետես զջերմեռանդն
գութ սիրոյ քո առ ինքն, մ̃զի այնպիսի երևե-
ցաւ քեզ, զի առաւել հաստատեսցէ զքեզ
'ի լոյս ած̃ութե̃ իւրոյ. և լոյսն՝ զոր զգեցոյց
քեզ ոսկ̃ վերարկու, և պսակն լուսեղէն՝ զոր
եդ 'ի գլուխ քո, զայն յայտ առնէ, զի թող-
ցես զթանձրամած մարմին քո, և զգենուս
զլոյսն երկնաւոր, և արժանի լինիս առնուլ
'ի գլուխ քո զպսակն լուսոյ մարտիրոսական
յաղթութե̃. և զարդարեալ վերագոյն լու-

սով, և բնակեալ 'ի լոյս ա̃ծութեան՝ յա̃մ ժամ կաս յուրախութեան վերին լուսոյն ։ Եւ որ ա-ռացն քեզ, թէ խնդամ և ուրախ լեր՝ զի ոչ թո-ղից զքեզ ․ զի անմեկնելի է քս̃ 'ի սիրելեաց իւրոց, և ուրախ առնէ զամենեսեան՝ որ կան 'ի սէր ա̃ծութեան նորա ։

Եւ յորժամ լուաւ ս̃րն սանդուխտ զպատ-մութիւն սքանչելի տեսլեանն, զեղոյր սիրտ նորա 'ի խնդութենէն ․ և լցեալ քաղցր արտասուօք՝ անկանէր առաջի ոտից առաքե-լոյն ; և ասէր ․ Երանի է քեզ հայր իմ, որ ծնար զիս վերստին, և ուսուցեր ինձ զլոյսն կենդանի զքս̃ ․ զի դու եղեր ինձ Ճանապարհ կենդանի, և դեղ անմահութեան ․ արդ խնդ-րեմ 'ի քէն ․ զի փութով ժողովեսցէ զիս առ ինքն ։ Եւ ասէ ս̃րն առաքեալն ․ ահա փու-թով հասանես 'ի լոյսն կենդանի, առ որ անձկացեալն ես ։ Ասէ ս̃րն սանդուխտ ․ տէր իմ աղաչեմ զքեզ, մինչ փոխիմն՝ մնա̃ կայցես առ իս ․ զի ոչ կարեմ ժուժալ 'ի հեռաւոր սի-րոյ քո ։

Յայնժամ յարուցեալ կացին յաղօթս ․ և համ-բարձեալ Թադէի զձեռս իւր՝ ասէր ․ Յիշեա̃ զաղախնին քո տ̃ր, և տուր սմա համբերութիւն 'ի պատերազմիս այսօր, և արա յամօթ զթշ-նամին ․ զի ծանիցեն ա̃մ հաւատացեալք, թէ դու միայն ես ա̃ծ յերկինս 'ի վեր, և յերկիր 'ի խոնարհ ։ Եւ դարձեալ 'ի ս̃րն սանդուխտ՝ օրհնեաց զնա և ասէ ․ պինդ կաց, և զօրա-ցուսցէ զքեզ քս̃ ։ Եւ ահա յանկարծակի հա-սին բարբարոս իշխանքն զօրականօքն համ-դերձ

և անդէն աւանդեաց զոգին 'ի ք(րիստո)ս քաջին խոստովանութեամբ պանծալի վկայուհին սանդուխտ, որ և առաքելուհի և կուսանացն հայաստանեայց. զոր և արժան է նախավկայ անուանել 'ի մէջ ամենայն դասուց կուսանաց վկայելոց, անկ կոչել հասարակ կարծեաց սրբուհին Թեկղի աշակերտ առաքելոյն պօղոսի. բայց հաստատութ(եամ)բ երևի մերս սանդուխտ յառաջ քան զնա պատահեալ վկայութ(եամ)բ, և այն 'ի ծաղկահասակ մանկութեան։

Արդ ընդ կատարիլ նորին սանդխտոյ՝ ծագեաց յերկնից իբրև սիւն լուսոյ. և եղև շարժումն, և ձայն ահեղ երկնաւոր զօրաց՝ որք օրհնէին զա(ստուա)ծ. և եկաց սիւն լուսոյն 'ի վ(երայ) նր(ա) մարմնոյն զերիս տիւ և զերիս գիշերս. և հաւատացին յաւուրսն յայնոսիկ ոգիք իբրև երկու հազար՝ ընդ այր և ընդ կին. և ոչ մեկնեցան 'ի տեղւոջէն՝ ուր անկեալ կայր սրբուհին սանդուխտ։ Մինչև եկեալ նորա առաքելոյն Թադէոսի 'ի գիշերի՝ մխիթարեաց զնո(սա). և առեալ զմարմին նորին սանդխտոյ՝ ամփոփեաց 'ի նմին տեղւոջ, և արար աներևոյթ զհանգստարանն երանելւոյ տիկնոջն. զի մի՛ անյայտ տիրէ՛ արասցեն զայն անօրէնք. այլ ընդ ժամանակին Տ(է)ր կնքելոցն յայտնի արասցէ զայն հաւատացելոց իւրոց։

Իսկ յետ երից աւուրց կատարմանն սանդխտոյ կուսին, յորժամ կայր յաղօթս նոյն առաքեալն մեծ յառաւօտուն, երևեալ նմա փրկիչն՝ ասէ. խաղաղութիւն ընդ քեզ սիրելի՛ իմ. արի՛ փութա՛, զի այսօր հասանես 'ի հանդէս

մար-

մարտի. և համբերեա՛, զի բազում չարչա-
րանս ածեն ՚ի վերայ քո. այլ ես ոչ թողից
զքեզ. և օրհնեալ զնա՝ եղև աներևոյթ.
Յայնժամ լի եղև թադէոս ուրախութ̃բ, և
աղօթելով ասէր. Գոհանամ զքէն հայր տ̃ն
մերոյ յի̃ քի̃, որ ոչ թողեր զիս ՚ի ձեռանէ ՚ի
բարբարոս երկրիս, այլ առաւել գթացար
յիս. արդ ընկա՛լ զիս ՚ի հօտ անուշից ա̃ծու-
թեդ քո, և զօրացո՛ զիս ՚ի պատերազմիս.
յիշեա՛ տ̃ր զաղախինդ քո սանդուխտ՝ որ փո-
խեցաւ առ քեզ, և ընկա՛լ և խառնեա՛ և
զիս ՚ի դունդս. ս̃բց քոց՝ որ վ̃ս անուա՜ն քո
պատարագեցան, ընծայելով ՚ի լոյս ա̃ծութեդ
քո: Պահեա՛ և զհաւատացեալս՝ որ ՚ի քեզ
ապաւինեցան. լո՛ւր պաղատանաց նոցա և
հայցուա՜ծոց մարդասէր. և հեռացո՛ զչար
բանսարկուն ՚ի նոցանէ, և արա՛ յամօթ, զի
մի՛ իշխեսցէ մերձենալ ՚ի դունդն հաւատացե-
լոց քոց. և զիս զծառայս քո զօրացո՛ ՚ի սէր
պատուիրանի քո համբերականն ընթացիւք
մինչև իսպառ:

Եւ իբրև կատարեաց զաղօթսն, օրհնեաց
զհաւատացեալսն և ասէ. որդեակք որով-
հետև ետուք զանձինս ձեր ա̃յ, և գրեցայք
՚ի դունդն ք̃սի, պի՛նդ կացէք ՚ի հաւատս,
և զօրացուսցէ զձեզ ք̃ս ա̃ծ, և բազմացուս-
ցէ զձեզ. և արասցէ յամօթ զբանսարկուն
չարեաց՝ զմոլորեցուցիչն հեթանոսաց, և
արկցէ զնա կոխան առաջի ոտից ձերոց մին-
չև յաւիտեան: Եւ ես ահա փոխիմ առ տ̃րն
իմ ք̃ս. և աղաչեցից զնա, զի առաքեսցէ
զհրեշ-

զհրեշտակ զօրութ̅ն, և պահեսցէ զձեզ 'ի
չար լծոյ ծառայութ̅ն հեթանոսականն մո_
լորութ̅ենն, ուստի եառ զձեզ, և պարգևաց
'ի բաշխ լուսոյ ա̅ծութ̅ն իւրոյ՝ ժողովուրդ
սեպհականն. արդ նա́ է ձեր հայր՝ ա̅ր և թա_
գաւոր. նա պահեսցէ զձեզ, և ոչ թողցէ:
Իբրև լու́ան հաւատացեալքն, եթէ փու_
թով փոխի առ ք̅ս, ամենեքեան հարան յար_
տասուս. և անկեալ առաջի ս̅բյն՝ համբու_
րէին զոտս նորա, և ասէին. տէ́ր և կեցու_
ցիչ հոգւոց մերոց՝ աղօթեա́ վ̅ս մեր, և խնդ_
րեա́ 'ի ք̅սէ, զի ոչ թողցէ զմեզ 'ի ձեռանէ:
Եւ ս̅բ առաքեալն կարեկից լինելով արտա_
սուաց նոցա՝ ասէ. տ̅ր յ̅ս ք̅ս մի́ թողուր 'ի ձե_
ռանէ զսակաւ ժողովուրդս քո՝ որ փարին զքեզ.
այլ պահեա́ զսոսա աջով քով ս̅բվ: Ապա
հրաժարեալ յամենեցունց՝ արձակեաց յիւ_
րաքանչիւր տեղիս երկնաւոր օրհնութ̅բ:
Եւ իբրև գնացին հաւատացեալքն, եկին
հասին երկու իշխանք հրամանաւ թագաւո_
րին, և ամբոխ բազմութ̅ն ը̅ն նոսա. յուզէին
զա̅մ տեղիս՝ կարծելով թէ չկարեն դիւրաւ
գտանել զնա և 'ի ձեռս բերել՝ ո̅չ յերէկն
և յեռանդն: Եւ իմացեալ ս̅բ առաքելոյն՝
ինքնին եկաց առաջի, և ասէ. ահա ես եմ,
զոր խնդրէք. և նք̅ կալեալ զնա՝ ածին կա_
ցուցին առաջի թագաւորին սանատրկոյ:
Տեսեալ զնա թագաւորն՝ ասէ. դո́ւ ես թա_
դէոս. և ասէ. ես եմ: Եւ հայեցեալ ար_
քայի 'ի նա՝ ետես զերեսս նորա լուսապայ_
ծառ և ահեղ. երկեաւ, և ո́չ կարէր խօս_
տու_

վասն զի մեղուցեալ զձեզ հայր սրբութ՝ անխ-
ծեալըն սատանայ , և եդարկ զձեզ 'ի կապանս
և յորոգայթ մահու՝ մտանել յանխափանելի
տանջանս ։

Յայնժամ աղաղակեալ Թագաւորն՝ ասէ . ոչ է պարտ առնել այսպիսի այլ և կեալ ։ Հրամայեմ եւս արդ , և առեալ սպարան կապանաց ընդ թագէս , և արգելին 'ի գլխովկ պարսպին՝ ուր էին մարդակեր գազանք . և 'ի հասանել արքային 'ի անտառն տապարականն՝ արձակեցին 'ի վ ԺԲ օրին անհունտ երկու . և եկեալ գազանքն անկանէին առ ոտս սաքերոյն , և լեզուին զհողաթափս ոտից նր , և ոտնաչին քծնելով . Իսկ 'ի կալ օրին յաղօթս՝ լուծան կապանք իւր . և յանհաւատկել նր յաղօթիւն՝ զնացին նոքա յիւրաքանչիւր տեղիս ։

Իսկ իբրև եսես անօրէն Թագաւորն զսքանչելիսն՝ որ եղեն , առաւել ևս զրգռեալ 'ի չարեն՝ հրամայեաց լուցանել հնոց հրոյ . և բորբոքեցին յոյժ . և արկին զնա առաքեալն կապանաւք 'ի ներքս . և նա աղօթէր և ասէր . Տր յս քս հաւ իմ յօգնական լեր ։ Իսկ եւ յանկարծակի հողմ ուժգին անձրևախառն . և առեալ զհրայն ողջոյն՝ եթարկ 'ի վ ԺԲ անօրինացն , և խանձողել ծախեաց զբազումս . և շատք ևս կորեան յահէ երկնաւոր ձայնին՝ որ որոտայր 'ի բարձանց ։ Իսկ Թագաւորն ամենաւորով փախստական անկաւ յապարանս իւր , և յերկիւղէն կայր 'ի տագնապ մահու . մտանէր և ոչ գտանէր ելս աւարակութ ։

Այլ

Այս որ առաքեալն էր եղեալ երկնաւոր ցօ-ղոյն՝ զուարթ և պայծառ երևէր որպէս զլոյս. և հաւատացելոյն յաւուր յայնմիկ ոգիք չորեք-հարիւր երեսուն և երեք (կմ քառասուն և երեք), որք աղաղակէին և ասէին. Մեծ է ածն քրիստոնէից, և անյաղթ՝ զօրութիւն նր. և առեալ մկրտեաց զնս Թադէոս 'ի նմին ժամու: Իբրև զայն լուաւ Թագաւորն, փու-թացաւ բառնալ զնա 'ի կենաց՝ հրամանս տու-եալ սպանանել զոսա: Նաև որ առաքեալն կանխեալ հաստատէր զհաւատացեալսն 'ի հաւատս կենսաբեր աւետարանին. և յարու-ցեալ աղօթէր այսպէս. Տէր յիս քն ած իմ, մի՛ թողուր զնոր ժողովուրդս քո. այլ զօրա-ցո՛ զսոսա 'ի սէր ածութեան քո. և զիս ընկալ Տէր 'ի հոտ անուշից:

Ապա օրհնեաց զհաւատացեալսն, և յանձն արար զնոսա քսի. և ասէ ցնս. արի՛ք ելէ՛ք 'ի բարձր տեղին՝ որ 'ի վերոյ քան զմեզ է, և հայեցեալ տեսէ՛ք զհանդէս մարտիրոսութեան իմոյ. և ես տուաւ ձեզ առաջնորդ զԶաքա-րիաս երիցուն քի, որ է իմ լծակից և պաշ-տօնեայ տն. Նա ուսուսցէ ձեզ զբանս որ աւետարանին, զոր ես 'ի բերան նր որ հո-գին. և հաստատեալ զձեզ 'ի հաւատս որ՝ փութով հասանէ առ իս մարտիրոսական հանդիսիւ. և զայս ասացեալ՝ արձակեաց զնս օրհնութեամբ յիւրմէ:

Եւ ահա եկեալ հասին բազում զօրականք իշխանօքն հանդերձ. և կալեալ զԹադէոս՝ հանին 'ի փոքր ձորակէն սակաւ մի 'ի բարձ-

 րա

բաւանդակ տեղի մի 'ի վիմամէջս ։ Իսկ տր առաքելոյն ստէպ աղօթէր և ասէր . տր ած հայր տն մերոյ յսի քսի՝ ընկալ զիս այժմ, և արա՛ զնշան ահեղ ածուեղ . զի գիտասցեն և ծանիցեն՝ թէ դու միայն ես ած ամ արարածոց . և արդ աղաչեմ զքեզ, մի՛ թողուր 'ի ձեռանէ զպիղծակս զայս . և մի՛ համբերեր սոցա զայս մեղս, զի ոչ գիտեն՝ զի՛նչ գործեն . փոխեա՛ զբարբարոս միտս սոցա, և արա՛ սոցա ճանաչել զքո ածութի՛դ՝ մարդասէր և քաղցր տր ։ Յետ այսորիկ տնագրեալ զինքն նշանաւ սբ խաչին՝ ասէ ցդահիճսն . զի՛նչ կամիք՝ արարէք ։ Եւ յարուցեալ դահիճն 'ի վր սբյն սրով եհար և սպան զգեմենասոս զեղբայր իւր, որ էր կարգեալ վերակացու 'ի վր ամ ճանապարհաց . և էր այր հաւատարիմ 'ի դրան արքունի, և մարդասէր բարուք ։ Այլ իբրև ետես առաքելոյն՝ եթէ մեռաւ այրն, տրտմեցաւ . զի էր դարմանիչ հաւատացելոց, և ամ օտարաց ընդունող ։ Յայնժամ եկեալ սբյն առ մեռեալն՝ հայեցաւ յերկինս, և ասէ . հա՛յր տն մերոյ յսի քսի հայեա՛ց յերկնից 'ի սբ աթոռոյ քումմէ, և կենդանացո՛ զմեռեալս զայս . զի գիտասցեն՝ եթէ դու միայն ես ած . և բուռն եհար զձեռանէ մեռելոյն, և ասէ . քե՛զ ասեմ, արի՛ կա՛ց յանուն յսի քսի որդւոյն այ ։ Եւ նոյնժամայն կանգնեցաւ, և յարեաւ զեմենոսս . և անկեալ առաջի ոտից սբյն՝ ասէ, հաւատամ յանուն քո, զի նա միայն է ած, և չի՛ք այլ ոք ։ Եւ զի թողաւ նշան վե-

նմանապէս զորս Թաղէոս 'ի մէջ լուսոյն արփիա-
փայլ պայծառացեալ . աղաղակեցին զհետ-
նոր միաբան , և ասեն . ով առաքեալդ ա̃յ` հայր
մեր , յիշեա զմեզ , և մի մոռանար . զի կար-
ծեցին` եթէ մարմնովն իսկ համբարձաւ :

Ապա յարուցեալ իջին 'ի տեղի ապանմանն ,
և իմացան` եթէ որպէս արդ կատարեցաւ .
և լուեալ 'ի տեսողաց` եթէ զխաչն վիմին պա-
տառեալ` ընկալաւ զսբ̃ մարմինն . և յարտա-
սուս հարեալ լային . այլ մխիթարէին 'ի վր̃
սքանչելեացն եղելոց : Նաև եղեն հաւատա-
ցեալքն Ռ̃մ յաւուրսն յայնոսիկ 'ի ձեռն սրբ̃յն
Թաղէի և սանդխտոյ կուսին որք էին իբր երեք
կմ̃ չորս հազար . կմ̃ է ասելոյ Խոսրովարաց`
երեք հազար և չորս հարիւր և երեսուն և
երեք . որ է յայսմաւուրաց` երեք հազար և
չորս հարիւր քառասուն , է այր և է կին .
փառաւորելով զսբ̃ երրորդութիւնն 'ի բար-
ձունս :

Կատարեցաւ սբ̃ առաքելոյն Թաղէոս` ըստ
նշանակելոյ հին մկայաբանութեան , 'ի քաղոց
ամսոյ ծդ̃` յիններորդ ժամու . և սբ̃ն սան-
դուխտ վեց աւուրբք յառաջ ք̃ զնա` յեօթն
նորին ամսոյ . յամի տն̃ իբր 48 , կմ̃ 50 . յա-
րուամ ժամանակի քաղոցն անկանէր 'ի մարա-
ախս հռովմայեցւոց . այլ է հաշուէի յայսմա-
ւուրաց` որ հայի յաւուրս սբ̃ց Թարգմանչաց , վկայածի 'ի դեկտեմբեր :

# ԳԻՒՏ ՆՇԽԱՐԱՑ

## Սրբոյն Թադէոսի առաքելոյն, և Սանդխտոյ կուսին:

Հ. Հոկտ. 30. որ և Մարերի. ԻԳ: Նոյեմբ. Է. 31:

Յետ կատարմանն որք առաքելոյն մերոյ Թադէի ընդ կուսին սանդխտոյ՝ մնացին մարմինք նոցա 'ի Թագաւորի զամս բազումս. որպէս և հաւատք քրիստոնէութեան ծածկեալ մնաց, և որ քան զոր նուաղեցաւ յերեսաց կռապաշտ թագաւորաց մերոց արշակունեաց. մինչև խաւարով հայրն տրդատայ հնարեցաւ ընտաջինջ առնել զքրիստոնէութիւն յերկրէն հայոց՝ նահատակելով զբազումս: Այլ յետ լուսաւորելոյ առ տրդատաւ համօրէն հայաստանեայց 'ի ձեռն սրբոյն գրիգորի առաքելանման նահատակին, յաւուրս որդւոց և թոռանց նորա 'ի չորրորդ դարու, և կամ յաւուրս սրբոց թարգմանչաց 'ի հինգերորդ դարու՝ յայտնեցան նշխարք սրբոյն թադէոսի և սանդխտոյ. ընդ որում յիշատակէ և քերթողահայրն մովսէս 'ի պատմութեան իւրում. այլ ժողովագրոյն գրեալ մի ամն 'ի վկայից ճառընտրին. յորում էանց և 'ի կարգ յայսմաւուրաց. և ունի բան պատմութեան այսպէս.

Միայնակեաց ոմն ոք՝ կիրակոս անուն, աշակերտ սրբոյն դաւթի կոճաւորի՝ վաղ ու-

րեմն

ընծն հրաժարեալ յերկրաւոր զբաղմանց , բնակէր 'ի լերինն միում սանատրուկ կոչեցեալ մօտ 'ի տեղի կատարման Թադէոսի և Սանդխտոյ , այն է մօտ 'ի շաւարշան յարտազ գաւառի , փայլեալ ա̃ծահաճոյ վարուք և մեծաւ ճգնութ̃բ : Արդ յաւուր միում իբրև 'ի քուն եմուտ յետ աղօթից երանելին կիրակոս , յայտնեցաւ նմա տեսիլ հրաշալի . զոր և յարուցեալ պատմեաց այլոց 'ի կրօնաւորաց բանիւքս այսոքիւք :

Տեսանէի ասէ 'ի մէջ սանատրուկ դաշտի 'ի վ̃ր փոքր բլրոյ միոյ ծագեալ լոյս սքանչելի . և 'ի մէջ լուսոյն նստեալ էր 'ի վ̃ր ոսկի աթոռոյ այր մի լուսաւոր՝ անպատմելի գեղով . և կային շուրջ զաթոռովն այլ ես Ե այր . և ես կիրակոս հիացեալ և զարմացեալ էի : Նոյն յանկարծակի երևեցաւ 'ի մէջ բլրին աղջիկ մի թ̃զրաղն . և էր պայծառ ոսկ̃ զարեգակն 'ի հանդերձս յոսկեհուռան զարդարեալ , և պսակ հրաշագեղ 'ի գլուխ նր . և եկն եկաց առ լուսաւոր այրն՝ որ յոսկեղէն յաթոռն նստէր . և նա ասէր ցաղջիկն . ուրախ լեր նր կոյս հարսն ք̃սի : Նւ տեսի այր մի սքանչելի երևոյթ , որ նման էր վ̃դպին իմում զաւթի . և նա ասաց ցիս . մի երկնչիր , այլ զօրացիր 'ի ք̃ս յս . զի ես քեզ ծնող , և եցոյց քեզ զլոյս մաքրութեան իւրոյ . արդ ունկն դիր , և պատմեցից քեզ զսքանչելիսդ :

Լոյսդ՝ որ երևեցաւ քեզ , ճառագ̃ք հոգւոյն սբ̃յ է , որ 'ի վ̃ր արդարոց և սր̃ց ծագեալ՝ լուսաւորէ , և երևի արժանաւորացն , որպէս

սայրին քնի, զի քեւ շնորհեցան ոսկերք մեր ՚ի մխիթարութիւն Հայոց. և արդ՝ առցես և բաշխեսցես ՚ի բժշկութիւն հիւանդաց. և յայտնի լիցի նահատակութիւն մեր, և տեղին՝ որ ՚ի հայր և յորդի և ՚ի հոգին սբ: Եւ սբ կոյսն սանդուխտ փառաւորէր զԱծ, և ասէր ցնա. ՚ի միւս առ՝ զոր տեսերդ և լուարդ. և դարձեալ ասէ ցնա. ես եմ ՚ի բլրին՝ ուր զառաջինն երևեցաւ քեզ տեսիլն: Եւ տարաւ զնա ՚ի բլուրն. և ցուցանէր նմա անդ եկեղեցի մի փոքրիկ՝ լի լուսով. իսկ վերին լայնն՝ ասէ, անպատումէ. ուր բնակութիւն սբցն է ՚ի հանդերձեալ կեանսն. արդ՝ զօրացի՛ր, և կատարեա՛ զհրամայեալսն քեզ:

Եւ ես զարթեայ, և փառաւորեցի զԱծ. և պահեցի զնդութ ՚ի նաւասարդի ամսոյ մինչև ՚ի սահմի ամիս: Եւ եկեալ չահէին եպսն բազմութիւն ուխտականացն, և խնդիր արարեալ սբ նշխարացն, և ոչ գտանէր: Եւ դարձեալ երևեցաւ նմա նոյն կերպարանօքն լուսաւոր սբ առաքեալն Թադէոս, և ասէ. այսօր գըտանէք զփափաքելին ձեր. և տարեալ զնա ՚ի տեղին՝ ցուցանէր, և տայր զգուշութիւն տեղեացն: Եւ յարուցեալ առնի ընդ իւ զՍամուէլ քահանայն. և հասեալ ՚ի նշանաւոր տեղին սբ հանգստարանին, աղօթիւք խընդրեցաք յԱյ՝ արժանի լինել գիւտի սբ նշխարացն:

Եւ յանկարծակի եղև ահեղ թնդիւն, և պատառեցաւ վէմն, և բուրեաց հոտ անոյշ, և ելից զվայրն ամ. և գտաք զնշխարսն յերա

րաքանչիւր հանգստարանի՝ ահաւոր եւ զզան-
չելի տեսլեամբ ։ Ռուզինն՝ սրբ. առաքեալն,
որ կայր 'ի մէջ պատառեալ վիմին՝ յարեւելից
կողմանէն ։ Այլ մօտ յառաքելոյն գտաք նշ-
խարս (սամուէլի, եւ իէլի), որոց նշանն
էր այս. միոյն Է ոտն հարեալ էր երկաթի
բեւեռ, եւ դեռեւս կայր 'ի նմա երկաթն. եւ
միւսոյն լիսեռունք ոտիցն էր ծակեալ. եւ մեր
ահիւ մեծաւ ժողովեալ զնշխարսն՝ փառա-
ւոր առնէաք զա͞ծ ։

Այլ յերրորդ աւուրն գնացաք 'ի հանգստա-
րանն սրբ. կուսին սանդխտոյ, եւ աղօթեցաք.
եւ եղեւ շամանդաղ՝ թանձրամած 'ի վերայ
բլրին՝ մինչեւ յերեք ժամ աւուրն. եւ ոչ կա-
րացաք տեսանել զինչ ։ Այլ յետ բազում ար-
տասուաց եւ աղօթից ապա ուրեմն կարացաք
տեսանել 'ի մէջ բլրին լոյս. եւ ահա 'ի մէջ
լուսոյն երեւեցան բազմութիւք լուսաւոր մարդ-
կանց, որք փայլէին ահաւոր տեսլեամբ ։ Այլ
ապա բացաւ տապանն սրբոյն, եւ բուրեաց հոտ
անոյշ. եւ փարատեցաւ շամանդաղն, եւ եղեւ
լոյս. եւ երեւեցան նշխարք սանդխտոյ. զոր
առեալ բերաք 'ի տեղին, ուր էր նշխարք սրբ.
առաքելոյն, եւ եդաք առ նմա ։ Այլ եղեւ 'ի
գիշերին յայնմիկ լոյս յերկնից պայծառ 'ի
վերայ նշխարաց սրբոցն. եւ ձայն օրհնութեան
լսէաք լինել՝ անդ 'ի սրբոցն, որք հրաշափառ ե-
ղանակաւ եւ քաղցր բարբառով օրհնէին զա͞ծ.
եւ զմիմեանս ողջագուրէին. եւ նշխարք ոս-
կերաց նոցա թռուցեալ առ միմեանս հանգ-
չէին ։ Այլ մեք զարհուրեալ կայաք. եւ տե-

սաք



# ԿԱՏԱՐՈՒՄՆ

## Սրբոյն Շուշանայ՝ դստեր մեծին Վարդանայ ։

Յն. դեկտ. 25 . և Լատինք . 30 . Ըստ եկեղ. դեկտ. 29 . Կալենդ. Հայոց ։ (1)

ՇՈՒՇԱՆ ՊԱՅԾԱՌԱփայլ՝ որ և Վարդուհի կարմրերփեան , խոստովանող մեծ վկայուհին էր երիցագոյն դուստր քաջ նահատակին՝ մեծին Վարդանայ մեծի Մամիկոնէի՝ Հայոց սպարապետի , որդւոյ սահականուշայ դստեր մեծին Սահակայ պարթևի ։ Վասնզի երկու դստերք եղեն մեծին Վարդանայ 'ի դխտրիկ կամ 'ի դստրիկ անուն ծնանէր տիկնոջէն իւրմէ . կրտսերն վարդանոյշ կոչեցեալ՝ եղև կին երևելի և քաջարեպաշտ նախարարին Հայոց արշաւրի արշարունւոյ , յն կամսարականի . իսկ երիցն Վարդանուհի կամ վարդուհի , որ ըստ գփոխանեաց և 'ի պայծառ դեղոյն՝ Շուշան կամ շուշանիկ վերաձայնէր , տուաւ յամուսնութիւն մեծի բդեշխին վրաց վազգենայ , որ և արքայ մծխիթայ . և արդարև ըստ լոռահրդոյ կրկնակի կուշմանն ծաղկեցաւ երանելին իբրև զվարդ և զշուշան՝ վայելչագեղ և անուշահոտ վարուք

ար-

որութեան . զի էր զարդարեալ երկիւղածու-
թեամբ և պարկեշտութեամբ , և կատարեալ հաւա-
տով և սիրովն ք͞սի . կիրթ յանձնապաշտութեան ,
և փոյթ յամ գործս բարիս . այլ այր նորա
գտաւ փուշ խոցոտիչ , և արժանի անշէջ
հրոյ .

Քանզի յետ կատարման սրբոց վարդապետաց
նահատակութ͞ն , երթեալ փախչէնայ 'ի դուռն
արքային պարսից յազկերտի՝ ուրացաւ զք͞ս .
և թողեալ անդ պատանդս՝ դարձաւ յերկիր
իւր , զի անկասկած տիրեսցէ միաձնակի թա-
գաւորութեն իւրոյ : Յայնժամ սրբն շուշան
յանհնարին սուգ և 'ի կոծ սրտի փորձակեալ՝
ոչ կարէր ինչ մխիթարել զանձն իւր . խոր-
տեալ սկսաւ զայր իւր , և համարձակ կշտամ-
բել վ͞ս ուրացութեն . այլ զատեալ զնա իբրև
զսալ զարբենաց անսուտ , և ամէ՛ն անզեղջ 'ի
չարեաց , ոչ ևս կամէր հաղորդ լինել նմա՝
ո՛չ կերակրովք , և ո՛չ բնակակցութբ . զի
թերևս սթափեսցի և 'ի զգաստութի եկեսցէ :
Նաև այրն անօրէն առաւել փոյթ 'ի մտի դը-
նէր դարձուցանել և զկինն 'ի կրօնս անա͞ծ-
ութե , և նմանեցուցանել ինքեան . զի յան-
դիմանութի էր նմա ա͞ծպաշտութի շուշա-
նայ : Իսկ զի երանելի կինն քաջութբ զդէմ
կալաւ չար կամաց վազգենի , ընտրեալ զմահ
քան զհեռանալն 'ի ք͞սէ , վ͞սյ և նա հանա-
պազօր ո͞պ դահիճ կայր 'ի վ͞ր գլխոյ սրբուհ-
ւոյն . և բազում գանիւ և հարուածովք , և
անարգութբ , ևս և բանտիւ և կապանօք
անգամ՝ տառապեցուցանէր զնա զամս վեց .

Պ. մին-

մինչև որդեծնելից եղև մարմին երանելւոյն շուշանայ 'ի չարաչար կապանացն և յանխնայ հարուածոցն ։ Այլ նա գոհութե՛ տարեալ ամե՛ն համբերէր արիաբար ․ զի և ոչ երբէք բան տրտնջման ել 'ի բերանոյ նր ․ այլ զօր ամ փառս մատուցանէր այ ․ զի վն նր և եթ սի–
րոյ զայսպիսի կիրս կրէր ։

Նաև այլոյն անհաւատ և գազանամիտ 'ի տե–սանել անգթ զայնպիսի համբերութի շուշա–նայ՝ և ս քան զևս 'ի մոլեգնութիւն բերեալ լինէր ․ և ստէպ հայհոյէր զսբն վարդան ․ և կոչէր զվարդուհին շուշան նախատանօք դուստր աշխարհաւերի ։ Նաև յաւուր միում այնչափ գազանացաւ բռնաւորն վազգէն , զի յարձակեալ 'ի վ՛ր՝ առ 'ի մահ հարկանէր լախտով զսբն շուշանիկ , մինչև մեռցի ընդ
հարուածովք ։

Յայնժամ մեծ տագրն շուշանայ՝ որ և եղ–բայրն վազգենի ջոջիկ անուն , 'ի վերայ հա–սեալ՝ թափեաց զնա 'ի ձեռաց նորա , և տա–րեալ ընկեց զնա կիսամահ 'ի տեղի անքոյթ ։ Այլ այնպէս յեօթներորդ ամի տառապանաց վատանգեալ երանելւոյն 'ի վերջին հարուա–ծոց անտի՝ պատրաստեաց զանձն իւր արժա–նաւոր քրոնէութե սբ խորհրդոց յելս 'ի հովտէս տրտմութե ․ և զմիտսն առ ած ու–ղերձեալ՝ կարդաց յերկինս 'ի վեր , տր յս ընկա՛լ զհոգի աղախնոյ քո ․ և այնպէս բարի խոստովանութե՛ հանգեաւ 'ի քս սբն վար–դուհի շուշան , ընկալեալ զպսակին կատա–րեալ նահատակութեան զկնի երջանիկ հօր

քրիստոնէից , եթէ երկու՝ ժամանակակից իրերաց, և նմանօրինակ ընթացիւք. մին՝ հովիւ կարքեդոնացւոց , և միւսն անտիոքացւոց ։ Արդ՝ թէպէտև այժմու արևմտեայք լաւ վարկանին յերկուս զատանել , այլ արևելեայք 'ի սկզբանէ հետէ մի և նոյն ճանաչեն . զորմէ ճոխագոյն տացուք պատճառս իմաստնոց 'ի կարգի ծանօթութեանց , յայսմ վայրի հարկաւորեալք իբրև զմիոյ խօսել՝ ըստ վկայութեան մեծին Գրիգորի աստուածաբանի , և այլոց անհրաժեշտ վկայից , զհետ երթալով ճառընտրաց մերոց և յունաց , համդերձ դիւանական վկայաբանութեամբ աֆրիկեցւոց և հռովմայեցւոց ։

Արդ մեծն Կիպրիանոս՝ մականուանեալն Թասկիոս Կեկիլիոս , էր յերրորդ դարու , փիլիսոփայ հեթանոս , քաջ ճարտարախօս , մոգ ճարտար , և քուրմն կռոց , անդստին 'ի մանկութենէ նուիրեալ 'ի սպաս դից 'ի ծնողաց իւրոց՝ բնակելոց 'ի Կարքեդոն քաղաք աֆրիկեցւոց . շրջեալ յԱթէնս , յԵգիպտոս , յԱնտիոք ասորւոց , և 'ի մէջ քաղդէացւոց ։ Սա այնպէս էր հռչակաւոր 'ի դենի իւրում , ո՛չ թէ զանցանել զմոգպետօք և զամենայն կախարդօք , եւս և զՅանէսիւ և զՅամբրէսիւ . թող զմեծութիւն և զճոխութիւն ընչից և փառաց . մինչև չիշխել ումեք ասել ինչ ընդդէմ նորա ; կամ չարախօս լինել զնմանէ . քանզի ամենեքին ակնածէին 'ի շքոյ նորա , և 'ի պատիր գիտութենէ դիւական մոլորութենէ . որպէս և համարձակ հրամանս տայր դիւին կոչ-

խնդալ լինէր 'ի նաւահանգիստն քո․ աղա-ւէն յաւոյ և պարկեշտ ամբողջութե առնէր ան-ձին զկուսին փրկչական, և ապաստան լինէր 'ի գիրկս երկնից Թագաւորին մօր և կու-սի․ և յաղօթս և 'ի պահսութի տուէր զանձն՝ հաշէր պահօք զփափուկ մարմինն, որպ թէ մեռուցանել յառաջ քան զմահն․ և թա-ռամեցուցանէր զգեղն անձին գետնատա-րած անկողնովք․ և զինեալ հոգևոյն ոյ՝ շիջուցանէր զնետս չարին ։ Տեսեալ դիւին, թէ չկարէ զամագիւտ լինել 'ի նմա զաղանի հնարիւք, յերևս իսկ երևեցաւ նմա՝ յոր-ժամ կոյսն կայր յաղօթս յերրորդ ժամու գիշերոյն․ իսկ յուսակտանէ տրար զնշան սրբոյ խաչին ընդդէմ ցնորից չարին, և փչեաց ընդդէմ նորա․ յայնժամ ահիւ ամօթապարտեալ փա-խեաւ դևն․ և երթեալ պատմեաց կիպրիա-նոսի զամ․ ։

Զայրացեալ կիպրիանոս առաքեաց և այլ ևս դևս հզօրագոյնս՝ մի քան զմի չարագոյնս․ այլ սրբ կոյսն նոյնպէս և զնոյն հալածեաց զօրութ սրբոյ խաչին և անուանմամբն Քրիստոսի․ մինչև բա-զումս աշխատ եղեալ դիւաց, և ոչինչ կա-րացեալ առնանել նմա՝ զնայելն ամաչեցեալք, և իբրև խուիք յերեսաց հրոյ փախուցեալք ։ Զարմացաւ կիպրիանոս ընդ իրսն․ և խոշ-տանգեալ զդևս՝ հարցանէր զսաստկութի․ զի՞ այդչափ յամեցիք, և ունայն յետս դար-ձայք՝ առանց կատարելոյ զիմ կամս ։ Եւ նոքա ասացին յայտնապէս, թէ անհնար է հաւանեցուցանել զաղջիկն զայն․ զի նշան

խա-

խաչելոյն՝ զոր ունի տպեալ զէն անվանելի , ոչ միայն զմեզ հալածէ , այլ թէ և իշխանն մեր ինքնին զնայցէ առ նա անհրաւոյթ բա-նակաւն իւրով , ամօթով փախստական լիցի 'ի նմանէ դժոխային զնդաւն հանդերձ :

Զայն իբրև լուաւ Կիպրիանոս , անէծ զդ-ևսն , և ընտրեաց այլ չարագոյն դև մի հա-րիւրապետ դիւաց . զնա առաքեաց առ յաւ-տիանէ՝ պատուէր տուեալ զամ հնարս հայթ-հայթել առ որսալոյ զմիտս կուսին : Իսկ նորա եկեալ առ կոյսն՝ սպառնայր նմին ա-նելով . մի կարծեր զիս ոչ զայլ տկար դևսն , զի ես հարիւրապետ եմ դիւաց : Իսկ սրբու-հին սաստեաց նմա անուամբն Քի , և ան-յայտ արար . մինչև չիշխեաց չարն դառնալ առ Կիպրիանոս , այլ անզգնդալոյզ կորեաւ 'ի միջոյ :

Յայնժամ 'ի միտս եկեալ Կիպրիանոսի ի-մաստնոյ , և լուսաւորեալ առ յայն՝ 'ի բաց մերժեաց յիւրմէ զամ զդևսն , ասելով ցնս . զի՞ զմեզ ցայս վայր պատրէիք՝ պարծելով զօրագոյն լինել քան զՔս . զի եթէ լոկ ա-նուն նորա և նշան խաչի նորին յաղթէ ձեզ , ապա յայտ է՝ թէ տկարն 'ի հզօրէն յաղ-թահարի , որպէս և ճրագ յարեգակնէ , և առաւել խաւարն 'ի լուսոյ . և արդ առանց յերկուանալոյ նա զօրաւորագոյն է և ամե-նազօր որպէս զԱծ , ոչ. և սնոտի իսկ է բնու-թեն ով :

Զայս ասացեալ և 'ի բաց ընկեցեալ զար-ուեստ չարութեն՝ որ 'ի ձեռին , այնուհետև

ապա

Աշխատաւորութիւն սէջն
Լինքն զկիպրիանոս :

Այն իրի դրէ պոնտիոս, թէ յերկար լինի մի ևս մի նշանակել զնմ գովելի քաղաքավարուն կիպրիանոսի. չնա լիցի ասել 'ի յայտարարութիւն ամէն, զի այն ինչ նորոգ էր ընծայեալ քնի, և մատաղատունկ 'ի հաւատս, ածային ընտրութիւն և հաճութեամբ ամ ժողովրդեան ընտրեցաւ 'ի քահանայութիւն և յեպիսկոպոսութիւն. Թէպէտև նա հնարեցաւ խոյս տալ՝ անարժան զանձն խոստովանելով, այլ խոնարհութիւն նր արժանի արար զնա այնմ աստիճանի. քանզի ամ իրօք բռնացաւ ժողովուրդն, և կացոյց զնա եպս :

Ոչ գոյր չափ բարեպաշտութեան նր և ողորմածութեան. համարձակ էր 'ի յանդիմանել զանուղղայս, հեզ 'ի խրատել, քաղցր և հագեբուղէս 'ի վճռութեան, պատկառելի կերպարանօք, և գովելի բարուք : Յաւելուն վկայագիրք, թէ յորժամ նստաւ մեծն կիպրիանոս յաթոռ հայրապետական, ձեռնադրեաց զնոր կոյսն յուստինանէ 'ի սարկաւագուհի՝ կացուցանելով զնա մայր վանաց պարկեշտաժողով կուսից : Իսկ եղև 'ի ժամանակին յայնմիկ յարեաւ հալածումն յերեսաց դեկոսի կայսեր ընդդէմ քրիստոնէութեան ընդ ամ տեղիս. և հեթանոսք՝ որք խեռեալ էին ընդ դարձն կիպրիանոսի, խորհեցան ըմբռնել զնա և առաջի արկանել առիւծուց. յայնժամ երանելի հայրապետն 'ի սակաւելոյ եղբարց՝ և վն օգտի նց՝ զգուշացաւ անձին, և զօղեցաւ առ ժամանակ մի. որոյ վն ուխտ

եկե-

եկեղեցւոյն՝ որ 'ի հոռովմ, սկսաւ դանդա-
ղել զնմանէ՝ ոչ թէ անմտութենէ թողեալ իցէ
նորա զհօտ իւր յայնպիսում ժամանակի .
բայց կիպրիանոս ոչ դադարէր 'ի ձեռնտու
լինելոյ հաւատացելոց բանիւ և գրով :

Անկաւ յաւուրսն յայնոսիկ յափրիկէ և ահա
սրածութիւն ( այն է ժանտախտ կմ մահտա-
րաժամ ) . վասն եկեալ և ժողովեալ կիպրիա-
նոսի զժողովս 'ի հաւատացելոց՝ ազդու բա-
նիւք յորդորամիտս արար զնս ձեռն տալ և
դարմանս տանել վտանգելոցն , և զմեռեալս
հոգալ հիւանդաց և հոգեվարաց և վախճա-
նելոց :

Յետ ամաց Ը դադարել սրածութեանն ձեռն աւր-
կին կռապաշտք , և տարան զհայրապետն
յատեան դատաւորին՝ որ եկեալ էր 'ի կար-
քեդոն հրամանաւ դեկոսի , վասն քննելոյ
զքրիստոնեայս . և սկսաւ դատաւորն փոր-
ձել զնա ազգի ազգի հրապուրանօք և խոստ-
մամբք դառնալ յառաջին դենն իւր և 'ի
պատիւ : Պխի ետ կիպրիանոս . եթէ այլ
ոք էր՝ որ փորձէրն զիս , և ես անգէտ լինէի
խաբէութեան և մոլորութեան նց , թերևս յու-
սալի էր քեզ որսալ զիս . այլ վն զի նա է
փորձիչն բանսարկու՝ որ չարեացապարտն է
նմ մոլորութեանց , որոց ես ինքնին կանխաւ
քաջ գիտակ էի , և խորտակեցի զլուծ նց ,
անելորդ է այսու հետև փորձելդ ձեր զիս .
զի և չեն իսկ իրաւունք՝ զեղեալն 'ի մոլորու-
թէ 'ի նոյն խորխորատ ընկենուլ . և անհը-
նարին է այդմ լինել . և քեզ չէր պարտ խորհել
զայն :

Պատերնոս անթիհիպատն ասէ . արդ կամ ձեռն յայդ կամս: Կիպրիանոս ասէ . անհընարին է փոխել բարի կամաց՝ որ ճանաչէ զԱծ : Իշխանն ասէ . և արդ կարօղ ես ԺԲ հրամանի վաղերբիանոսն և գաղղիանոսն վտարանդի երթալ 'ի քաղաքն կուրտաբացւոց : Կիպրիանոս ասէ . երթամ : Յայնժամ ասէ ցնա պատերնոս . ոչ միայն մի երթայց , այլև մի երեցանց արժան համարեցան գրել առ իս . արդ կամիմ գիտել 'ի քէն , թէ ո՞յք իցեն երեցունք՝ որք կան 'ի քաղաքի աստ :

Պատասխանի ետ կիպրիանոս . յորժամ ձեր քաջ և օգտակար խորհրդով սահմանեցիք՝ չլինել ուրեք մնատնիչ . մի որոյ չկարեմ ես յայտնել և մատնել զնոսա . 'ի քաղաքս իւրեանց գտանին նք : Իշխանն ասէ . ես այժմ յայսմ տեղւոջ պահանջեմ զնս : Կիպրիանոս ասէ . իսկ որովհետև կարգ նոմոսաց ոչ թողացուցանէ՝ զի անձամբ զանձն մատնիցէ ոք , և քում իսկ կարծեաց դժպատեհ երևի բանդ , ոչ կարեն նոքա ինքնին անձնամատն լինել . այլ առ 'ի քէն յուղեսցես գտցին : Պատերնոս անթիհիպատն ասէ . այժ լինիցին գրոցին : Զայս ասացեալ՝ 'ի վՁ եամ . պատուիրեցին ևս ինքնակալք , զի մի 'ի տեղիս ուրեք ժողովք լինիցին , և մի 'ի դամբարանս մտանիցեն . արդ եթէ ոք զայդ կենցաղօգուտ հրաման ոչ պահէ , գլխապատիժ եղիցի : Իսկ նոցա ես պինի . արա որ ինչ քեզ հրամայեալ է . յայնժամ ել հրաման յիշխանէն տանել զնա 'ի տեղի աքսորանաց :

ռազմին պատերին եղանէր , հրաման առեալ
արտածել զոչխարս քնի : Այսոյ ասէ , որք միան-
գամ չարեն պատրանօք՝ պատրեալ՝ իբրև
յակամայս և առ ահի տանջանաց անկան 'ի
թակարդ դիւին , զնա պսակս է կշիռ ապաշ-
խարութե արժանի առնել . իսկ որք ինքնա-
կամ մոլորութբ անդադարձ իցեն 'ի չարիս՝ թո-
ղուլ 'ի բաց իբրև անարժանս շնորհացն այ :
Նոյեն և այլ ազգի ազգի խնդիրս 'ի ժամա-
նակին յայնմիկ . և յամի բարուոք ընթանայր
Երանելոյն կիւրղիանոս՝ միաձայն ընդ այլ եպիս-
կոպոսունս և ընդ հայրապետս մեծին հռով-
մայ . բայց միայն գթէր , և ստորանայր 'ի
նոցանէ բանիւ և գրով , կրկին մկրտութե
կարօտ առնելով զմկրտեալսն 'ի հերձուա-
ծողաց , թէպէտ և ըստ կարգի ուղղափառաց
եղեալ իցէ մկրտութիւն առ 'ի նոցանէ . ըստ
նմին և յայլ ինչ ինչ սովորութիս հռովմայեց-
ւոց սրբոյն արկանէր՝ ձայնակցութբ փիր-
միլիանոսի եպիսկոպոսին կեսարու կապա-
դովկացւոց , ընդ որում ունէր թղթակցութի
ընտանի . նմին իրի և հռովմայեցիք պատ-
ճառս խնդրէին յընդդէմ հարկանել զափրի-
կեցիս . այլ ոչ յերկարեցան այսպիսի գժտու-
թիւք և երկպառակութիւք . և կիւրղիանոս
զիւր սխալանսն արեամբ նահատակութեն
սրբէր՝ ըստ օգոստինոսի . զի յետ տարւոյ միոյ
աքսորանաց դարձաւ յաթոռ իւր , և կատա-
րեցաւ ընդ օրինակիս ընդ այսմիկ :

Սա գրեալ պոնտիոսի սարկաւագի սմին
կիւրղիանոսի՝ սրբասատահմանեցաւ 'ի քաղաքե

նոյ , և յայտ առնէր զծարաւ սրտին առ նա-հատակութիւն ։ Յայնժամ սկսան յորդորել զնա բարեկամքն՝ թէ առաջին օրինակի թա-քուցանել զանձն , մինչև անցցէ մրրիկ հա-լածանաց , և ցուցանէին նմա տեղի թաքըս-տեան ։ Իսկ նա ոչ առնոյր յանձն , և քաջա-լերէր զնա եւս 'ի հանդէս վկայութեն . և ա-սէր . ընտրելի՛ էր ինձ , զի այժմ յայսմ ժա-մու 'ի խօսել իմում զայսոսիկ՝ եկեալ հատ-ցեն զգլուխ իմ ։

Այլ ահա 'ի միում յաւուրց յանկարծակի ե-կին 'ի տուն եպիսկոպոսին զօրականք հանդերձ զօ-րավարաւ , և միւս եւս իշխանաւ . և կիպրիա-նոս ընդ առաջ ել նց զուարթութբ . և առեալ տարաւ զնա զօրավարն կառօք այն օր 'ի տուն իւր արտաքոյ քաղաքին յաւանն սատուռնի , կամ կռոնաւ ։ Եւ եղև ընդ ամ կարքեդոն , եթէ ըմբռնեցաւ անդրէն կիպրիանոս Թաս-կիոս , և ընթացան զկնի նր բազմութիւնք քրիս-տոնէից և հեթանոսաց 'ի տեսանել զկատա-րածն ։ Այլ զօրավարն պատուական պահեաց զնա , զի երկնչէր 'ի ժողովրդենէն . և թոյլ ետ իւրոցն՝ յորոց մի էր և սարկաւագն պոն-տիոս , խօսակից լինել նմա և սեղանակից յայնմ գիշերի . իսկ ամբոխն կայր արտաքոյ և հսկէր , զի մի՛ առանց գիտելոյ իւրեանց սպանցեն զհայրապետն ։ Տեսեալ սրբոյն զհա-մախուռն բազմութիւն եղբարց՝ արանց և կա-նանց , պատուէրս ետ նց պահել զաղջկունս . քանզի ամենեքեան յաւանի անդ առ դրուրս օթևանի զօրավարին կային ։

յաղթ մեր այս տանջանք քերանաց ։ Այլ էր ժամ վեցերորդ , յորում արեգակն 'ի բարձանց ճառագայթէր ընդ մէջ երեսս երկրի , և ծոցքն զարեան վտակս հեղուլին և ներկանէին զերկիր ։ Տեսեալ դատաւորին' թէ ոչինչ օգտի , յանհնարս եմուտ ․ հրաման ետ իջուցանել զնոսա 'ի կախաղանաց , և տանել արկանել անդրէն 'ի բանտ , պատուէր տուեալ կրկին , զի մի՛ ոք գայցէ 'ի տեսանել զնոսա , կամ ջուր տալ նոցա ։

Իշխան մի էր 'ի Նիկոպօլիս իբրև քաղաքապետ' հերովդէս անուն' քրիստոնեայ , այլ կեղծաւորեալ զհեթանոսութիւն ․ առ որում ժամս կալեալ էր լիւսիաս դուքսն ։ Այլ էր հերովդի դպիր ոմն փիլիմոն ( կամ փիլիոն ) կոչեցեալ' նոյնպէս 'ի ծածուկ քրիստոնեայ , որոյ էր ընտանութիւն ընդ զևոնդիոսի գլխաւորի նոցին ․ զնա կոչեաց երանելին զևոնդ առանձինն , և ասէ ցնա ․ ով փիլիմոնէ' եթէ սիրես զիս իբրև քրիստոնեայ և իբրև եղբայր , երթ և ասա ցտէր քո հերովդէս , զի թէ ունի համարձակութիւն առաջի դքսին , տացէ նմա 'ի գլուխ հանել զպատուհասն իւր որ մեզ կարծեցոյ զմեզ 'ի կենաց 'ի վաղուեան աւուր ։ Զայս ասէր զևոնդիոս , քանզի երկնչէր' զի մի՛ արդեօք 'ի նոցին ոք առ երկիւղի երկար չարչարանաց պակասեսցի 'ի հաւատոց ․ և փիլիմոն երթեալ պատմեաց զամ յականջս իշխանին ։

Այլ էր դքսին կոչեալ զհերովդէս իշխանն 'ի միւսում աւուր 'ի ճաշ , և միայն գալստեան նոր ․

նոր. և նա պատճառէր ոչ երթալ. և 'ի հարցանել զպատճառսն՝ ասէ հեթովլդէս, քանզի տեսի երէկ զքերանս կողից պատաժուարացն, և զորովայնս նոցա թափեալս 'ի քերանաց, տաղտկացեալ, և ոչ տանի բնութիւն զկերակուր ինչ: Եհարց զնա լուսիաս, և ասէ. արդ զի՞նչ կամիս՝ զի արարից ընդ նոր: Եւ նա ասէ. ո՞չ ապաքէն որք հաւատան կան հրամանաց ինքնակալաց՝ արժանի են մահու. և ընդէ՞ր ոչ մեռանիցին արագավախճան: Յայնժամ դատաւորն խոստացաւ՝ 'ի վաղիւ անդր հրով կարճել զնա 'ի կենաց ըստ արքունի հրամանին:

Զայս իբրև լուաւ փիլոնոս, ընթացեալ պատմեաց սրբոյն 'ի բանտի. և նա ուրախացեալ յոյժ՝ զուարթագին փութով սպասէին ելից իրացն. և ամենեքեան փոխարէն բարեաց մաղթէին փիլոնոսի և տան նորա: Յայնմ վայրի եհաս ըստ սովորութեան բարեպաշտուհին բասիանէ՝ բերեալ ընդ իւր ջուր 'ի ծածուկ. և քանզի արգելլին զնա պահապանք դրանն, հարցանէին զնա սրբքն՝ եթէ ունիցի՞ ջուր, և նա վասն մերձակայիցն չիշխեաց ասել, թէ ունիմ: Յայնժամ սրբն զնշանդիրս խօսեցաւ առ բասիանէ հայերէն լեզուաւ վա չիմանալոյ բանտապանացն, (քանզի և կինն յազգէ հայոց էր, այլ և վկայքն, թէպէտև յունարէն քաջ գիտէին,) և ասէ. գիտեմ՝ զի տապացեալ կամք, և քաղցն սգիք մեր. և եթէ չիցէ քո բերեալ ջուր յայսմ անձկութեան, գիտեմ զի զոր բարերարեցերդ մեզ մինչև ցարդ,

իբրև

իսկ և յուշինչ համարեցի, ոչ թէ չիցէ ինչ արարեալ քո։ Օ՜ այս ասէր առ 'ի յորդորել զնա, զի բերցէ զջուրն 'ի մխիթարութիւն և 'ի քաջալերութիւն նահատակակցաց իւրոց։ Յայնժամ բանսխանէ ելեալ է զուան՝ եգիտ զփոքրիկ և զնեղ պատուհան բանտին, և ետ այն եա նոցա զջուրն՝ զոր բերեալ էր։ Իսկ սուրբն և զօրացան փոքր մի վկայքն, օրհնեցին միաբան զկինն, և աղօթեցին՝ զի որդիք նորա և որդիք որդւոց նր ժառանգք լինիցին սրբյ կարգի քահանայութե, 'ի հաստատութիւն այնպիսի ծառայութե նր։ Իսկ առագարև ընկալաւ երանելի կինն բազում առաւելութբ զառ 'ի քնէ խոստացեալ վարձս՝ որոց արբուցանէին բաժակ մի ջուր ցրտոյ յանուն աշակերտի նր. ուր սա արբոյց յանուն քի՝ կենդանի վկայից նոցա։

Իսկ երեկոյ լինէր, սկսան սաղմոսել սրբքն. Տէր լուր աղօթից իմոց, և աղաղակ իմ առ քեզ եկեսցէ. և որ 'ի կարգին։ Իսկ 'ի կատարել զսաղմոսերգութի՝ հայէին 'ի վերայ կապանաց իւրեանց, որ վն անուան քին, և քաջալերեալ զօրանային 'ի նմբ. և դարձեալ յաղօթս կացեալ՝ ասէին միաբան. Տէր յս՝ որ բանաս զցասս ամ ստեղծուածոյ. և ոչինչ ծածկի առ 'ի քէն, որ քննես զսիրտս և փորձես զերիկամունս. յայտնի է առաջի քո յօժարութիւն սրտի մերոյ առ քեզ. բժշկեա՛ զհոգիս մեր, զի զմարմինս մեր մատնեցաք վն քո. քաւեա՛ զմեր զանօրէնութիւնս յապականացու կենցաղումս։ Սակաւ է և թեթևս

Թուաբերոն՝ այն ամ, զոր կրեմքս, առ բազում սիրոյն՝ որ առ քեզ Տէր. քեզ անձնացեալ եմք, և 'ի քէն միայնոյ երկնչիմք: Նայեաց յերկնից, և զօրացո զմեզ. զի դու ես՝ որ մխիթարես զմեզ յամենայն նեղութիւնս մեր առ 'ի կարօղ լինելոյ համբերել սիրով: Մի՛ գըրացէ տեղի սատանայ 'ի մեզ. մի՛ որոշեր զմեզ յեղբայրակցութենէ աստի. զի մայր մեր ամենեցուն է հաւատքն՝ որ առ քեզ, և դու Տէր՝ հայր մեր. փառաւորեալ զանուն քո յանդամս քո. և Ընդունելի լիցուք որպ̃ զողջակէզս խոյոց և զուարակաց, և որպ̃ բիւրաւորս գառանց պարարտից. այնպէս եղիցի պատարագ մեր առաջի քո Տէր, և կատարեալ գտցի յաչս քո. որ օրհնեալ ես և փառաւորեալ յամենայն յաւիտեանս: Եւ ասացեալ ամենեցուն զամէնն՝ հսկէին զգիշերն ողջոյն անքուն յուրախութեան. քանզի լուեալ, եթէ փաղփին կատարելոց են. վ̃յ և զհասարակ գիշերաւ պաշտեցին զմեծ սաղմոսն, զԵրանեալ են ամբիծքն 'ի ճնպրհի, իբրև ցայգապաշտօն՝ 'ի խորհուրդ թաղմանն անձանց իւրեանց, որպէս 'ի վ̃ր կենդանութեան մեռելոց վասն Տ̃ն: Եւ իբրև կատարեցին զսաղմոսն, մինչդեռ յաղօթս կային լռելեայն, ահա հրեշտակ Տ̃ն եկն եկաց 'ի վերայ, և ելից լուսով ըղտուն բանտին. և ասէ ցն̃ս. ուրախ լերուք, զի մերձ է կատարումն ձեր, և հասեալ է զրաւ մարտի ձերոյ. և անուանք ձեր գրեցան 'ի գիրն կենդանեաց. քաջալերեցարուք, Տէր ԸՆ̃ ձեզ է: Եւ զայս իբրև ասաց

հրեշ-

հրեշտակն, մեկնեցաւ 'ի նոցանէ. իսկ սոքքն երկիր պագանէին նմ̃յ անպատմելի խնդութ̃բ. և փառս վերառաքէին անյագ փափագմամբ: Իսկ զօրականքն՝ որք պահէին զդուրս բանտին, Մենեաաս և Բելլերադէս, տեսին զլու-սոյն պայծառութի̃, և լսել լուան զձայն հրեշտակին, բայց զերեսս նորա ոչ տեսին: Ասէ Մենեաաս ցԲելլերադէս 'ի լեզու եգիպ-տացի (զի և ինքեանք եգիպտացիք էին յազ-գէ). տեսանե̃ս և լսե̃ս Բելլերադէ եղբայր, թէ ո̃րպիսում արքայի զինուորք են դոքա. ասեմ քեզ, զի ես անդստին բարեկամ դոցայ քրիստոնէից. զի ո̃չ խորհէին անիրաւել զոք, այլ անձանց զգուշացեալ՝ պահէին և աղօթէին առ ա̃ծն իւրեանց, առաւելապ̃ս ը̃ այգն առա-ւօտու. և յա̃մ ժամ երկիր պագանէին նմա. չառնէին ինչ անարդար կամ ապիրատ. հիւ-րասէրք էին. մի̃նչդ թէ զամենեսին սիրէին: Այս ո̃չ դու լաւ ես քան զիս գիտես, քանզի սքանչելագործ են բնակեալքն յանապատն եգիպտոսի: Այս զի՞է մեզ զանազանել, կամ յանհոգս կալ. այժմ է ժամանակ հանդիսի մարտին, և ցուցանելոյ զքաջութի̃ զինուո-րութե̃ մերոյ. ինձ բարւոք թուի մտանել ը̃ նս 'ի բանտն, և աղաչել զնոսա ը̃ուանել զիս 'ի թիւ համարոյ իւրեանց. իսկ քեզ

զի՞արդ թուի եղբայր:

Ասէ Բելլերադէս. եթէ դոքա չզանգիտեն 'ի մահուանէ, այլ վ̃ն ա̃յ իւրեանց մեռանին ուրախութ̃բ, և այնպիսի լոյս տեսանեն՝ որպի-սում և զմեզ արժանի արար՝ որ երևեցաւ

նմ̃յ,

անձանց, այլ 'ի մարդկանէ հաւատահաւորին :
Այս ելեալ դառնութեամբ արտաքոյ քան ըզ-
քաղաքն՝ նստաւ 'ի տեղի ատենին, և հրա-
մանն ետ փութապէս ածել զկապեալսն զա-
ռաջնեան : Եւ յորժամ եկեալ դատաւորն 'ի
մէջ քաղաքին և երից նահատակաց և զեր-
կոսին պահապանս զմնեղաս և զանեւերպաղէս
խնքնակամ կալանաւորութեամբ կապեալս, ժող-
ովեցաւ և ամէն ցեղխանին ապաշխարանս. տեսա-
նէ՞ս մայպխանէ, զի և ցածուն առանցդ հեշ-
տալի եղև կրել զմահ. զի ահա զօրականք
սիրեցին զմահ քան զկեանս : Ապախանոս
ասէ. տէր, նորահնար տանջանաց պատու-
հասեա զնա : Դատաւորն ասէ. ոչ, երդ-
ուեալ 'ի դիս, ոչ տանջեմ զնա յերկար. զի
մի 'ի տանջանս անդ զղջանայցեն և խոստա-
վան լիցին զանձս և կեցցեն. այլ տամ վճիռ
հրամանի և վճռեմ, զի ընդ այլսն այրեսցին,
և որում ցանկացանն՝ հասանիցեն :
Այս արար լիութեամբ դատակնիք մահու ընդ
դէմ վկայիցն առ հասարակ օրինակ զայս.
Որքա՝ որք կանս առաջի դատողական բե-
մին՝ որք թուով քառասուն և հինգ, քրիս-
տոնէիցն մասունք պաշտամանց պաշտօնեայք,
քանզի դիմնկալ զատեն սգաստափառ խնքնա-
կալաց, և ոչ զոհեցին անձինս, նախ ծայրա-
տեսցին 'ի ձեռաց և յոտից սակրօք, և ապա
հրոյ ձարակ լիցին, և վարեսցին 'ի յորձանս
գայլ գետոյ 'ի կորուստ :
Ընդ նոր տեսանել զհանդէս բանաւոր ոչ-
խարացն քրի՝ մեռանելոց 'ի սուրբեր և յաղ-
թա

Ջանկեզ վր անուանն նորա . քանզի յարձա-
կեալ անողորմ դահճաց դայլաբար 'ի վերայ
քաջ նահապետաց՝ արագ արագ զմի մի 'ի նո-
ցանէ յերկիր դառնացուցանէին իբրև զգա-
ռինս անմեղս, և քանցէին զձեռս և զոտս
նոցա անխնայ՝ չարաչար խորտակմամբ ոսկե-
րացն . որով և յարիւն ապաժոյժ թաւալեալ
երանելեացն խմբից՝ կէսք 'ի նոցանէ անդէն
և անդ արձակէին զոգիս, և ոմանք յոգիս
ապաստան՝ դեռ 'ի շունչն կային :

Յորս և սբն անիկոոս՝ հայեցեալ 'ի դարշա-
պարս ոտից իւրոց, զի կրունկն խորտակեալ
ոսկրաւ՝ չէր 'ի բաց կտրեալ, այլ խեղաթիւր
ոլորեալ, ծիծաղեցաւ ընդ այնպիսի անցս ան-
դամոց իւրոց, և ձայնեալ ցմնացեալ ընկերս
իւր՝ ասէր . եկայք տեսէք եղբարք զման-
գաղն հասկաքեր . և նոքա ձայնակից լինէին
նմա ուրախութբ : Իսկ սբն սխրանօք 'ի ծայ-
րատիլ անդ մարմնոյն՝ տապացեալ 'ի սրտի
պապակէր 'ի ծարաւոյ անհնարին պապք-
մամբ, և գլորեալ 'ի մի կողմն 'ի վր քարին,
յորոյ վր անկեալ դնէր՝ ուշինչ բացագոյն
յայլոց սրբց, եբաց զբերան իւր, և գոչեաց
առ տր աղօթիւք՝ ասելով . Տէր մեծապար-
գև, որ զբազմութիւն ժողովրդեանն ծարա-
ւելոյ արբուցեր 'ի վիմէ . որ զծովն կարմիր
բաժանեցեր, զի ժողովուրդ քո ապրեսցի 'ի
ձեռաց թշնամեաց . որ զաւհանս երկնից
բացեր, և կոչեցեր զջուրս ծովու, և յորդե-
ցեր 'ի վերայ ամ երեսաց երկրի . որ ըղ-
ջուրսն յորդանանու օրհնեցեր սբ մկրտու-

Թէզ քով. որ ասացերդ՝ ես եմ ջուր կենդա-
նի. պատառեալ տ̄ր զվէմս զայս, և աղբե-
րացն 'ի սմանէ զջուր, և արբի ինձ ռակա-
մի. և սովին գիտացից՝ եթէ սիրես զմեզ,
և եթէ արժանի եմք կոչման քո տ̄ր. վ̄ն զի
տեսանես, զի շինուած մարմնոյ մերոյ քայ-
քայեցաւ, և եղաք չորացեալ ո̄պ խեցի ։
Մինչ դեռ նա զայս աղօթս մատուցանէր
'ի վ̄ր քարին, հնչեաց ահագին դղրդիւն 'ի
քարէ անտի՝ իբրև զկարկաջանս հոսանաց
ջուրց. պատառեցաւ վէմն, և բղխեաց ջուր
ականակիտ և քաղցր. որ և տեսանի առէ
հէն վկայարանն մինչև ցայսօր 'ի տեղւոջն
յայնմիկ ։ Յայնժամ Հայրն ս̄ն սխրանօք 'ի
ջրոյ անտի, զովացաւ և օրհնեաց զա̄ծ, և
ասէ. օրհնեմ զքեզ տ̄ր զլիացուցիչդ ունայ-
նացեալ անձին իմոյ. գովեմ զքեզ Թագա-
ւոր իմ, և փառաւորեմ զնախայաւիտեան
բանդ՝ զծնեալդ 'ի մարիամայ ա̄ծածնէն. զի
յագեցուցեր զիս 'ի բարութեանց քոց ո̄պ զմա-
նուկ մայրենի կաթամբ ։ Եւ արդ արժանի
արա զիս տ̄ր և զժողով եղբարց իմոց ս̄ց կա-
տարել շնորհօք քո և յուսով. և ո̄պ միացեալ
դասք հոգւով ը̄ն իրերաց՝ միասցուք և ոսկե-
րօք ։ Եւ կարօտելոցս օգնականութ̄ն քում
և աղաչողացս զքեզ մեօք՝ լո՛ւր տ̄ր վաղվա-
ղակի յա̄մ պէտս և 'ի կարիս. եթէ յաղքա-
տութ̄ն ոք իցէ, և եթէ յայրիութ̄ն, և յոր-
բութ̄ն. եթէ 'ի պանդխտութ̄ն, և եթէ 'ի
հիւանդութ̄ն հոգւոյ և մարմնոյ. եթէ 'ի
գերութ̄ն և 'ի թշուառութ̄ն, և եթէ 'ի դատն

ծառայութեան. եթէ՝ ի մարդկան և եթէ յանասնոց ցաւս ապականարարս. եթէ՝ ի ծաղու որք նաւակոծեալ իցէ, և եթէ յինչ և իցէ արկածս ըմբռնեալ, դու Տէր Թագաւոր՝ մերով պաղատանօք լուիցես նմա. զի ծանիցեն ամենայն բնակիչք երկրի, եթէ յոյժ սիրեցեր զմեզ, և լուար մեզ: Եւ ջուրս այս եղիցին 'ի փառաւորութիւն ամենայն ցաւոց. քանզի զոյգ ընդ հրամանի քում 'ի վեր յորդեաց, և հինն աքանչելիք վերստին ցուցաւ 'ի փառս հօր և որդւոյ և հոգւոյդ սրբոյ, և 'ի յիշատակ վկայիցդ քոց քառասուն և հնգից:

'Ի նմին պահու զբաղեալ էին դահիճքն 'ի բորբոքել զհուրն ըստ նմանութեան հնոցին բաբելոնի, և 'ի բառնալ տանել զվկայսն՝ արկանել 'ի հուր անդր. այլ իբրև հաշիւ առնէին համարոյ նոցա, միով պակաս գտանէին զթիւ նոցա. զի զԽոխանաս մոռացան, որ փոքր մի 'ի բացեայ էր անկեալ: Իսկ սուրբն Խոխանաս ձայնեաց մեծաբարբառ, և ասէ. Ձեզ ասեմ, ձեզ ասեմ, ահա եմ ես, ահա եմ: Յայնժամ ընթացեալ բարձին և զնա, և տարան 'ի խարոյկ անդր այլովքն հանդերձ: Իսկ սուրբքն յորժամ մտանէին 'ի հուրն, որք միանգամ կենդանի մնացեալ էին, ասացին համաշունչ. 'Ի ձեռս քո Տէր աւանդեմք զհոգիս մեր. և օրհնեալ Տէր, որ ոչ ետ զմեզ յորս ատամանց նոցա. և այնպէս սաղմոսելով արկան 'ի մէջ հրոյն, և օրհնելով զԱստուած՝ կատարեցան 'ի Քրիստոս քաջ և յաղթօղ նահատակքն Քրիստոսի՝ 'ի քաղաքն յաղթութեան 'ի Նիկոպոլիս քաղաքին հայոց, յամի

ամն

Ամն Երր. 319. 'ի յուլիսի. Ժ.

Եւ 'ի նմին իսկ աւուր կատարմանն նշ̃ հրա-մանն Եւտ լիւսիաս դուքսն ժողովել զոսկերս նշ̃, և արկանել 'ի գետն դայլ կոչեցեալ ( որ և յունական ձայնիւ լիգօս ասի ), վեց մղո-նաւ հեռի 'ի քաղաքէն, և ոչ կարի հեռի 'ի սեբաստիոյ: Իբրև ածին կուտեցին զպատ-ուական ոսկերս սրբ̃ց յափն գետոյն լցեալ 'ի պարկս, խնդրէին տեղի յարմար առ իսպառ հետախաղաղ ծածկելոյ սրբ̃ նշխարս. և քանզի խոր յորձանուտ էր առ կամրջաւ, անդ դատարկեցին զպարկս:

Այլ 'ի խնամոցն այ̃ անկորուստ պահեաց գետն զպատուական զայն նշխարս՝ 'ի մի վայր կուտակեալ զնմ̃ն. և 'ի մեկնիլ դահճացն 'ի տեղւոջէն, եկին արք երկիւղածք և ծա-ռայք այ̃ նմանօղք առաքինութե̃ նոցին, բե-րեալ զՏ̃ իւրեանս և արս հմուտս լուղորդու-թե̃. և այնպէս 'ի վեր հանեին ամբողջ զամ̃ ոսկերս. մինչև ընուլ գրոյն, թէ պահէ տէր զամ̃ ոսկերս նշ̃: Եւ բերեալ զնս̃ 'ի քաղաքն՝ պահեցին 'ի թաքստի. և յետ ոչ բազմաց եդին զնս̃ պատուով 'ի վկայարանի, զոր շի-նեցին յանուն սրբ̃ց. խ̃. վկայից. քանզի եղև խոր խաղաղութի̃ 'ի մարդասիրութենէն քի̃՝ 'ի զօրանալ անդ միահեծան ինքնակա-լութե̃ բարեպաշտ արքային կոստանդիանո-սի: Եւ եղեն երանելի վկայքս աշտարակք հաւատոյ անկործանելի, և աստեղք բանա-ւորք լուսաճառագօղք հաւատացելոց, ծաղիկք եկեղեցեաց, և վերակացուք քաղաքի իւ-

րեանց և համօրէն Ծի, բարերարք առ ամե-
նեսեան՝ որ կարդան զանուն նց 'ի քն յն 'ի
տր մեր ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ։

(1) Մերքան գովութիւ յիշատակեն զփառաւորեալ վկայքս՝ հանդերձ համառօտ պատմութ նոցին՝ յայսմաւուրք և ժամագիրքն ։ և լա. 'ի յուլիսի ։ 10 ։ արքայս և հին օրինակք ինչ Հ. է որ իջլի 'ի նմին աւուր գնեն ։ և այլ օրինակք 'ի յուլ. 9 ։ իսկ նոր օրինակք է ապ. 'ի 12 ։ յուլ ։ Սոյն են ձեռագրաց առի 'ի վերնագրի ։ * խնամարտիրոսաց, որ 'ի Նիկիոյպօլիս կատարեցան ||։ կմ են այլոց ։ * 'ի Նիկոպօլիս հայոց ||։ Եւ զի Նիկոպօլիսն Թարգմանի յաղթաքաղաք կմ քաղաք յաղթութե, որով անուամբ գտանին և այլ քաղաքք յայլ Ծս, առ այս ասէ ակնեսոս բոլլանդեան աստանօր ։ * Նիկոպօլիս հայոց (կմ
„ հայաստանեայց ) յայլոց բազմաց համանուն քաղաքաց
„ որոշել յաւելուածով անուան Ծին, այն՝ որ շինեցաւ
„ 'ի մեծէն պոմպէոսէ վն անդանօր յաղթելոյն միհրդա-
„ տայ, ըստ պատմելոյ գիոնի կասսիոսի 'ի լէ գիրս
„ պատմ. հա. եղև ասպարէզ շահատակութե քաջանուն
„ խն վկայից, անվանելի ամրութե նց վկայ. և առա-
„ քան, և համբերութեամբ փառաց ։ քաղաք արդարև նշա-
„ նաւոր այսպիսի երեւելի յաղթանակաւ ։ ողջ և մեծահռ-
„ չակ քաղաքութե արժանի, զի 'ի ժամանակս վաղեմի
„ կայսեր անդրդուելի մնաց յերեսաց մրրկածին ծփա-
„ նացն արիանոսաց ։ ողջ լինել նշանակէ սէն բարսեղ 'ի
„ յաւելուածս Թղթոց, ըստ նշանակելոյ բարոնիոսի 'ի
„ ծանօթութիւս առաջիկայ աւուրս ||։

Շնորհ ունիմք ակնեսոսի՝ ոչ միայն վն այսպէս դրուատելոյ զքաղաք հայոց, և զվկայքս՝ զորս և ինքն ծանաչէ հայազգիս լինել և 'ի դենգէ հայոց, այլ տաւանել և վն տպագրելոյ զյունարէն հին օրինակ վկայաբանութե նց զգտեալն 'ի գրատան վատիկանու ։ ձափէան ։ 866 ։ էջէս ։ 340 ։ զոր և ինքն Թարգմանէ 'ի լատին, հանդերձ քանի մի առօլիւք ծանօթութեց ։ Այլ ոչ գիտեմք, եթէ նոքին են վկայքն զոն ինքն զանազանակ աշխատութե նորին

այն

# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Եւփիմեայ կուսին, և որոց ընդ նմա․ խթ, կամ ծն̃ վկայից ։

Հ․ սեպտ․ 15 ։ Տե̃ Էէլ․ սեպտ․ 16 ։ Յ․ ժամագր․ սեպտ․ 16․ և Բասիլ․ յուլ․ 11 ։ Լ․ սեպտ․ 16 ։ Պատրիար․ Ա․ ․ նճղ=նճե ։ Մեւտիր․ ատարիատ․ հար․ Է․ եր․ 280=285 ։ (1)

ԲԱՐԵՀԱՄԲԱՒՆ ԵՒ մեծահռչակն ըստ անուան իւրոյ՝ երջանիկն 'ի վկայուհիս տէր կոյսն Եւփիմիա (որ և Եւփիմէ, կամ Եփիմիա,) էր 'ի քաղկեդոն քաղաքէ՝ որ հանդէպ բիւզանդիոյ յասիակողման (ուստ կորէն՝ գաւառ քեօյ կոչեցեալ), յաւուրս հալածանաց դիոկղետիանոսի կռապաշտ արքային, դուստր քրիստոնեայ ծնողաց․ Հայր նորա կոչէր փիլոփրոնն՝ մի 'ի պատուաւորաց սինկղիտոսացն, և մայր նր̃ Թէոդոսիանէ (ըստ այլոց՝ Թէոդորոսիա, կամ Թէոդորա,) կին բարեպաշտ, որ բազում ողորմութիւնս առնէր 'ի ժողովրդեանն՝ ակն ունելով վարձուց երկնաւոր հատուցմանցն ։

Եւ եղև՝ զի հրամանաւ դիոկղետիանոսի եկն 'ի քաղաքն քաղկեդոնացւոց՝ պրիսկոս անուն

ոմն

ամն անթիւպատոս , այս է փոխանակ բդեշխի՝ ասիացւոց ․ զի զորս միանգամ գտցէ անդ ՚ի քրիստոնէից , չարաչար տանջանօք բարձցէ ՚ի միջոյ ․ քանզի և բազմուն յոյժ հաւատացելոց էր ՚ի քաղաքին յայնմիկ՝ բնակ , և եկ ժողովեալ յայլոց տեղեաց յերկրաց հալածանաց , առաւել ՚ի Նիկոմիդեայ՝ ուր էր հրդեհն հալածանաց ։ Սա եգիտ իշխանն պրիսկոս զոմն իւր բարեկամ՝ ՚ի հեթանոսաց բնակելոց ՚ի քաղկեդոն , որում անուն էր ապեղզիանոս՝ այր ժանտաբարոյ և ապարասան յոյժ , արուեստիւ սոփեստէս՝ որ է իմաստակ ճարտարաբան , և գլխաւոր ՚ի պաշտօնէայս կռոց իւր քուրմ արեսի չաստուածոյն ։

Սա անձամբ զանձն յառաջ մատուցեալ՝ ըղձըգուել սկսաւ զիշխանն պրիսկոս հակառակ քրիստոնէից ․ ասէ ․ յուշ լիցի քոյդ բարեյաջորդ իշխանութեանդ ով անթիհիւպատէ , զի մերձեալ են աւուրք տարեւոր ուրախութեան և զոհից մեծին արեսի ՚ի հոյակապ մեհենի նորա՝ որ ՚ի քաղաքիս ․ վասն որոյ և ամենեցուն մեզ պարտ է ըստ հրամանաց ինքնակալացն աւանդութեանց զոհ մատուցանել աստուածոցն , մանաւանդ մեծի աստուծոյն արեսի ։

Հաճոյ թուեցաւ բանս այս անթիւպատոսին՝ առ ՚ի կործանել սովին առթիւ զէթ զթուլամիտս ՚ի բարձրութէ հաւատոցն ․ Նմին իրի և տախտակ գրեալ՝ հրամայեր դնել ՚ի Նշանաւոր տեղւոջ ՚ի քաղաքամիջի անդ ․ և էր պատճէն բանիցն այսպիսի օրինակաւ ․ Արք սիրելիք՝ բնակիչք քաղաքիդ քաղկեդո-

նացուցն , գիտութի լիցի ձեզ ամենեցուն , զի ոչ զհրամանն ինքնակալ թագաւորաց մերոց բողոքեմք ձեզ ամենեցուն զայս ինչ . որպէս զի մաքրելով զանձինս ձեր աւուրս ութ՝ պատրաստ լինիջիք զոհս մատուցանել մեծի լծոյն արեսի . ապա եթէ գտցի ոք անհաւան մերոց օրինաց և առ այլ ինչ կրօնս փոխիցի , չարաչար պատուհասեն զայնպիսիսն՝ կորուցուք : Այս է նշանակ հրաւիրակի կոչմանն այսպիսի օրինակաւ . զի յորում ժամու փողն հնչէ , ամենեքեան միանգամայն համագումար 'ի տաճար լծոյն արեսի ժողովեսջիք յաժարութ. զոհ մատուցանել , և հաշտեցուցանել զանմահ դիսն :

'Ի լինել այսր հրամանի՝ անօրէնն ապերախանաս հանապազ հոգ 'ի մտի եդեալ հետամուտ լինէր քննել և գտանել յիւրաքանչիւր աւուր և 'ի ժամու , զի մարթասցի գտանել զոմանս անհաւանեալ աւանդութե թագաւորացն , և ոչ շուն զօղանջելով յարձակէր 'ի վր նց : Արդ 'ի հասանել կիտին եդելոյ գոչէր փողն ձայն ողբերգական 'ի լուր հաւատացելոց , և ձայն խնդութե կարծեցեալ մոլորելոցն զհետ սնոտի յուսոյ , հրաւիրելով զամ բնակիչս քաղաքին 'ի զոհ արեսի : Յայնժամ վայրի զօղեալ էին հաւատացեալքն 'ի թաքուն վայրս , ոչ և ոմանք ելեալ էին զանխուլ արտաքոյ քան զքաղաքն և ցրուեալ : Այլ խումբ մի 'ի նոցանէ կային 'ի փոքրիկ տնակ փակեալ և թաքուցեալ , հանապազորդելով յաղօթս և 'ի ժուժկալութի . Ը նոսա էր և Պե կոյսն եւ-

փի

փիմեա 'ի մշտամռութիւնս պաղատանս և 'ի հեծութիւնս առ ա՟ծ :

Իբրև իմացաւ զայն աւետաբերանս գործունեայ չարին , ասէ ցիշխանսն արքայս . անթիւպատէ՝ են արք ոմանք 'ի տանս սրբոյս թագուցեալք , որք ոչ հրամանաց թագաւորացն , և ոչ հրամանի քում կամին անսալ . և եթէ ներես դու իրացդ , բազումք 'ի բաց կան անուհետև 'ի զոհելոյ աստուծոցն , և յարին 'ի նոսա . և ընծայք և պաշտամունք մեր արհամարհանօք անարգելին : Զայս լուեալ անթիւպատոսին 'ի բանսարկուէ անտի՝ հրամայեաց երթալ ածել զօրականաց առաջի իւր զամ քրիստոնեայս , որ 'ի տանն անդ , զարս և զկանանայս : Եւ իբրև բերին զնոսա յատեանն իշխանին՝ ոգիս իբրև յիսուն , էր 'ի մէջ երանելեացն կոյսն եւփիմեա առաւել քան զամենեսին ուրախալից դիմօք և պարկեշտ վայելչութեամբ զարդարեալ :

Այսպէս խօսել սկսաւ անթիւպատոսն , և ասէ ցնոսա . յոյժ զարմացեալ եմ ՚ը իւրաքանչիւր ոք 'ի ձէնջ՝ տեսանելով զյօժարութիւն ընթացից ձերոց յայս հանդէս , և զգեղեցկութիւն հասակի մարմնոց ձերոց . վասն որոյ խրատ տամ հպատակ լինել հրամանաց կայսերականացն , և վայելել 'ի զոհս աստուծոցն . և ես ծանուցից զայս թագաւորին , և տացէ ձեզ պարգևս և պատիւս մեծամեծս . մինչև հասանել ամենայն և երևելի իշխանութեան , և այլոց գրիլ 'ի կարգս արքունի ազատաց :

Զայսպիսի լուեալ բազմութեան վկայիցն՝ միաբան

բան ծիծաղեցան ընդ տղայական բանսն. և եթէ զոյր 'ի նոսա որք տխուր դիմօք, ա-հաստարակ փոփոխեալ 'ի զուարթութիւն՝ լի եղեն ծիծաղին ուրախութեամբ. և զորս նախ-մէ 'ի միջի ունելով իւրև զպարս հրեշտա-կաց՝ համարձակութեամբ ետուն պատասխանի, և ա-սեն. Մ՛եք ով անթիպատէ զխնդրեալ եմք մերում թագաւորին քոյ, և զուն զոր-ծեմք՝ մինչև ցվախճան հաստատուն կալ 'ի հաւատս, զոր աւանդեաց մեզ. զի հանդի-պեսցուք անսուտ խոստմանցն նորին, որ ասէ. ծառայ բարի և հաւատարիմ, որ 'ի սակա-ւուդ հաւատարիմ եղեր, 'ի վերայ բազմաց կա-ցուցից զքեզ: Եւ դու անթիպատէ ոչ ես անտեղեակ, եթէ իւրաքանչիւր որք յայնցա-նէ՝ յորոց 'ի ձեռս հաւատան զիշխանութիւն ինչ, փոյթ տանին հաւատարիմ լինել առ պարգևատուն, զի եւս մեծագունի հանդի-պեսցին պատուոյ. արդ՝ եթէ առ ապակա-նացուս և յառժամեայս այս պահի, որչափ եւս առաւել մեզ արժան է փութալ ժառան-գել զկատարեալ զանապական և զմշտնջե-նաւոր փառսն: Արդ՝ զոր ինչ առնելոց ես՝ արա՛ վաղվաղակի. զի մեք պատրաստ եմք առ-նուլ տեսակ տանջանաց քոց մինչև ցմահ: Ընդ այս դժուարեալ դատաւորին, զի չու-նէր այլ ինչ լսել զայնպիսի պատասխանի համարձակ 'ի նոցին, 'ի միւս կողմն դարձոյց զերեսս իւր 'ի նոցանէ. և հրամայեաց դահճաց տանջել զնա չարաչար տանջանօք, որպէս և գիտեն. և ապա տանել արկանել 'ի բանտ: Իսկ նքա 'ի

՚ի տանջանսն գոհանայսին զնոյ , եւ քաջալե-
րէին զմիմեանս՝ առաւել զկրտսերագոյնս ,
հաստատելով ՚ի համբերութիւն նահատակու-
թեան . եւ առաւել եւս յորդորէին զերանելի
կոյսն Եւփիմիա ՚ի խոստացեալ բարութիւնս
քնի , հայելով ՚ի ծաղկահասակ տիս նորա ,
զի մի՛ արդեօք լքանիցի ինչ տկար բնութիւն :
Սալնա եւս քան զեւս ուրախ լինէր եւ ցնծայր
հոգւով քան զամենեսին՝ իբրեւ յաղնիւ՛ ընթ-
րիս հրաւիրեալ . եւ իմաստութեամբ լցեալ
յայտ առնէր նահատակակցաց իւրոց , եթէ
յօժար է ինքն իսկ լինել նախագրաւ ՚ի հան-
դէսն՝ մտանել յառաջագոյն լուսոյ անմահ
փեսային : Սոյն եղեւ յետ տանջելոյ զվկայսն
ազգի ազգի հարուածովք գանից եւ խոշտան-
գանաց՝ եդին զնոս ՚ի բանտի . ուր կացին մնա-
ցին ՚ի մեծ նեղութեան զաւուրս իննեւտասն՝
առաւել անսասանութեամբ , կերակրեալք
՚ի շնորհաց հոգւոյն սրբոյ , սփոփելով ընկեր
զընկեր մխիթարութեամբ տն՝ աղօթիւք հան-
դերձ :

Ապա յաւուրն քսաներորդի խորհուրդ արա-
րեալ Պրիսկոսի անթիպատի ը չարախոհին
Ապեղիանոսի՝ հրամայեաց անզգամն ՚ի հարց-
եւ ՚ի փորձ դատաստանի զնոսին կացուցանել .
եւ ել նստաւ իշխանն Պրիսկոս ՚ի վր բարձր
բեմբի . եւ երանելի վկայքն տն ածեալ լի-
նէին առաջի նր՝ ձեռս յետս կապեալք . եւ
պարանոցք նց պարաւանդեալ շղթայիւք .
Ը որս եւ սբն Եւփիմիա կոյս իբրեւ ՚ի զարդ-
հոգեւոր հարսանեաց զարդնեալ կապանօք եւ

շղթ-

շղթայիւք, որ փայլէր 'ի մէջ ս͞րցն ոչ ջահ լուսաւոր, և իբրև լուսին պայծառ 'ի մէջ աստեղաց:

Հարցանէր զնա անթիպատոսն, առաւել զկրտսերագոյնս 'ի նոցանէ, և ասէր. ասացէք ինձ ով պատանիք, որք զփորձ առիք ըղտանջանաց, թէ արդեօք դարձա՞յք 'ի յամառութէ ձերմէ՝ առ 'ի զոհս մատուցանել մեծի դ͞ցն արեսի, եթէ տակաւին 'ի նոյն միտս պնդեալ կայք: Սոքա եռուն պնենի միաբարբառ ի͞բ մի բերան՝ համարձակ նահատակազգեաց եւփիմեաւ, և ասեն. ով անթիպատէ մինչև ցե՞րբ յամառեալ կաս 'ի մոլորութեան, և ոչ ճանաչես զզօրութիւն ա͞յն մերոյ՝ որ արար զերկինս և զերկիր. մի՛ ձկտիր յանհնարինս, և մի՛ կարծեր փոխել զմեզ 'ի հաստատութէ մտաց մերոց՝ որ 'ի ք͞ս յ͞ս:

Յայնժամ պրիսկոս ասէ ցսպասաւորսն. հարէ՛ք զդոսա միաւանգամ չարաչար կոփանօք, և կարծր աղջառաճիլօք բախեցէ՛ք զերեսս ն͞ց. և առացէք հաւանել հրամանաց ինքնակալին, և զոհել ա͞ծոցն: Իսկ պաշտօնեայք բռնաւորին վաղվաղակի ածէին ըստ բանի ն͞ր. այլ 'ի կոփելն ն͞ց և 'ի հարկանելն զերեսս ս͞րցն՝ պայծառանային յոյժ դէմք երանելեացն. և արքանեակք չարին թուլացեալք և ակարացեալք 'ի տանջելն՝ նուաղէին, և իբրև մեռեալք յերկիր անկանէին: Իսկ սպեղիանոս՝ որ զսպառազինութիւն չարին զգեցեալ էր, կամելով ահ արկանել ս͞րցն՝ ասէ ցանթիպատոսն. պատուհաս եդել

դեալ 'ի վՀ սոցա՝ առաքեցուք առ Թագաւորն 'ի Նիկոմիդիա . և առ օրին սատակեսցէ զդոսա սրով և հրով . և հանձոյ թուեցաւ բանս այս անթիպատոսին և որոց ընդ նմա . այլ իշխանին եդեալ 'ի մտի յինքն կոչել զչքնաղն եւփիմիա՝ հրաման ետ 'ի վերին երեսս արկանել զամենեսին 'ի բանտ 'ի դղեակ բերդին , մինչև առաքեսցէ զնս առ Թագաւորն . որք էին թուով քառասուն և ինն , և հանդերձ սա կուսիւքն յիսուն ։

Եւ իբրև տեսանէին զնս յատեանն անտի , ընդհետ ընթացաւ ինքնին անթիպատոսն , և բուռն հարեալ զաղախնոյն քնի իբրև առաջակին ոմն դայլ յափշտակող՝ կամէր որոշել զնա 'ի գնդէ վկայիցն քնի , կարծեցեալ որսալ զնա որոգայնօք , և առնել որպէս զինքն գործարան չարին . և 'ի մերժել զնա կուսին՝ ետ դահճաց բռնութբ դարձուցանել զնա , և բերել յապարանս ։ Իսկ քնասէրն այն ոչ վկայուհին զաչս յերկինս համբարձեալ՝ ասէր . օգնեա ինձ քն որդի այ՝ մշտնջենաւորի հօր էակից , որ արարեր զերկինս և զերկիր և որ 'ի նս արարածք են . զի յոյս տուեալ իմ . մի՛ շիջցի ջահ կուսութեն իմոյ , և մի կորիցեն հաւատք յուսոյ իմոյ՝ որ 'ի քեզ . զոր անարատ պահեցի 'ի մանկութէ իմմէ ։

Եւ իշխանին լուեալ զայսոսիկ , և ոչ իշխէր հրապուրել զնա 'ի պղծութիւն կարծեցուցանէր յանդիմանն այլոց , ոչ թէ հնարի որսալ զնա 'ի ձեռս իւր . վն որոյ առէ ցկոյսն , պատ-

պատուհեալ զանձն քո, և մի՛ խնդրեր որպէս
զայլսն զմահ անձինդ. և զոր պատշաճ է
քեզ ա̅ծ ազդել զպատիւն՝ մի՛ կորուսաներ.
քանզի լուայ՝ եթէ 'ի պատուհականաց ան-
տի ես 'ի ծնողաց. զի թէպէտև անզգիտա-
ցար մինչև ցարդ, և խաւարեցար իբրև զկին,
յայսմհետէ զզջացեալ զոհեալ ա̅ծոցն:

Իսկ աղախինն քո̅ի ասէ ցնա. մեք ո՛չ տկա-
րութ̅ բնութե̅ մարմնոյ պատուհիլ փութամք,
այլ արիական ձգնութ̅ 'ի նահատակութե̅ս
ջանամք ընտիր և քաջ երևիլ. վ̅ս ո՛չ անզգի-
տութ̅ ինչ պատուիմ, այլ իբրև զիմաստուն
և զքաջ ախոյեան պատրաստ կամ առաջի
քո 'ի հանդէս հոգևորական մարտի՝ զօրու-
թ̅ ա̅ծն իմոյ. զի նովաւ յաղթեցից քեզ և
հօր քում սատանայի. և հանդիպեցայց ան-
սուտ խոստմանցն նոյ՝ որ առ հարս մեր:

Յայնժամ տեսեալ թանաւորին, եթէ 'ի
կնոջէ և յաղջկանէ յաղթահարեալ եղև,
փոխեաց զսէրն յատելութի̅, և բորբոքեալ
'ի ցասումն սրտմտութե̅՝ հրամայեաց դահ-
ճացն նորահնար գործարանս տանջանարա-
նաց կազմել անուաձև և սրալից, և զսր̅
վկայն 'ի մէջ երկուց անուոցն արկանել.
զի 'ի հոլովելն՝ վաղվաղակի փշրեսցէ ասէ զը-
գլխն: Իսկ երանելին եւփիմիա յորժամ հե-
զուսեալ լինէր 'ի վ̅ր անուոցն, արար յին-
քեան զկնիքն քնի. և աւաղելով զանւա-
ւորն՝ ասէր. ա̅վ ո՛րպէս նստեալ է պղծկոս
թշնամին ճշմարտութե̅ և մշակն անօրէնու-
թե̅՝ հնարաւորել զհրապոյրս չարին, չար-
ժել

ժէր ՚ի բանսարկուէն ընդէմ բարեպաշտացն՝ կարծելով կորուսանել զնս : Այլ մինչդեռ ՚ի տանջանսն էր՝ ասէ ցբռնաւորն . ով թշ-նամի քնի ճշմարտին այ, հաւատամ ինձ, զի ոչ մերձենայ յանդամս մարմնոյ իմոյ զար-ծարանք չարարուեստութեն քո . եւ ոչ զգա-ցի ամենեւին տանջանացս . զի օգնական ու-նիմ զքս, որ յոլով վաստակօք զնահատա-կութեան իմոյ զհամբերութիւն հաստատուն պահէ :

Այլ յաւել նոր զայս՝ պաշտօնեայք բռնաւո-րին շրջէին զանիւն, եւ ումն անդամք սրբոյ վկային քանցեալ մերկանային յոսկերացն ՚ի տաստկ եւ ՚ի չարաչար տանջանացն : Նոյն սրբուհին զուարթութեամբ աղօթս մատուցա-նէր՝ այսպէս ասելով . տ՛ր յս քս՝ որ ապա-ւէնդ ես ամենեցուն, որ կարգան առ քեզ, ընդ ճշմարտութե եւ տրգ ողորմութե . գու-թա՛ ցիս, որ ոչ արհամարհես զայնոսիկ՝ որք ՚ի նեղութե իւրեանց աղաղակեն առ քեզ, եւ ոչ մերձեսցին տանջանք ՚ի յարկս նոյ՝ որք ապաւէն ունին զբարձրեալդ, հայեաց յա-ղախինս քո, եւ ՚ի բաց յափշտակեա զիս ՚ի բարկատեաց բանսարկուին կորստենէ, եւ ՚ի սպառնալեաց անմաքուր եւ քսամարտ պղծա-կոսի :

Այլ ընդ ասել նորա զայսոսիկ, փաղփաղակէ իջեալ յերկնից հրեշտակ՝ եբեկ զգործարան անուոցն, տապալեցոյց զեւփիմէ, եւ զդա-հիճսն եղոյծ ՚ի զօրութէ . մինչդեռ յահէ երկ-նաւոր զուարթնոյն եղեն նոքա պարտա-

սեալք

ուէ՞ք և զուարճացէ՞ք զիմօք : Իսկ երանելի վկային եւ անարատ 'ի մեքենայիցն՝ երևելով առաջի բազմութեան զուարթ և պայծառաքան զառաջինն :

Զայն իբրև ետես անթիպատոսն , ասէ զայլբարդին . երդուեալ իմ 'ի փրկութի̄ն ածոցն և 'ի բախտ ինքնակալին , եթէ ոչ զոհեսցես մեծի այն արեւոյ , հրով վատնեցից զքեզ . զի ծանիցես , թէ ոչ օգնեսցէ քեզ ա̄ծն քո՝ զոր պաշտեսն : Երանուհին ասէ . հրո՞վ սպառնաս ինձ , այն՝ որ առ սակաւ ինչ վառեալ բորբոքի , և վաղվաղակի շիջանի . այլ ո՛չ եմ ես անարժանագոյն այդպէս , զի երկեայց 'ի սպառնալեաց քոց . այլ առ ոտն կոխեցից զդառնութի̄ն անա̄ծից . երդուեալ իմ 'ի ջանս նահատակութե̄ն ընկերաց իմոց բարեպաշտ վկայիցն քր̄ի , որ մինչև 'ի վախճան հաստատուն պահեցից զընթացս հաւատոց իմոց . զի է̄ քաջ նահատակակիցս իմ արժանաւոր դասուց անվախճան ուրախութեանցն , և է̄ նորին վայելեցից յանպատում կեանսն 'ի քն̄ յս̄ :

Զահի հարաւ անթիպատոսն է̄ ըզքանչելի համարձակութի̄ն կուսին . այլ յաղթեալ 'ի զազանութե̄է բարկու̄է , փութապէս հրամայեաց վառել հնոց հրոյ սաստկագին , և արկանել 'ի նա զն̄ա : Իսկ սպասաւորք բռնաւորին կատարէին զհրամայեալսն , մինչև յոյժ բարձրացեալ ցոլանայր բոցն : Իսկ երանելի կուսին կացեալ մերձ 'ի հնոցն զուարթ երեսօք և ժիր մարմնով ասէ . օրհ-

Թ . նեալ

նեամ՝ եւ Տր Այ , որ 'ի բարձունս բնակեալ ես , եւ զխոնարհս տեսանես ․ զոր փառաւորեն հրեշտակք , եւ Այ զօրութիւնք երկնից ․ առ քեզ կարդամ, օգնեա ինձ քով բարերարութբք , եւ կնքեա զանձն իմ զօրութբ Սբ Հոգւոյդ ․ եւ ցոյց չարախորհին եւ քննամեացն պրիսկոսի , եթէ դու ես Այ՝ որ առաքեցեր զհրեշտակն առ երիս մանկունսն 'ի բաբելոնի , եւ շիջուցեր զբոց հնոցին ․ եւ այժմ հայեաց յիս 'ի տառապեալս , եւ առաքեա զօգնութիւն քո , եւ փրկեա զիս 'ի բերանոյ մարդախանձ առիւծուն , եւ 'ի ձեռաց ոգեկորոյս որսողին , եւ 'ի պատրանաց անթիպատոսին ․ զի անուն քո ահաւոր եւ փառաւորեալ է յաւիտեան ։

Յայնժամ հրամայեաց բռնաւորն պաշտօնէից իւրոց գօտի ածել եւփիմեայ Ը մէջն ․ եւ ասէ ․ առէք արկէք զնա 'ի հնոց հրոյն ։ Յայնժամ վայրի երկուք ծմանք 'ի սպասաւորաց անտի տեսիլ տեսեալ ահաւոր շուրջ զկուսիւն՝ 'ի բաց կացին 'ի նմանէ սարսափմամբ ․ եւ ընթացան առ իշխանն՝ ցուցանել նմա , թէ չէ մարթ կատարել զհրամանն ․ քանզի մին 'ի նոցանէ՝ որում անուն էր սոսթենէս , եւ ունէր սուսեր Ը մէջ , եկն եկաց առաջի իշխանին , եւ ասէ ցնա ․ հրամայեա ինձ ով անթիպատէ որովս այսուհետեւ հարկանել զանձն իմ ․ քանզի անհնարին է ինձ մխել զձեռս իմ 'ի սբ վկայուհիդ յայդ ․ զի տեսանեմ դէմ յանդիման առաջի աչաց իմոց զարս պայծառազգեստս , որք սպառ ա-

փափաքանօք խոստովանեցին զա̃ծու̃դ քո ։ Ապա 'ի վաղիւն անդր նստեալ իշխանին արքունոյն յատեանն՝ հրամայեաց նախ ածել զառաջեաւ զնոր վկայսն զոսեթենէս և զաեկտոր ․ և հարցանէր ցնա , զի՞ գործեցիք՝ զի չկամեցայք անսալ հրամանաց իմոց ․ մի՞ արդեօք և դուք երկուճացայք 'ի գենէս , և կ̃մ թէ մոլորեցայք զլխովին զհետ տխմարացն այնոցիկ՝ որ 'ի կապանս են ․ և արդ զոհեցէք ա̃ծոցն , զի գիտասցիք զսերտ հաւատարմութի̃ ձեր 'ի պաշտօն դիցն և 'ի ծառայութի̃ մեր ։ Նոքա ետուն պ̃նի , և ասեն ․ ով անթիպատէ արդարև մոլորեալ էաք պատրանօք խաւարասէր թշնամւոյն՝ զոր դու պաշտես , և կորուսեալ էաք 'ի վիհս անօրէնութեան դժոխային գործոց , կապեալք 'ի մնոտի կենցաղս ը̃ն ձերով ծառայութե̃ , և անոտի յուսով հեռացեալք 'ի յուսոյն յաւիտենից ․ այլ այժմ հաւատացեալ եմք յա̃ծ Ճշմարիտ , և հրաւիրեալ 'ի լոյս ա̃ծգիտութե̃ 'ի ձեռն նահատակացդ ս̃յ կուսին Եւփիմեայ ․ վ̃յ քաւ մեզ այսուհետև զոհել դից գարշելեաց , կ̃մ անսալ ա̃ծը̃դէմ հրամանաց քոց ։

Յայնժամ ցասուցեալ բռնաւորին՝ ետ հանել զնա 'ի գազանամարտ , զի գիշատեսցին 'ի գազանաց ․ և նոքա ուրախութե̃ յանձն առին զայն դժնդակ պատուհաս , զի փութով հասցեն երանելի կենաց գեղեցիկ նահատակութե̃ ։ Արդ յորժամ արձակեցին զգազանս սովեալս 'ի վ̃ն վկայիցն , նոքա սկսան

կալ

կարդաց առ տծ , եւ ասէ . գոհանամք զքեզ տր , զի արժանի արարեր զմեզ մատնիլ վս անուան քո սրբոյ 'ի ժանիս երեւելի գազանաց , զի զերծեալ լիցուք 'ի ժանեաց անօրինաց եւ աներեւոյթ ոսոխին . եւ արդ աղաչեմք զքեզ տր , տուր մեզ կատարել զընթացս մեր յայսմ ասպարիզի , եւ փրկեա զանձինս մեր 'ի հաղբից մարդասպանին . եւ տուր մեզ խաղաղութիւն գալ առ քեզ ։ Իսկ առժամայն ձայն եղեւ յերկնից . լուեալ զաղաչանս ձեր , եւ արարից զամ խնդրուածս ձեր ։

Յայնժամ վայրի եկեալ գազանաց՝ մեղմով խածանէին զնահատակսն , եւ ծծեալ զարիւնս նոցա՝ 'ի բաց գնային 'ի նոցանէ , թողեալ անվնաս զմարմինս նց . մինչեւ զարմանալ ամենեցուն՝ որոց կային 'ի տեսարանի , ըստ նոցա գործն . իսկ սրբցն յանձն արարեալ տն զանձինս՝ աւանդեցին զհոգիս իւրեանց ։ Իսկ տեսեալ անթիպատոսին զվախճանել սրբցն՝ յարեաւ եւ գնաց յապարանս իւր . իսկ զմարմինս սրբց բարձին արք երկիւղածք լռելեայն , եւ պատեալ սբ պատուականօք եւ օծեալ իւղովք անուշիւք՝ ամփոփեցին 'ի գերեզմանի ։

Դարձեալ 'ի վաղիւն ըստ այգանալ առաւօտուն եկն նստաւ անթիպատոսն յատեանն , եւ հրամայեաց բերել զառաջեաւ զեւփիմիա՝ տեսանել , թէ յոր խորհուրդս կայցէ ։ Իսկ իբրեւ գայր սբ կոյսն , քաղցր բարբառով նուագէր , եւ ասէր . երգեմ քեզ տր օրհնութի 'ի ճանապարհիս յայսմիկ . փառա-

ւորեմ զքեզ ա՛մ զօրութ՛ իմով . զքեզ ամեն միշտ օրհնեմ, և 'ի ձայն սաղմոսաց՝ բարձր աղաղակեմ՝ գովելով և փառաւորելով զանուն ս՛բ քո :

Նորև եւս զնա անթիւպատուան , ասէ . մինչև ցե՞րբ ոչ խնայես 'ի քեզ, և կորուսանես զանձն քո . Եկ առաջ բանից իմոց , և հաւանեցո՛ զմիտս քո զոհել ա՛ծոյն , զի հաշտեսցի՛ն ընդ քեզ , և բարի արասցեն քեզ . աղաւր ինձ , և խորհրդակից եղեց քեզ . դարձի՛ր 'ի միտս զգաստս , զի կենդանի մնայցես , և տիկնաց տիկին կոչեսցիս : Այսուժամ ծիծաղեցաւ սրբուհին , և 'ի կշտամբանս հրապուրանաց նորա ասէ . հաստատեալ եմ 'ի զգաստ միտս՝ զոր ունիմ 'ի ք՛ս . արդ թէ ոչ զի՞նչ խոնհմութիւն այլ , որպէս թողուլ զա՛ծ կենդանի , և քարանց և փայտից զոհել . մի թէ համարիցի՞ս , եթէ անմիտ և կորստական խորատուքս լսելով խելից և հմերց գիտնայլ պատկերաց զոհեցից , մի՛ մոլորեալ դու և 'ի բաց անկեալք 'ի ճշմարտութե՛ն ք՛ի , և ընկեալք ընդ որոգայթաւ դևին օձին . ընկերդ ատարատարասքին և ժառանգորդք անշէջ հրոյն . որ փութաս զքաղաքացուցանելոյ գս ճշմարտութե՛՝ առ ձեզ ձգել . սակայն ես ոչ հաւանեցայց մտաւ հրապուրանաց քոց , և ոչ երբէ զողաց խաբեցայց պատիր բանիւք քովք . այլ առ ոչինչ դրեցից զսպառնալիս քո և զգզուքանս . զի ունիմ զգեցեալ զսպառազինութի՛ հաւատոյն ք՛ի , որ անխափան զօրացուցանէ զիս :

Այսն

Յայնժամ հրամայեաց անթիւպատառն 'ի ծա_
ռայս գործակալաց իւրոց՝ մեքենաւոր գործա_
րան տանջանաց կազմել սմին , և հոլովելով
քերել 'ի թէատրոնն . և յեղակարծուց արկա_
նել զեւփիմիա 'ի թակարդ մեքենայիցն . զի
այնպէս ընկղմեալ էր նմանութեամբ վայրենի
վարագաց՝ մռռանիցի անդխոտանալով ։ Իս_
կարև կազմեցին զորոգայթ տանջանացն ,
եկն 'ի տեղւոջն ոչ վկայուհին պայծառ դի_
մօք , և համարձակ շրջէր անվնասելի ։ Իսկ
յորժամ գահիճքն կամեցին քարշել զկոյսն ,
և ձգել 'ի տեղւոջն՝ ուր լարեալ էր որոգայթ
տանջանարանաց , յափշտակեալ եղև նա 'ի
ձեռն հրեշտակաց , և եանց խաղաղութեամբ է
մեքենայսն . յորս անկեալ դահճացն՝ սա_
տակեցան ։ (2)

Յայնժամ վայրի բացեալ զբերան իւր երանե_
լին եւփիմիա՝ սկսաւ աղօթել , և ասել . Տէր
Տծ՝ որ առաքեցեր զմիածին որդիդ քո յերկ_
նից . որ եկն և մարմնացաւ 'ի սբ կուսէն մա_
րիամայ . և չարչարանօք խաչի իւրոյ եղոյծ
զերկուսեան մահու , և ընթադրեալ կոխեաց
զզօրութիւն բանսարկուին , և քակեաց ընդ_
խաչափայտին , և եբաց զդրունս երկնից .
Տէր՝ որ մերձ կացեր երկոցունց երանելի զնա_
ւնորաց այնոցիկ , որ վն անուան քո հեղին
զարիւնս իւրեանց , և հերքեցին զընդդիմա_
մարտ գազանս . որ հաստատեցեր 'ի ձեռն
սբց նահատակաց զհիմունս հաւատոյ . որ
միշտ օգնական եղեր ինձ յամ մրցմունս տան_
ջանաց . փրկեա՛ և այժմ զանձն իմ աղօթիւք

 սբցն

սգոցն այնոցիկ՝ որ 'ի բանտին են մշտ. անսուտ
խոստմանցն, զոր ակն ոչ ետես և ունկն ոչ
լուաւ. և ապահեա զաղախին քո. զի դու միայն
ես, որ փրկես և ապրեցուցանես զյուսա-
ցեալսն 'ի քեզ։

Այլ տեսեալ անթիպատոսին՝ թէ ոչինչ վնա-
սեցաւ կոյսն 'ի մեքենայիցն, սկսաւ լկնիլ
անզգրէն, և ողոքանօք խօսել ընդ նմա. ասէ.
Ամենայն իրօք իմաստուն գոլով քո, և ազգաւ ազ-
նուական և առաջին, զարմացեալ եմ յոյժ,
եթէ վասն է՞ր 'ի բանս եղեալ մոլորեցուցչաց՝
պատրեցար, և կորուսեր զամենայն ինչ քո. և տա-
կաւին կաս 'ի նմին յամառութեան՝ ոչ առնե-
լով զհաճոյս ինքնակալին. սակայն և այժմ
իբր զիմաստուն և զպարկեշտագեղ կին լուր
ինձ, և իբր հօր քում համարեա՛ և ներեա՛
զառ 'ի յինէն եղեալսն առ քեզ անարգանս
տանջանաց. և զոհեա՛ անմահ դիցն, զի մի՛
լիցիս 'ի նախատինս ազգին քո։

Իսկ սրբ. վկայն քրիստոսասէր մտօք զինեալ՝ յան-
դիմանեաց զանթիպատոսն, և ասէ. Ո՛վ նեն-
գաւոր թշնամի արդարութեան, որ աղուէսա-
բարոյ հնարիւք կամիս որսալ զիս. ո՛վ գժնէ-
համ բանիւքդ՝ որ քան զլեղի դառնագոյն, և
ք̄ զմոլախինդ սատակիչ. ո՛չ այնչափ անըզ-
գայ եմ, եթէ թողեալ զգանձն անապական
կենդանութեան՝ և երկիր պագանիցեմ բանսար-
կուին խաբէութեան։ Արդ մի՛ խաբիր անթի-
պատէ, եթէ հաւանեցուցես զիս բանիւք՝
զոհել անմաքուր դիւացն, և կործս անուա-
նել զնն. և զիա՞րդ անամօթեալ՝ միշտ կեն-
դան

դառնութեան նման առնես զոչ երբէք կենդա-
նացեալսն , և նոցա զոհս կատարել թելա-
դրես ։ Որդ՝ քաւ լիցի ինձ հաւանել անհամ
և կորստական բանից քոց . մեյ փութամ և
արամ վաղվաղակի՝ զոր ինչ և կամիս . քանզի
ես փութամ ձեռպիմ չարչարանօքդ որ ՚ի քէն՝
մտանել ՚ի յաւիտենական երկնային ժա-
ռանգութիւն , ուր է հայրն ամենեցուն և
հանդիսադիրն ած , որ պսակէ զամ ոքս իւր ,
և որդին միածին , և հոգին սբ պարգևա-
բաշխն նմ բարութե ։

Նյնուհետև իսպառ սրտմտեալ իշխանն՝
հրամայեաց չարաչար ձաղկել զնա արջա-
ռաջլօք . իսկ սրբուհին եւփիմէ ՚ի հարկանիլ
իւրում ասէր ցբռնաւորն . ոչ հալին յիս տան-
ջանքդ քո . լուծեալ ես և օտարացեալ ՚ի
բնութէդ . յաղթեալ և հերքեալ է զօրու-
թիւդ քո ։ Յայնժամ ապերախտս հանդերձ
անթիպատոսիւն մոլեէ ՚ի ցասումն՝ ետ բե-
րել սղոցս սայրատուրս , զի յերկուս բաժա-
նեսցեն զանձն կուսին ՚ի մամուլս հիւսանց .
և առ նմին տապակս երկաթիս պատրաստել ,
զի կիզցեն զնա ՚ի ջեռուցեալ տապակս , և
յածխիւ դարձուսցեն ։ Այլ իբրև պատրաս-
տեցին զահիճքն զամ ; ածին զվկայուհին , և
արկին զնա ՚ի մէջ մամլոց գործարանացն .
և ահա բեկեցան սղոցքն , և ոչ ներգործէին
՚ի նա . նոյնպս և եռանդն տապակաց շիջաւ .
քանզի հրեշտակք այ եկեալ մերձ կացին
կուսին , և անգործ արարին զամ հնարս ա-
նօրինաց ։

Տե-

ցեալն էր ։

Յովսէփամ ընթացաւ մատակ առիւծ մի ( Ը այլոց՝ արջ մատակ ), և Հիւրանոցամբքն մարդ-ուցեր զկողս նր՝ ոչինչ սասանիկս խոցոտելով զնա ։ Այլ նոյնժամայն ձայն եղև յերկնից, և ասէ . ՚ի վեր ընթացիր Նէսփորիա, և ընկալ զպարգևսն՝ զոր պատրաստեցեր քեզ քոյին ձգնութեամբ . զընթացսն կատարեցեր, և զհաւատան պահեցեր . մատիր ՚ի պսակն ։ Այլ ընդ լինել ձայնին՝ շարժումն մեծ եղև, մինչև սասանեալ դողդղեցաւ տեղին, և դողացին ամենեքեան, և զահի հարեալ ցրուեցան ՚ի թէատրոնէ ։ Իսկ նր կոյսն ասէ առ ած . հասո՛ Տր անօրինակն Ը օրտի իւրոյ չարի ; և ընդ աղախնոյ քո լե՛ր Տր իմ և ած . և զայս ասացեալ՝ աւանդեաց զոգին ։ Այլ զի մեկնեալ էին ՚ի տեղւոջէն իշխանն և սպասաւորք նր ահի՛ մեծաւ, եկեալ մայր կուսին թէոդոսիանէ և հայր նորա փիլոփրոնէ՝ որք էին ՚ի թագաւոր, առին զմարմին նր, և տարեալ եդին ՚ի նոր գերեզմանի, ՚ի տեղւոջն՝ որ միով ասպարիսաւ հեռի էր ՚ի քաղկեդոն քաղաքէ ։

Յետ այսորիկ խորհուրդ արարեալ անթիպատոսին վն երանելւոյն կապելոցն՝ որք դեռ ՚ի բանտին էին, առաքեաց զնս առ թագաւորն ՚ի Նիկոմիդիա . և անդ կատարեցան նր վկայքն քի, որք էին թուով քառասուն և հինգ . Ը որս եթէ թուեցես և զսոսթենէս և զվիկտոր, որք յառաջին նահատակեցան ՚ի քաղկեդոն, լինին յիսուն և մի . իսկ զկուսին և

և պսակ պարծանաց ամենեցուն նց՟՝ յիսնե-րորդ երկրորդ, որբուհին եւփիմիա. զորոյ և զարիւնն խնդրեաց ած՟ 'ի ձեռաց չարախո-հին պրիսկոսի անթիպատոսի, որ ընդ չարա-չար ախտիւք անկեալ՝ մեծապէս տանջանօք սատակեցաւ 'ի կենացս:

Իսկ օր կատարման երանելոյ կուսին եւփի-մեայ էր սեպտեմբերի ժզ. 'ի հիւպատոսին դիոկղետիանոսի քննամարտ կայսեր, և ա-թոռակցի նորա մաքսիմիանոսի հերքուղեայ կմ՟ հերակլեայ, յամի տն՟ իբր 303: Ը.ՅԼՎՄ երևելի սքանչելեաց ինչ եղելոց 'ի քաղկեդոն 'ի ձեռն ամենահամբաւ վկայուհւոյն եւփի-մեայ 'ի յուլիսի. ժա. ուրոյն յիշատակ նորա կարգեցաւ առ յոյնս յայնմ աւուր. և տօնմին նաև 'ի մեզ տօն նորա վերածեալ եղև յայս միջոց յուլիսի՝ ը՟ նախընթաց խե՟ վկայից, և ծն՟ վկայակցաց նց՟, և ը՟ քրիստինեայ կուսի: Ըստ յիշատակելոյ յայսմաւուրաց նոցին յօհան ոսկիաբան, այն է ոսկեբերանն, պատմեաց զորբուհի կոյսն եւփիմիա ներբողական ճառ-իւք. այլ իցէ՞ թէ 'ի ձեռս բերէաք ուստեք զօրինակ այնր ճառի, որ չերևի այժմ 'ի միջի:

Իսկ վասն հոյակապ տաճարին եւփիմեայ, և սքանչելեաց՝ որ անդ, այսպէս գրէ եւագրիոս երևելի պատմաբան. գիրք. Բ. գլ. 3. * Տա-ճար եւփիմեայ վկայուհւոյն (ասէ), որ 'ի քաղկեդոն բիւթանացւոց, կառուցեալ է 'ի տեղի զուարճալի և դարահայեաց... ուստի երբև 'ի դիտանոցէ աչս յածել՝ տեսանեն ըզ-

դաշտս

դաշտս եւ զհովիտս կանաչազգեաց եւ անկա-
զարդ . . . եւ ծովս պէսպէս եւ ծովափունս . . ։
Իսկ ինքն տաճարն հանդէպ կայ կոստանդնուպօլի-
կան քաղաքին , եւ տեսութիւնըն առաւել վա-
յելչանայ ։ եւ է երեքկարգեան մեծամեծ շին-
ուածովք ։ մին՝ անյարկ , արձակագաւիթ եւ
սիւնազարդ յա̅մ̅ կողմանց ։ երկրորդն յետ
նորա՝ երկայնութ̅բ̅ , լայնութ̅բ̅ , եւ սեամբք
գոգցես համանման , այլ յարկածածկոյթ
գմբեթաւ ։ յորոյ 'ի հիւսիսոյ արեւելից է
տաճարն բոլորշի կամարաձեւ քաջարուեստ ,
զոր պատեն սիւնք հաւասարք ը̅ւ̅ նիւթոյն եւ
ը̅ւ̅ մեծութե̅ ։ յորոց վ̅ր̅ է վերնատուն բարձր
ընդ նովին գմբեթաւ ։ ուստի լինի յաղօթս
կալ առ վկայուհին , եւ առաջիկայ լինել
պաշտամանց ։

Իսկ 'ի մէջ կամարին ը̅ւ̅ արեւելս է շիրիմ քա-
ջավկայելոյն ։ ուր եդեալ կան ամենասուրբ
նշխարք վկային 'ի տապանակ երկայնաձիր ,
զոր ոմանք մանդրա կոչեն ( ի̅ը̅ երկայն ) , ար-
ծաթաշէն գեղեցիկ ։ Իսկ որչափ ինչ 'ի սըր-
բուհւոյ անտի ընդ ժամանակս ժամանակս
հրաշագործեալ լինին , ա̅մ̅ քրիստոնէից քա-
ջայայտ է ։ քանզի բազում անգամ կամ որոց
ը̅ւ̅ ժամանակին դիտապետ եղելոց քաղաքին ,
եւ կի̅ն̅ այլոց ոմանց առաքինեաց եղելոց յուխտա-
նի , տեսլեամբ 'ի վ̅ր̅ կացեալ՝ հրաման տայ
հնձան հարկանել ( կի̅ն̅ այգեկութս առնել )
'ի տաճարի իւրում ( զոր բազումք բազմօրի-
նակ թարգմանեցին ) ։ Որ 'իբրեւ յայտնի եղեւ
ն՝ թագաւորաց և՝ քահանայապետին եւ քա-

ղաւ

եւփիմեայ . վէմ դիզեալ յարդ բազում 'ի
'ի վէմ և շուրջանակի, հուր մատուցին . այլ
յետ ծախելոյ յարդից՝ անապատ գտան նըշ-
խարք կուսին ։ (3)

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ·

(1) Ճառընտիրն մեր Ա. յորմէ առաւել առաջ զառաջինկայս ճառ պատմութեան, ունի 'ի խորագրի այսպէս. * Վկայաբանութիւն սրբոյ կուսին եփիմեայ, և որք ը՛ նմ կատարեցան 'ի քաղկեդոնի՝ քառասուն և իննուց վկայիցն քՍի ||. Ուր հայելով 'ի կարգ նոյն վկայաբանութեան՝ պարզ է յաւելուլ և զերկու զօրականս, որովք լինին յիսուն և մի վկայք . Թող զի խմ վկայքն թէպէտև էին 'ի քաղկեդոնէ, այլ ոչ կատարեցան 'ի քաղաքի անդ. զի առաքեցան առ Թագաւորն, որ էր յայնժամ 'ի Նիկոմիդիա ։ Զնոյն վկայաբանութիւն գտանեմք յարեւմտեան առ մետափրաստեսի . մինչ զի ուր ուրեք հնութիւն ճառընտրին մերոյ էր անվերծանելի կամ փոքր մի պակասաւոր առ փոխումն, դիւրին եղև մեզ կարկատել զայն միջոցս 'ի մետափրաստեսէ . Թող զնորա զոճն յայտնի, զոր ոչ պահեցաք . զի է ճոխաբան հասարակօրէն, թէպէտև վայելչապէս . և ջանայ 'ի դէպս վերծանողաց յաւելուլ զնախագրական կամ զվերագրական պատճառս և հետեւանս, զորս ունէր ինքնին առնել ընթերցողն ։ Թողեալ և զաւարտերութիւն ձեռագրաց բուն վկայաբանութեան . զի գուցէ ուրեք այլազգ ընթեռնոյր Թարգմանիչն մեր, և այլազգ մետափրաստես ։ Իսկ այլ ևս վկայագիրք և յայսմաւուրք են քաղուածք 'ի և նոյն վկայաբանութենէս ։ Անուն կուսին 'ի զանազան գիրս մեր անխտիր գրի եւփիմէ, եւփիմեա, եւփիմիա, կամ եփիմիա, եփիմէ . ևն . որ 'ի յոյնս է եւֆիմիա, և առ լատինս եւֆեմիա . Բ և անխտիր առնի 'ի մեզ եւփրատ կամ եփրատ, եւփրատէսնէ կամ եփրատինէ . ևն ։

(2) Տանջանքն սմ՝ որ առեալ եւփիմեայ . մօրինակ պատմին 'ի ճառընտրի և առ մետափր" և առ այլս . ոմն և ողատուն կուսին 'ի մեքենայէ անուոց ։ Այլ յայսմ վայրի՝ ուր անորոշ բանիւ նշանակէ ճառընտիրն զնո-

ժ րա-

բաժնեալ մեքենայ տանջանարանաց, կոչելով մեքենաւոր գործարան, Մետափրաստէս վերածէ յերկուս տեսակս տանջանաց. յորոց առաջինն էր առէ մեքենայ ինչ կազմեալ 'ի քարանց և յերկաթոյ. քանզի կախեալ էին քարինք մեծամեծք զանկեանց գործարանին. զորս իբրև քարշէին մեքենայիւք, ծանր երկաթ ինչ վեր 'ի վայր խաղայր ուժգնութբ հետ զհետէ՝ 'ի աղորել զմարմին կուսին. այլ որ պահեաց զնա, և գործարանն քայքայեցաւ: Երկրորդն էր ուղղոն մեծ 'ի անգղի առաջարկղին, յորում էին ծովային խեցի գազանք. յոր արկին զեւփիմիա, և եւ անձկաս: Երրորդն էր այն՝ ( զոր Թուէի խնացուցանել Հառքաւիրն մեր ), զի արկին 'ի փոս մի ապրաստար քարինս, շամփուրս, սղոցս, և ծածկեցին զայղն հողով. և յորժամ կամէին անցուցանել զնոյան է այն, զի խորեալ 'ի փոս անդր՝ ջարդեսցի յանդէաս. Նաեանց անձկաս է այն. և գահինքն անկան 'ի գուբն՝ զոր ինքեանք փորեցին, և կորեան չարաչար: Արդ Թեպետև կարեաց միաբանել զտոսին է գրելոցն 'ի Հառքիւրի, այլ պահելով զընթացս բանից որ՝ շատ համարեցաք ատաանօր նշանակել:

(3) Զարմանալեաց եմք է բաւակելեան յայսմաւուրս Յ. որ այլով մասամբ միշտ գովելի գտանի ԶԲ պատմական ժամանակիս. և սակայն ոչ գիտեմ որպիսի անզգուշութբ գրչաց՝ 'ի բաց անկեալ է յիշատակ և վարք եւփիմեայ կուսի 'ի սեպհական տեղւոջէն. զի ուր ամենեքին գնեն զաօն որ կԹ զկատարումն 'ի սեպտ. 16. անդ է տեսանել 'ի ժամագր. յն. և 'ի Լ. եւ և 'ի Ճ. (Թէպէտև գրեալ էր սոսա 'ի սեպտ. Ը. փոխանակ գրելոյ՝ ԺԶ.) անդ և 'ի Հ. ԺԶ. կԹ ԺԵ. սեպտ. անգ՝ Թ 'ի ՃՅՆ. բս. եդեալ կայ միայն 'ի յուլիսի. 11. առընթեր յիշատակի մարկիանոսի մարտիրոսի նիկոմիդացւոյ, * յիշատակ զքանչելեաց ամենահամբաւ վկայուհւոյն եւփիմեայ ||. և այն՝ զանցաներով զերեւելի զքանչելիս արեան սրբուհւոյն և զայլ ես հրաշս, ամփոփի առ սաստիկական պատմութի ինչ առօյգ կԹ անսասյգ՝ եդեալ յաւուրս չորրորդ ժողովոյն: Դատեմին և քանի մի համանուն կուսանք և որ կանայք՝ խոստովանողք կԹ վկայք եւփիմիա կոչեցեալք, 'ի զանազան ժամանակս. զորոց խօսին յոյն և լատին յայսմաւուրք և մատենագիրք. այլ առ մեզ մի միայն հռչակեալ որ կոյսն և վկայուհին եւփիմիա քաղկեդոնացի առնախմբի, զոր և ազգաւ հռովմայեցի լինել ցուցանէ Մետափրաստէս:



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Քրիստինեայ կուսին :

Հ. յուլիսի . 24 . ըստ Յոյն" . Հռմ 23 . ըստ Լատ :
Յ . և Լ . յուլ . 24 : Ծոմաբերոյ . Ր . ՁԼԵ=ՁԿԴ .
և Գ . . ՌՃԴ=ՌՃԶ : Թուականութեանն մերում 'ի Է .
հար . յուլ . եր . 495=534 . և այլ : (1)



ՔՐԻՍՏԻՆԷ ԿՈՅՍ, ՈՐ Թարգմանի օծեալ քրիստոնեայ, մեծ վկայուհին և ճշմարիտ աղախին և հարսն Քի, էր 'ի Տիւրոս քաղաքէ (2), դուստր ուրբանոսի կռապաշտ ստրատելատի՝ 'ի ժամանակս տրայիանոսի . և ինքն ուրբանոս էր մեծատուն յոյժ, և իշխան բազում գաւառաց, և դատաւոր 'ի քաղաքի իւրում . և կին նորին նիկի անուն կմ յանիկէ 'ի Թագաւորական ազգէ . և ունէին մօտ 'ի ծերութեան զսա միայն՝ որ քրիստինէն կոչեցաւ (3), զաւակ միամօր, վայելուչ և գեղեցիկ յոյժ . և յորժամ էր նա այն ինչ անցեալ զտասնամեանիւք, կամ ամաց երկոտասանից և ինն ամաց, բազումք ցանկային տեսանել զնա, և յոլովք մեծատանց որդիք փութային խօսել զնա 'ի հարսնութիւն : Զայն տեսեալ հօր նորա ուրբա-

բա

բանտին, որ մնալեալ էր 'ի պաշտօն սուրբ
նոցա, և խորհէր կարգել զմիամօր դուստր
իւր 'ի յաւերժական պաշտօն դէց Երբև քրի-
մուհի, արար աշխարհակ մի բարձր, և Եհան
անդր զդուստր իւր, և Երկոտասան աղջ-
կունս ը նմա՝ լինել նմա 'ի նաժիշտս. և
արար պատկերս ոսկեղէն և արծաթեղէն,
և Եդ զնա յաշտարակին, զի Երկիր պագցէ նմ
դուստրն իւր, և մի իջեալ ուսցի 'ի մարդ-
կանէ։ Նա 'ի թախանձել բազմաց զաւր-
բանոսս՝ 'ի հարսնացուցանել զդուստր իւր,
նա ոչ ը ումեք հաստատէր դաշինս, այլ
ասէր, բարւոք է նմա այնպէս կեալ, զի ա-
ռաւել սիրեսցեն զնա մարդքն. և լցի պաշտօ-
նատար նմ, և զոհս մատուցէ նմ։

Նոկ կոյսն քանզի իմաստուն էր մտօք, և
ուսեալ իսկ էր յառաջագոյն զգօնելի վարս
քրիստոնէից, և լուեալ եւս զքաջ նահատա-
կութիւն նց 'ի վն քնական հաւատոց, սորէր
մտայոյզ լինել. վն Ճշմարիտ և սուտ կրօնից
ազգաց, և փափաքէր ուսանել զՃշմարտու-
թիւն. Այս իբրև զարգացաւ և եւս յաշտա-
րակի անդ, փոխեցան միտք նր ըստ օրինա-
կիս ըստ այսմիկ։ Յաւուր միում իբրև յա-
րեաւ, և առեալ զբուրվառն 'ի ձեռն՝ կամէր
խունկ արկանել կռոցն, Եղև 'ի խղճմտանս.
քանզի շարժեաց ած զմիտս կուսին՝ Երկ-
նչանալ ը կռոցն անմռունչս. վնյ տարաւ
Եդ զկռոցն 'ի պատուհանին. և ինքն Ելեալ
նստէր և հայէր յԵրկինս ը արևելս. և սկ-
սանէր զզարդ Երկնից, և խորհէր՝ թէ ո՞
իցէ

լցէ արարիչ արեգական և լուսնի և աստե-ղաց ։ Սկսաւ յօգուտ հանել, և ասել. ո՛չ մատուցից խունկս կռոցն զեօթն օր. և դար-ձել զմտաւ ածէր զպարկեշտ կարգս քրիս-տոնէից, և զչարչարանս սրբոցն և զհամբերու-թիւն նոցա. և լուսաւորեալ 'ի միտսն՝ ասէր. Աստուած քրիստոնէից դու ես Աստուած իմ, որ արարիչդ ես երկնի և երկրի. յայտնեա՛ ինձ զանձն քո, զի մի՛ պաշտեցից զկուռս հօր իմոյ՝ զան-շունչ պատկերս. զայս ասէր, և բազում ար-տասուս հեղոյր ։

Յու երգև 'ի գիշերի միում երևեցաւ նմա փրր-կիչն՝ կարդաց զնա սովին անուամբ, Արիս-տիանէ, այս է քրիստոնեայ, քաջալերեա՛ց, զի ես ընդ քեզ եմ, և ոչ թողից զքեզ. և դու համբերութեամբ առաւելցես զօրի քո. յայտ ա-րարեալ՝ թէ կոչէ զնա քննական անուամբ 'ի քրիստոնէութիւն և 'ի հանդէս նահատակու-թեան ։ Յու լցեալ կուսին խնդութեամբ՝ ոչ դադա-րէր 'ի գոհանալոյ զնմանէ, որ երևեցաւն նմա ։

Ապա այդ երգև, նստաւ 'ի նոյն պատուհա-նի, և խորհէր կործանել զկուռս հօր իւ-րոյ. քանզի Ը ակամբ հայէր 'ի նոսա ։ Ասէն ցնա աղախնայքն իւր. տիկի՛ն մեր՝ քանզի՞ ա-ւուրք են, զի ոչ ընկալան աստուածքն խունկս և զոհս. դուցէ բարկանայցեն 'ի վերայ մեր, և կորնչիմք ։ Ասէ ցնա. զի՞նչ խօսիք դուք մո-լարք վասն կռոց անշնչից, որք ո՛չ չար ինչ կա-րեն առնել և ո՛չ բարի. յայսմհետէ չէ՛ ինչ ինձ փոյթ վասն նոցա, այլ մատուցից զոհս և զոր

պատապարագաւ մեծն իմոյ քեզ, որ արար զերկինս
և զերկիր, և որ 'ի նմա արարածք իցեն : Իսկ
նմ անկեալ յառաջ նր՝ ասեն . ո՛վ տիկին մեր,
ո՛վ . զիա՞րդ մոլորեցար, և զօտար մեծ պաշ-
տեա . եթէ լուէ հայր քո, ունի կորուսանել
զքեզ և զմեզ :

Այս մինչդեռ խօսէին նք, եկն եմուտ հայր
նր . և ետես ալ զդուստրն իւր՝ ուրախ եղև .
և մատուցեալ երկիր եպագ մեծացն իւրոց,
և զոհեաց նց . և ելեալ նստաւ : Յայնժամ
մատեան աղախնայքն և ասեն . տէր մեր,
ահաւասիկ ոչ սակաւ աւուրք են, զի դուս-
տրն քո ոչ զոհեաց, և ոչ խունկս մատոյց
մեծացն : Դարձաւ և ասէ ուրբանոս ցկոյսն .
տիկին իմ և դուստր՝ զի՞նչ ասեն զքէն :
Ասէ երանելին . մի կոչեր զիս դուստր քեզ,
այլ՝ ասա՛ զիս դուստր երկնաւորին այ :
Զայս բանս ոչ իմացաւ հայր նր . այլ համա-
րեցաւ, թէ վսն մեծացն իւրոց ասէ . վսն և
ուրախացեալ՝ շնքաւ 'ի տուն իւր : Իսկ կոյսն
գտեալ ժամ պարապոյ, և մտեալ 'ի տեղին՝
ուր էին կուռքն, կարդաց զանուանն այ . և
մերկեալ զկուռսն՝ ետ աղքատաց, թերևս
արկանելով ը պատուհանն 'ի վայր, կիսայ-
լով փշրտեալ ճանապարհաւ :

Յետ աւուրց եկն անդրէն հայր նր . և իբ-
րև ոչ եգիտ զչաստուածս իւր 'ի կայս իւրում, 'ի
վսն հաստեալ՝ թէ դուստրն իւր կորոյս զնս,
խռովեցաւ զայրացաւ, և հրամայեաց սպա-
սաւորաց հարկանել զերեսս նր տապականօք .
և ոչ այնու շատացեալ՝ մերկացոյց զնա, և

դաւաղանաւ անողորմ տանջեաց ։ Իսկ երա-նելի կոյսն կարդայր յերկինս, և ասէր. Տէ՛ր, որ ոչ թողեր զիս 'ի կուռս մոլորութեան, ողորմեա՛ ինձ, զի 'ի քեզ ապաւինեցաւ անձն իմ ։ Այլ 'ի նախատել Ուրբանոսի զդուստրն իւր և անկեալ 'ի մտաց և մոլորեալ, սկսաւ Քրիստինէ համարձակ կշտամբել զանօրէնութիւն դիցապաշտից, և ասէ ցհայր իւր. մի՛չ ամա-չես և ո՞չ 'ի միտ առնուս զանպիտանութիւն 'կռոցդ քոց, զի խնքեանց ո՛չ օգնեցին, և ո՛չ քեզ օգնել կարեն ։

Իսկ նա իբրև լուաւ զայս, եւ քան զեւս մո-լեգնեցաւ բարկութեամբ. եւ ածել անիւ եր-կաթի 'ի պարանոց ծանրակշռակ դստերն, և շղթայս 'ի ձեռս նր, և տանել 'ի բանտ. և խնքն եկեալ 'ի տուն իւր տրտմութեամբ մե-ծաւ վա աղջկանն, և վս կռոցն կորստեանն, անկաւ 'ի մահիճս իւր կիսամեռ ։ Հարցա-նէր կինն նր ցծառայսն. զի՞ է՝ զի տրտմեալ է տր ձեր. իսկ նոքա պատմեցին զամ ։ Յայնժամ պատառեաց մայրն քրիստինեայ զհանդերձս իւր, և մոխիր 'ի գլուխ՝ լալով և կոծելով ընթացաւ 'ի բանտն, և անկեալ 'ի գետնին՝ ասէր. ողորմեա՛ իմ դստրիկ միա-մօր՝ ողորմեա՛ թշուառացեալ մօր քո., և ըն-կալ զաղաչանս թախանձանաց իմոց. զի մե՛րձ եմ 'ի մահ վասն քո 'ի գութ աղեաց իմոց. յիշեա՛, զի ծնայ զքեզ՝ խնդրելով յածոցն շնորհել մեզ. և հանեալ զստինսն առաջի՝ ասէր. յիշեա՛ զկաթն և զստինսն՝ որով սնուցի զքեզ. մի՛ անարգեր զծնողս քո.

պանոց. և ամ̃ քաղաքն ժողովեցաւ նորին տե-
սանել զնա: Ասէ ցնա ուրբանոս. քրիստո-
նեայ լեր ինձ իբրև հօր քում, և զոհեա
աստուծոյն. ապա թէ ոչ՝ ոչ ես կոչեմ զքեզ
դաւստր, այլ ածեմ 'ի վ̃ր քո տանջանս մե-
ծամեծս: Ասէ երանելին. մեծ շնորհ տա-
նես ինձ, զի ոչ կոչես զիս դաւստր քեզ.
քանզի չէ արժան՝ թէ հայր կոչեսցի ինձ
անկեալն 'ի կուռս, որ ոչինչ իսկ են:

Յայնժամ բարկացեալ՝ հրամայեաց կրկին
գան հարկանել զնա սաստիկ. մինչև յագե-
ցան և յոգնեցան՝ որք հարկանէին զնա:
Իսկ սրբուհին զօրանայր 'ի շնորհաց հոգւոյն
ա̃յ, և գոհանայր զա̃ծ. խօսել սկսաւ ա-
ռիաբար, և ասէ. ուրբանէ հնացեալ աւուրբք,
այլ ո՛չ բարութեան, ո՛չ զգաս և ո՛չ 'ի միտ ա-
ռնուս զզօրութիւն ք̃ի զօրացուցչին իմոյ. ա-
հաւասիկ դահիճք քո լքան. արդ հրամայ-
եա՛ այլ արս զօրագոյնս գալ. զի այսպիսի
փորձիւ ծանիցես զզօրութիւն ա̃յն իմոյ ճըշ-
մարտի:

Ապա նա ցասուցեալ հրաման ետ կախել զնա
ը̃ս օրինակի նահատակաց, և երկաթի քեր-
չօք քերել. և այնպէս անողորմ քերէին զնա,
զի և յերկիր ընկենուին զպատառս մարմնոյ
նորա: Ապա իբրև իջուցին զնա 'ի գետին, ա-
ռեալ կուսին զմասն մի 'ի քերեալ մարմնոյ
իւրոյ արիւնաթաթաւ՝ ընկէց 'ի հայրն կոյս,
և ասէ. ցանկացար ուտել զմարմինս իմ.
ահա՛ զոր խնդրէիրդ: Ասէ անօրէնն ուրբա-
նոս. քեզ ասեմ, զոհեա՛ բարերար ա̃ծոյն, և
կեաց

կեանց . ապա թէ ոչ՝ ածեմ՝ ի վ̃ք քո այլ առա-
ւելագոյն տանջանս , զոր ոչ գիտես . և ոչ կա-
րէ փրկել զքեզ ա̃ծն՝ յոր յուսացար : Մինչ-
ետ՛ըք կային . ամ̃ք զա̃մ մարդ հեգ և ողորմե-
լի , ո՞չ գիտես՝ զի որդին Ա̃յ լոյս եկն յա̃շ՝ ի լու-
սաւորել զխաւարեալս , և ազատել զազգս
մարդկան յա̃մ չարէ . և այժմ կարող է այն՝
որ լուսաւոր արար զիս , կեցուցանել հոգ-
ւով և մարմնով ը̃ն մեծի անուան իւրոյ . զի
յաղթեցից սատանայի՝ որ քև մարտնչի ը̃կ իս :
Յայնժամ առաւել զազանացեալ ուրբանո-
սի՝ հրամայեաց բերել անիւ մեքենաւորս ,
կամ անիւ մի ժանեաւոր , և ետ կապել զնա
ը̃ն անուոյն , և արկանել ՛ի ներքոյ հուր . և
ձէթ և ծծումբ սրսկէին ՛ի վ̃ք հրոյն , ո̃ր զի
արագ խանձողեսցի , միանգամայն և ՛ի շրջել
անուոյն՝ առհասարակ ջախջախէին ոսկերք
նորա : Յայնժամ երանելին համբարձ զաչս
յերկինս , և ասէ . աղաչեմ զքեզ տ̃ր իմ յ̃ս
ք̃ս , մ̃ք անտես առներ զիս . ձգեա զհզօր
ձեռն քո , և շիջո զհուրս զայս՝ ՛ի պարծանս
հաւատացելոց և ՛ի յամօթ անհաւատից : Եւ
զայս իբրև ասաց , ցօլանայր հուրն , և զաւ-
զուտն յանհաւատիցն այրեալ սատակէր . իսկ
ս̃բ վկայուհին ՛ի վերայ անուոյն երևէր իբ-
րև ՛ի պահոյս հանգուցեալ զուարթութ̃բ .
իբրև տեսին հաւատացեալքն , տային օրհ-
նութ̃ի ա̃յ :

Ապա հրամայեաց բանաւորն իջուցանել զնա
յանուոյն , և ասէ ցնա . ասա ինձ , ո՞վ ու-
սոյց քեզ զկախարդութիւն զայդ . ապա թէ
ոչ՝

Այս պիտանի կոյսն Հակառակ ողոքանաց չա-
րին, և ասէ. յիրաւի՛ կոչիս՝ ով լսեմ, գիտս,
զի զկուրաց կուրից՝ խլից անձանչից ստացեալ զա-
նուն՛, մոլեալ ես զկնի նց : Արամանեալ զա-
տաւորին՝ ես բերել սալս երկաթիս, որպէս
կասկարայ, և ջեռուցանել սաստիկ, և դնել
'ի ներքոյ ոտից նր. և արարին այնպէս սպա-
սաւորքն : Իսկ սրբն Քրիստինէ հայեցաւ յեր-
կինս, և ասէ. օրհնեմ զքեզ տր, և փառա-
ւորեմ զանուն քո ած իմ, որ արժանի արա-
րեր զիս դարձեալ չարչարել վս անուան քո :
Բայց քանզի հուրն ոչ մերձենայր 'ի նա զօ-
րութբն քո, ասէ դատաւորն հայհոյիչ. տե-
սանեմ, զի հուրն ոչ մերձենայ 'ի քեզ. վս
զի ածքն ոչ կամին զմահ քո : Սաստեաց նմա
սրբուհին, և ասէ. անօրէն և ամպարիշտ
որդի սատանայի, որ զզօրութիւն քո պիղծ
կռոցդ համարիս. բայց տացես փութով բղ-
վրէժ, և երթիցես՝ ուր գործակիցն քո սա-
տանաս :

Այլ բռնաւորն բարկացեալ ասէ. կակղագոյն
բանիւք զքեզ համարձակագոյն արարեր. յայն-
ժամ հրամայեաց հարկանել զնա սաստիկ.
և ապա եա զերծուլ զգլուխ նր, և շրջեցու-
ցանել ընդ քաղաքն մերկ : Իսկ սրբն ասէր յըն-
թանալ իւրում. գոհանամ զքէն տր իմ յս,
զի արժանի արարեր զիս աւուրս այսմիկ՝ ձա-
նաչել յամենեցուն, փոխանակ այնր՝ որով
փակեալ կայի յաշտարակի անտես 'ի մարդ-
կանէ. ով զի ամենեքեան գիտասցեն՝ թէ
քն եմ ես. քանզի անեալ եղէ բոլորեցուն վս
ահա

ցես զզօրութիւն ոգւոյ իմոյ։ Այլ յետ բազում հարցափորձի մրմնջեաց դատաւորն իբրեւ զզու-գան՝ եւս փակել զհնոցն մեծ, եւ փակել զնա 'ի ներքս. եւ թողուլ այնպէս, մինչեւ ծա-խեսցի։

Այլ եղեւ յետ ժամուց (այլք ասեն, յետ ա-ւուրց) լուեալ լինէր 'ի ներքուստ ձայն մեծ օրհնութեան. քանզի շիջաւ հուրն զօրութեամբ քնոյ, եւ կային օրհնէր զնա հանդերձ հրեշ-տակօք. եւ լուեալ պահապանացն՝ երկեան յոյժ, եւ եկեալ պատմեցին դատաւորին, եթէ հնչմունք եւ ձայնք լսելիք 'ի հնոցէն։ Այլ նա հրամայեաց բանալ եւ հանել զնա, եթէ կենդանի իցէ. եւ ել քրիստոնեայ ար-տաքս իբրեւ 'ի բաղանեաց՝ քրտնեալ, եւ պայ-ծառ երեսօք՝ իբրեւ զաստղ 'ի բազում լուսաւո-րեալ։ Զայնժամ ասէ ցնա դատաւորն. զի՞նչ քնութիւն կախարդեցեր կախարդութեամբ քով. արդ ասա ինձ զհնարս մոգութեան քո. ապա թէ ոչ՝ և այլ տանջանաց մատնեմ զքեզ-քեզ, զոր ոչն կարես կախարդել։

Ասէ նոյն. բարւոք կոչեցեր է անուն քո յու-լիանոս, այս է գայլ. զի զայնպէս եւ բարք քո. բայց զիս ոչ զարհուրեցուցանես. զի ոչ թողու քս հովուեալսն զօժարսն իւր 'ի ձեռս ապականիչ գայլոյ։ Զայնժամ կոչեաց դա-տաւորն թովիչս, զի արձակեսցեն իծս 'ի վե՜ րայ սրբուհւոյն. եւ ցկոյսն ասէ. զի՞նչ խնչ կա-խարդեցեր, մինչեւ եւ զգազանսդ զայդ զօրէնս կարօ՞ղ ես կախարդել։ Քրիստինէ ասէ. հա-ւատամ 'ի փրկիչն իմ յս, որ յամ ժամ օգ-նեաց

խաւարեալ , ո՞չ իմանաս զմեծամեծս մեր , որ բաւական են զքարեղէնս կակղել . իսկ դու ոչ 'ի միոյ առնուս զզօրութի մեր , այլ դիւ՛աց հա-մարիս ։

Յայնժամ հրամայեաց բանաւորին՝ հաստա-տել զաւանս նորա . և իբրև հաստատն երկաքեն աստիճանք երանելլի կուսին , ընդ արեան կաթն բղխեաց ։ Նա և որբուհին . գոհանամ զքեն երկնաւո՛ր Թագաւոր , որ արժանի արարեր զիս՝ այսպիսի չարչարանօք չարչարիլ վն ան-ուանդ քում սրբոյ փառաւորելոյ ։ Մուծեալ զաւ-ատաւորին զբանս նց՝ առէ . յայսմհետէ ոչինչ օգուտ 'ի քոյոց աղօթից , եթէ ոչ զոհես մծոցն . զայս ասացեալ՝ հրամանն ետ տանել զնա 'ի բանտ ։ Այլ երեթայինն զհետ նորա կա-նայք տեսանել զերանելին . կէսք սքանչա-նային ընդ համբերութի նորա , և կէսք կա-րեկից լինէին նմա . իսկ նա շնորհալից բա-նիւք յայտ առնէր նց զուրախութի սրտի իւ-րոյ 'ի չարչարանսն՝ որ վասն քրի . մինչև բա-զումք 'ի տեսողաց և 'ի լսողաց հաւատացին 'ի քր , արք և կանայք . յորոց եօթն տիկնայք ասին լինել 'ի պատուականաց ։

Տեսեալ բանաւորին՝ եթէ բազումք պակա-սին 'ի դենէն մր քրիստոնեայ , փութացաւ կարճել զնա 'ի կենաց . ետ ածել զնա առա-ջի իւր 'ի վաղիւ՛ անդր , և առէ . չարիմա՛ց և չարամահ , և մն անարգանաց արժանի . այժմ մերձեալ է ժամ հատանել զքեզ 'ի կե-նաց . դա՛րձ առ մծամ , զի մի կորիցես , այլ ընկալցիս և բազում պարգևս ։

ւանելոյ. * Մերառութիւն նորա՝ զարմանալի, այլ ոչ եթէ
,, անհաւատալի, կամ առ այս անկարելի. որ յոյժ է կա-
,, րօղ, որպէս և 'ի վեր քան զօրէնս հասարակաց արդարա-
,, ցուցանել զմարդիկ ||: Բայց իմաստութիւն պիտի է և
Է այս անծախուելի առած նա վճարին զծնեամնակ լինի.
Ը այդմ առէ պարտ էր և զայն անատոյգ բանս Էուանել,
զի կարելի են առ յոյժ. * և ոչ էր այնուհետև պիտոյ
,, ընտրութիւն տանել Է ճշմարիտս և Է սուտս, Է հա-
,, րազատ և Է անհարազատ բանս. և սակայն յայս և
,, 'ի նոյն հայի յառէտ մերս աշխատութիւն 'ի նոյն յայս
,, գործ ||:

Բարւոք է. կոչէիր 'ի բանսդ. ընտրեալ ինձ զճշմարիտն 'ի սուտս, զի առելոց, և զհարազատն յանհարազատէն, զի գիտասցես. քանզի և մերս աշխատութիւն յայս և 'ի նոյն երկրի 'ի բովանդակ յայս գործ: Այլ ես տեսանեմ, զի ոչ ընտրութիւն տանէ պիտոյ. այլ Է սուտն և զճշմարիտն ծիսոէ վա գեբբնականնութիւն, և Է անհարազատն զհարազատն ստարացուցանէ առ գծուծութիւն; չասացից՝ թէ առ անընտրողութիւն. այս թէ ոչ յայտնի են ընտրութիւնք օրինակի յօրինակէ յառաջիկայս, որպէս դիւրաւ որոշի գոյն 'ի գունոյ. զր,

Ընտրելի են օրինակք միաբանեալք Է ձառընտրի մերում, իբրև հնագոյնք 'ի յն. և 'ի լտ. և խառնելք յաւելուածք յետին օրինակաց արեւմտեայց: Նախ՝ ուր հինք տոսկատես սահն, թէ էջ ամպ լուսաւոր, և հրեշտակն կամ քն միրոնաց զքրիստոնէ, Նորք ոմանք (ըստ արում գնի յանհեղինակ ծանրգութեն ինչ նէապօլսոյ) գրեն. * Քն միրոնաց զնա ('ի մէջ լծի) այսպէս ասե-
,, լով. միրոնեմ զքեզ յած հայր իմ, և 'ի յիս յն քն յոր-
,, դի նր, և 'ի հոգին որ ||. որ է չէինք ողայական: Երկրորդ՝ ուր հինք ասեն կանխաւ անորոշակի, թէ քրիստոնէ յաշտարակի մեջերաց զկուռս, և բաշխեաց աղքատաց զոսկին և զարծաթն, Նոր օրինակք ինչ 'ի լտ. եդեալ են, կախեցաւ կոյսն Է պարիսպն պարանաւ կամ երիզաւ, և իջեալ բաշխեաց աղքատաց, և ել անդրէն 'ի վեր. որ է անհեթեթ մտածութի. որպէս թէ չունէր կոյսն զդ 'իւր հաստատուն և սրտակից յաշտարակի, զոր ենթադրէ մկայարանն, և ոչ բացայայտէ: Երրորդ՝ ուր հինքն պատմեն զանդանս հրացեալ սալի կամ կասկարայի, Նախասացեալ հեղինակն անշուք ծանրգութե գրէ ծիծաղական ձեւով այսպէս. * հրամայեն եա գատաւորն
,, կազմել օրաց աղնձի, և արկանել 'ի նա ձէթ և ձիւթ

,, և աւարին, և ՚ի ներքոյ ջեռուցանել սառուցիկ. և առ-
,, կեն զկոյսն զինուորք ՚ի մէջ նը. և շուրջ ՚ի նոցանէ
,, շարժելեին զօրոցն ||. որ է աղայարանութիւն, ապ թէ
և կոյսն իցէ յետին աղայ կը երեխայ: Ակզբնմեք իմն և զայլ անհարազատ կզկցուածս յետնոց՝ մի քան զմի աւելի կը պակաս. այլ մեք ազատ եմք յայսպիսի անպիտան բանից. յաւէտ ըստ ընտրելագոյն և պանծալի օրինակին մերոյ. այլ թէ կայցէ ինչ արժանի քննութ., առաջացուք ՚ի կարգիս:

(2) Ծաղկնաւորք մեր ոչ յիշեն զանուն քաղաքի. այլ ասեն՝ * յԾ ուրեմն ||. միայն գնեն զորոշ անուն Թագաւորի. զի թէ էր ՚ի ժամանակս արքայիանոսի կայսեր. իսկ ՚ի լատին օրինակս հինս պակասի անուն Թագաւորի, նմին իրի յետինք ըստ կամի եդեալ են՝ ադրիանոս. կը սեւերոս, և կը դիոկղետիանոս. բայց անուն քաղաքի՝ թէպէտև պակասի յՀարձակ վկայաբանութիս, այլ գտանի ՚ի Հ. և ՚ի Ց. և ՚ի Լ. ըստ հերանեման օրինակի. փոքր կոչեցեալ. որով նշանակի հասարակօրէն տիւրոս փիւնիկեցւոց, որ և ծուր. և սակայն արեւմտեայք ոմանք իմացան զտիւրոսն իտալական. և ըստ այսմ գրէ ՚ի նոր օրինակս, Լ. * տիւրոս առ վուլսին լճին յիտալիա ||. կը * տիւրոս՝ որ ՚ի տոսկիա (զի յերկրին թոսկանոյ) առ վուլսին լճին ||, որ ռամկօրէն կոչի լիճ պոլսենոյ: Եւ այս մեզ հաւանական երեւէր, ըստ որում և անուն հօրն քրիստինեայ է ձայն լատինական. զի ուրբանոսն է առաջինն. զի քաղաքացի կը քաղաքավար թարգմանեալ. և եթէ ինքն և եթէ յաջորդք նը երեւին զատաւորք կարգեալք ՚ի հռովմայեցւոց: Օգնէ և անուն մօրն յիշեալ ՚ի Ծ. Գ. նիկէ (որ է յունարէն յաղթութիւն), ՚ի թագաւորական զարմէ ըստ Ծ. Ա. որ ՚ի լատին օրինակս ինչ գրի ՚ի զարմէ ինքնակալաց, և յայլս՝ ՚ի զարմէ անիկեանց կը յանիկեանց. ուր ասէ ալինիոս. * Զէ
,, ինչ անառակ ընծայել սոյն զծագումն յանիկեանց զար-
,, մէ. քանզի են որ ասեն, թէ անտի իջեալ իցէ սըն
,, բեներիկտոս, և կայսերական տունն աւստրիական
,, հանդերձ այժմու ինքնակալաւ, և հանդերձ թագա-
,, ւորօք սպանիացւոց. որպէս նշանակեցաք ՚ի մարտի.
,, 21 ||. և ն:

Բայց քանզի առաւել հաւաստի է՝ թէ ՚ի յունաց ՚ի լատինս փոխանցեալ եղև սոյն սըյն քրիստինեայ, և պատմութիւն յարեւելից յարեւմուտս եհաս, և է հակառակն յերկրայս է անուն քաղաքին տիւրոսի յիտալիա, նմին

իրի

անուանուն նշխարաց եւ մարթին ընծայիլ արտաքոյ վե-
րագիր անուանք նշանականք, եթէ քրիստոնէն ( ցր ար-
տանի ), և եթէ քրիստոսեանն ( ցր քրիստոսինեայ ):
Զայսոսիկ յերկար հետախուզելով գիտնոց, և ոչինչ
մարթացեալ վճիռ հաստատել, բարւոք 'ի վեր բերէ ըն-
կալեալ զայս բան. Թող առէ ամենեքին հաւատով բա-
րեխօս կալցին զերեւելին քրիստոնէն, թէպէտեւ առ բա-
րեանս չիցէ նոյնն, այլ՝ այլ ոք. զի առէ մեծն գրիգոր
'ի տարաժամանօս. ճ. յաղագս սրբց. * անգ. մեծ եւ նշանա
ւ, առնեն. ուր ոչ անձամբ անկեալ գնին || : Ցայս հայի
և ասածն առաքելական. հետեւոր սէն զօրաւոր լինի.
տանեալ 'ի միրուննական բանէն ; * մարգարէ յեւրում
ս դաւառի պատիւ ոչ ունի ||, այնչափ՝ որչափ առ հե-
ռաւորս :

Կային երբեմն սորա նշխարք քրիստոնեայ յարեւելս, ուր
յիշի 'ի տխմարկոնն սբյն սարայ. գոյր և տաճար քրիս-
տոնեայ կուսի 'ի կոստանդնուպօլիս. որպես և վկայա-
րանք պէսպէս 'ի հռոմ և յայլ քաղաքս իտալիոյ. կայ
տաեն (առէ պլինիոս) եկեղեցի և առ վուլսին լճին թոս-
կանայ. և անդ 'ի տաճարի սբյն քրիստոնեայ համարի
թէ ոմանց լեալ աքանչելիքն այն քահանայագործեալ որ
նշխարի, յորմէ բղխեաց արիւն փրկչական՝ յամի տն
1264. յորմէ շարժեալ սահմանեաց ուրբանոս դ. հռով-
մայ հայրապետ զաւանձին տօն խորհրդոյ մարմնոյ և
արեանն տն :

Այն քրիստոնէն է բարեխօս տմ ցաւոց՝ մեծի և փոքու.
ղորոյ և զգաւնչելիս բաղմաց նշանակէն յիշատակագիրք.
զի են փարատումն ժանտախտի, աղատութի 'ի տմէ.
բժշկութին գիճահարաց, առողջութի պէսպէս հիւան-
դութեց, տռուեալպէս մանկանց. զի ոչ էր բաղմա-
շարշար, նոյնպէս և բաղմահրաշ նշանագործ՝ զօրութբ
ամենաղօր փրկչին :

ծնեալ՝ իմացական մտօք և անձնիշխան կամօք ըստ պատկերի և ըստ նմանութեան արարչին . և այս՝ 'ի վեցերորդ աւուր լինելութեան աշխարհի ,
այն է յառաջնում ուրբաթ աւուր :

Այս ո՞ կարէ ձայնել զանզուգական ձիրս և զփառս հոգւոյ և մարմնոյ, որովք ճոխացաւ երանեալն ադամ առաջնաստեղծ . որոյ նմանն ոչ եղև և ոչ լինիցի երբէք յորդիս նորա, բաց 'ի նորին ադամայ նորոգողէ հնոյն : Նմանանադոյն էր քան զամենայն, և գեղեցիկ քան զարեգակն . կատարեալ մտօք, և կարգաւորեալ կամօք և ամենայն մասամբք հոգւոյն, և կարողութեամբ ներքին և արտաքին զգայութեանց . և ըստ մարմնոյ հասակի 'ի չափ կատարելութեան, այր երեսնամեայ՝ առոյգ կազմութեամբ, և նազելի վայելչութեամբ, ժիր և զօրեղ, և բարետեսիլ ամենայն անդամօք, պարծանք բնութեան համօրէն : Իսկ հարստութեամբ և իշխանութեամբ՝ մի միայն, տէր կարգեալ ամենայն արարածոց եղելոց 'ի վայր քան զնա բնութեամբ, թագաւոր տիեզերական, և ինքնակալ վեհափառ, որ ոչ ցուցաւ 'ի դարս . հայր աշխարհի, և իշխան աշխարհի :

Այս աթոռ թագաւորութեան նորա յարևելս՝ 'ի հայաստան երկրի, յոծակերտ 'ի դրախտին եդեմական, որ և պարտէզ փափկութեան, գործել զնա և պահել՝ անխափանակ զբօսանօք, և յարդել զտաղանդ պատուիրանին, առ արժանի լինել՝ երբ և հաճոյ իցէ կամացն աստուծոյ վերափոխել զնա կենդանւոյն 'ի դրախտն երկնաւոր՝ յանձնառ երկնից արքայութեան . զի 'ի փոքուն հաւատարիմ գտեալ՝

և

'ի լինել զանեղծ անսկզբելոց հրեշտակաց , այլ
մինչև 'ի դժոխս իջցէ Ը խոր :

Դժուարքն են այսուհետև պատմութիւնս , և զառն քան զլեղի՝ ճաշակ ծառոյն գիտութեան բարւոյ և չարի . վա՜յ և ոչ յօժարի բանս ընդ-մէջն մի առ մի անցանել : Ո՜վ կայր նախամօրն և այր՝ և ունկնդրութեն խորամանկ օձին թունաւորի , զոր գիտէր ոչ յանձնել բարբառիլ՝ զի անխօս անասուն էր , այլ 'ի թելադրութէ օդոյն չարութեան . զիա՞րդ էր և նախահօրն իմաստնոյ լսող լինել ձայնի կնոջ . նա օձի , և սա օձախաբի դիւրալուր գտան . որով և սուտնգանող եղեն քաղցր պատուիրանի արարչին իւրեանց՝ 'ի հանդէս հնազանդութեան , չաւատել միայն 'ի միոյ և եթ ծառոյ : Աւերան , որով դառնացան . 'ի խնդրել զերկրորդն՝ զնախնին կորուսին , յառաւելուն ձըկտիլ՝ յետս Ը կրունկն զարկան զգետնի . Ճաշակեցին յարգելեալ ծառոյն գիտութեան , բայց ոչ առին զհամ բարւոյն , այլ միայն զչարին . քանզի իսկ և իսկ ծանեան զչարութիւն անչարքն և անմեղքն , և գիտացին՝ եթէ մերկ էին , ոչ լոկ 'ի մարմնոյ ծածկութից՝ զոր դիւրելին էր և տերևովք թզենւոյ պատրուակել , այլ 'որ մեծն է՝ և արեան արտաւօք ողբալի , 'ի լուսեղէն պատմուճանէ հոգւոյն , իմա՛ յանմեղութէ և յանմահութենէ . որում ոչն ունէին հնար հայթհայթել :

Այլ ամենազօրով արարիչն և մարդասէր տէրն՝ թէպէտև դատաստանաւ զարժանա-
հաս

հաստ պատուհասն 'ի վերայ նախաստեղծից , նախ՝ ըստ յառաջագոյն պայմանի զմահու մեռանիլն և զհողադարձիլն հողոյն , և երկրորդ՝ առն զանէծս ժառանգել , և քրտամբք երեսաց՝ տրտմութեամբ հանդերձ զհացն ուտել , և կնոջն՝ հեծութեամբ և տրտմութեամբ ծնանել որդիս՝ ընդ տիրութեամբ առնն , քան ընկերութեամբ , բայց և հայրաբար զթափիրեալ 'ի վերայ հեդութեան նոցա , որով պատրեցան քան թէ պարտեցան՝ ադխտութեամբ , և պարտեցան քան թէ պատրեցան՝ տկարութեամբ բնութեանս 'ի խորամանկ և յօձակուլ օձէն 'ի սատանայէ , եւ նոցա յոյս թողութեան և ազատութեան , զգեցուցանելով նոցա պատմուճան մաշկեղէն սգաւորակ՝ 'ի նշանակ ապաշխարութեան , և քաջալերս տալով նախամօրն՝ զի զօրասցի 'ի ձեռն զաւակի իւրոյ կոխել զգլուխ օձին , անփոխանելի պահելով զգարշապարս իւր ․ զոր և տիրանմս կատարեաց դուստր իմաստուն մօրն Եւայի՝ կոյսն անշաղախ՝ անարատն Մարիամ աստուածածին , որ ծնաւ զի զփրկիչն զի և զջախջախիչ գլխոյ մահաթոյն օձին ․ և եբարձ զանէծս նախամօրն , և եղև մայր փրկութեան և կենդանութեան մահացելոցն մերոց ․ յորոյ օրինակ յաւել Ադամ կոչել Եւայի անուն երկրորդ կենանա ․ այս է կին , ծնօղ ամենայն բանականն կենդանեաց ։

Արդ Քրի անարժան դստան նախաստեղծքն բնակութեան անմահական վիճակի , և մահառիթ պտղով զրկեցան 'ի ծառոյն կենաց , եհան արձակեաց զնոսա Տէր Աստուած 'ի դրախտէն

փափ

փափկութեան ; և ընտանեցոյց արտասուօք 'ի քաղ-
ցեայ՝ յանդիմանն դրախտին, արգելեալ ըն-
մուտանեօք իբր հրեղէն ցանկով 'ի ձեռն բո-
ցեղէն սրոյ զօրաց հրեղինաց, զի անմերձե-
նալի լինիցի ճանապարհ ծառոյն կենաց. և
մի մնասցէ այնուհետև ադամայ և եւայի
յոյս դառնալոյ զդեղ անմահութեան յերկրա-
ւոր անկոյ, այլ՝ յոյժ ապաւինեալ ապաշխա-
րութեամբ՝ խնդրեսցեն զդեղ անմահացուցիչ
հոգւոց. զի ծառն կենաց օրինակէր զտիրա-
մայրն զմայրն կենաց, միանգամայն և ըզ-
փայտն կենաց զՔի խաչն կենարարին ։
Իսկ ահա այսպիսի ակնկալութեան յուսոյ փըր-
կութեան և փրկչի, զոր ակնկեաց մեծ 'ի սիրտ
անկելոյ մարդոյն, կարօտացեալ կեալ ադամ
և եւայ զամ աւուրս երկարատև կենաց իւ-
րեանց. ապա թէ ոչ՝ յանհնարին տրտմութե̃
իսկոյն մեռանէին, կա՛մ առ անյուսութե̃ զիւ-
րովի երթային, և կամ 'ի ապաննութե̃ իւ-
րեանց մտաբերէին. ուր 'ի միտ ածէին՝ թէ յո՞ր
բարձրութենէ յո՞ր խոր դահավէժ տարերին
զանձինս. այլ մե̃ծ տրտմութեանն ապաշխա-
րութեան մխիթարէր զնո̃ 'ի յետին թախծութե̃
անդ. և դառն արտօսր ձնշեալ ընդ յանցա-
նաց՝ քաղցրանայր նց̃ յուսովն թողութեան 'ի
մարդասիրութենէ բարձրելոյն, որ միշտ ար-
դահատէր զնո̃ ։ Գիտէին, զի անձամբ չէին
բաւական դարմանն տանել անբուժելի վի-
րաց իւրեանց. բայց ոչ անգիտանային, ե-
թէ ամենաբաւականն կարող է և կամեցող՝
ողորմութե̃ դեղ ամենահնար 'ի մէջ ածել.

ցաւոց իւրեանց . վ՜ոյ յո՜ւմ սրտէ առ նա դի֊
մէին մշտամնաունչ հեծութիւն , և 'ի խնամս
տեսչութեն նո՜ր ապաստան եղեալ՝ որդիական
քան ծառայական երկիւղիւ՛ պաշտէին զնա
զա՜մ աւուրս , հաստատուն հաւատովք հանդ
դերձ և աներկբայ յուսով և ջերմին սիրով ,
և ա՜մ առաքինափայլ վարուք յօրինակ ա՜մ
ծննդոց իւրեանց : Մինչև 'ի դէպ է ասել ,
եթէ այն առաջինն էր՝ զոր ծանուցն մե֊
ղանն , և նոյն այն յետին . զի առեալ զդառն
ճաշակ մահաբեր մեղաց՝ ոչ ես այնուհետև
մեղանն մեղս մահուչափ . զի յա՜մի իբրև 'ի
չարաթոյն օձէն՝ յորմէ միանգամ խաբե֊
ցան , 'ի բաց փախչէին յա՜մ երևութէ մե֊
ղաց . 'ի պատերազմ էր փոխեալ յայնմ հետե֊
տէ կեանք մարդոյ , և փորձութիւն՝ վարք նո՜
'ի վերայ երկրի . և արդարև նախամարտիկ
յաղթօղք՝ յետ առաջնոյ պարտութեն , ձա֊
նաչին ադամ և եւայ նախաստեղծք՝ արդա֊
րացեալք յետ մեղաց շնորհօք հանդերձելոյ
նորոյն ադամայն , որ եկն առաւել վ՜ն փրր֊
կութեն ադամայ : (2)

Այլ եղև յետ ելանելոյ նախահօր և նա֊
խամօր 'ի դրախտէն , յերկրորդ ամի անդ՝ ը՜ս
կարծեաց ոմանց , կմ ը՜ս այլոց՝ յերեսներորդ
ամի [illegible] , 'յղացաւ եւայ յադամայ , և ծնաւ
զանդրանիկ իւր որդի , որում անուն եդ կայ֊
ին կմ կայէն , ա՜յ ստացուած . զի ասէ՝ ստա֊
ցայ մարդ ա՜յ . զի թերևս կարծէր , եթէ
նա լինիցի զաւակ գովելի 'ի կոխել զգլուխ
օձին , կամ պատճառ դարձի 'ի դրախտն .

քաղաքորութի̄, միանգամայն և աշխատիլ 'ի գործս պիտանիս վասն կենաց պիտոյից · զի կարասցուք ասել օրհնեալք եք և մայր ձեր զանփառատակ և զանդորր կեանս երջանիկ դրախտին, և յայս անկաք երկիր անիծից փշաբեր:

Այս եղև անդրանիկն կայէն երկրագործ · իսկ հաբէլ կրտսերն՝ հովիւ խաշանց · և ը̄ որում տեսեալ էր նոցա 'ի ծնողն իւրեանց՝ պատուել զնր̄ ած̄ պատարագօք, մատուցանելով կա̄ զոհելով ինչ ինչ 'ի բերոյ երկրի և 'ի կենդանեաց՝ 'ի նշանակ խոստովանելոյ զնա տր̄ ամի, և նուիրելոյ զանձինս 'ի ծառայութի̄ նորա մինչև 'ի մահ, արարին և նք̄ այնպէս · այլ կարի աննմանս միմեանց: Քանզի կայէն եբեր 'ի պտղոյ երկրի պատարագ ած̄յ՝ իբրև հարկս հարկանելով, և պարտս առ հարկի հատուցանելով, վ̄զի և ոչ ընտրութի̄ արար զլաւագոյնսն բերել, և սրտի մտօք նուիրել, այլ անխորհրդաբար անպէտս ինչ և անպիտանս մատոյց · վ̄զի և սրտագէտն ած̄ ոչ նայեցաւ 'ի կայէն և 'ի զոհս նորա՝ երևելի ինչ նշանօք:

Իսկ աբէլ արդարն էառ ընտրանօք յանդրանկաց խաշանց իւրոց և 'ի պարարտաց նց̄, և մատոյց ած̄յ բոլորով սրտիւ, զոյգ ը̄ զոհիցն և զսիրտ իւր բոլորապատուղ նուէր ընծայելով ած̄, և զուարթամիտ յօժարութեամբ պատուաբերելով զինչս և զանձն իւր 'ի սպասու փառաց նորա: Այսմ իրի և ած̄ հայեցաւ և հաճեցաւ ը̄ հաբէլ և ը̄ պատա

րագս նորա. և ետ 'ի վերուստ յայտնի նշանակ ընդունելի լինելոյ ինքեան, եթէ երկնաւորք հրով ծախելով զողջակէզսն, և եթէ այլազգ ինչ յայտնանշան ցուցակութբ, իբր հաստատելով 'ի հոտ անուշից, և օրհնելով զնա և զպատարագ նորա:

Զայն իբրև ետես կայէն չար, զչարեցաւ դառն նախանձու և լցաւ դժոխային տրտմութբ. խոնարհեցան անկան երեսք իւր, և սկսաւ այնուհետև ը̃ ակամբ հայել յաբէլ, մի՛ արդեօք սիրելի գտեալ յաչս այ̃ և պատուականն քան զինքն՝ իշխան լիցի 'ի վր̃ իւր, և ինքն անարգեալ կարգեսցի 'ի ծառայութե կրտսեր եղբօրն: Բայց ա̃ծ յանդիմանեաց զանմտութի նր̃, և խրատեաց զնա՝ հանդերձ քաղցրալեր բանիւք. յայտ արար նմ̃, թէ չէ՛ բաւական ուղիղ ինչ բաժին հանել այ̃ 'ի պատարագ, այլ պարտ է և ուղիղ մտօք մատուցանել. և ընտրութի առնել բարւոյ 'ի չարէ, և լաւագունին 'ի լաւէ. արդ ասէ՝ թէպէտև մեղար դու և՛ անարժան զոհիւքդ և՛ անիրաւ մախանօքդ, այլ եւ՝ որ մարդասէր տրս̃ եմ, ներեմ քեզ զայս նուա՛գ. լո՛ւռ լեր, և մի՛ կասկածիր լինել ծառայ եղբօր քոյ. զի տակաւին կրտսեր եղբայր քո է նա, և հլու քեզ ոչ̃ երիցու:

Այլ ինչ շահեցաւ չարն 'ի կենսատուիթ խրատուէ անստի տն̃ այ̃ իւրոյ, այլ խրատեալ 'ի բանսարկու սատանայէ՝ որոյ նախանձու եմուտ մահ յԾ̃, եդ՝ 'ի մտի բառնալ զկեանս եղբօր իւրոյ գաղտ 'ի ծնողացն. վս̃ որոյ ասէ

ցնա

ցնա յաւուր մեռում. Եւ երթիցուք 'ի դաշտ , ոչ թէ զքօսանաց աղագաւ , կամ 'ի պէտս ինչ գործակցութե 'ի վաստակս : Այլ առ-գարըն ապէլ լռեալ նմա հեզութ . զի չէր գիտակ չարութե սրտի նր , այլ յանմի պատ-րաստ էր անսալ հրամանաց նր ոչ եղբօր երիցագունի՝ ըստ ածադիր կանոնի և հայրե-նի խրատու , զի փոքրն հպատակ լիցի մեծի , և կրսերն՝ աւագի յամ կարգի : Այլ իբրև չոքան 'ի դաշտ անդր , յարեաւ կայէն 'ի վր հաբէլի եղբօր իւրոյ , և սպան զնա , հեղլով զարիւն նր իւիք գործեաւ , եթէ գայլախա զիւ , եթէ քրով , և եթէ երկաթով . զի էր երկրագործ , և սկսեալ էին յայնժամ վա-րիլ քահիւ և փայտատով :

Այլ ո՞ բաւական իցէ պատմել զհեծութիւ սրտի և զհառաչանս անմեղին և արդարոյն հաբէլի 'ի պահու անդ աւանդման հոգւոյն առ բարձրեալն . Նայեաց տր ( ասէ ) , ակն ամենահայեաց՝ յանպարտականս իմ մահ . ընկալ զբանաւոր պատարագս քեզ 'ի հա-ձոյս . զի վն փառաց անուան քո 'ի սպանդ վարիմ ոչ զոչխար , և վն սիրոյ քոյ մեռա-նիմ վաղամեռիկ և բռնամահ չարչարանօք՝ 'ի հանդէս վկայութե քո , որով վկայեցեր 'ի վր պատարագացս քեզ հաճոյացելոց . և ը այս ուրախ եմ , զի և անձն իմ գլխովին քեզ պատարագի 'ի ժամուս . գոհանամ զքէն տր և օրհնեմ զքեզ , և 'ի ձեռս քո յանձն առնեմ զհոգի իմ ով երկնաւորդ հայր՝ ած մարդասէր , տր կենաց և մահու . որ կարող

ցեր զայդ . գոչումն արեան եղբօր քոյ բողո-
քէ առ իս յերկրէ : Եւ գտեալ զնա անապա-
շաւ 'ի չարիս, 'ի վերայ եած արդարադատ տէրն .
անիծեալ լինիցիս դու 'ի վերայ երկրի, որ եբաց
զբերան իւր ընդունել զարիւն եղբօր քոյ 'ի
ձեռաց քոց . զի գործեսցես զերկիր, եւ ոչ
յաւելցէ տալ քեզ զզօրութիւն իւր . երերեալ
եւ տատանեալ եղիցիս 'ի վերայ երկրի : Եւ քանզի
զի անզեղջն կայէն յանյուսութիւն ըմբռնեալ՝
ոչ ակնկալաւ թողութեան, այլ՝ ցանկացաւ մա-
հու քան դողդոջուն կենաց, եդ տէր ած նշան
'ի կայէն, զի մի ոք հարցէ զնա . ապա թէ
ոչ՝ եօթնպատիկ պատժովք տուժեսցի : Եւ
այնպէս յերկարեաց նա 'ի ցաւոտ կեանս՝
զառհաւատչեայ անտի տանջանաց յանձին
բերելով զմահ աւուրս իւր . մինչեւ՝ անդ երեւի,
սպանաւ յանդգնոս 'ի ղամեքայ, որ վեցերորդ
էր 'ի ծննդոց նորա :

Այլ վաղագոյն սուգ անհնարին հասանէր
'ի վերայ նախահօր եւ նախամօր մեր վաղահաս
եւ բազում մահուան արդարոյն աբէլի . զի այն-
պէս բարձաւ ողջ զաւակն իւրեանց 'ի միջոյ,
յառաջեալ քան զմահ մարդ 'ի ճաշակել ըմբռ-
նութիւն մահու բաժակին, զոր նոքեանք
ունէին ըմպել . եւ որ չարն էր, զի ձեռաց չար
զաւակին կայենի՝ ընկալ սերնդովք իւրովք
զերկիր . ուր աբէլի կուսութեամբ նահատակե-
լոյ՝ եւ ոչ մի մնացորդ եղեւ 'ի վերայ երկրի : Բայց
ած մխիթարեաց զնախամարդն՝ տալով նոցա
որդի այլ արդար, յամի կենաց ադամայ եր-
կերիւր եւ երեսուն, կամ հարիւր եւ երեսուն .

զոր և անուանեաց ծնօղն՝ Սէթ. ասէ, զի յարոյց ինձ Ա՟ծ զաւակ այլ փոխանակ Հաբելի՝ զոր սպան Կային ։

Այս եղև սէթ ը՟ պատկերի և ը՟ կերպարանաց հանգունատիպ ադամայ հօր իւրոյ, և ը՟ արդարութե՟ և ը՟ անարատ քաղաքավարութե՟ համանման եղբօր իւրում աբէլի. ը՟ նմին և զաւակք սէթայ՝ զոր սիրեաց Ա՟ծ, եղեն ընտիրք և Ա՟ծապաշտք. նմին իրի և որդիք Ա՟յ կոչեցան. իսկ ծնունդք կայենի մարմնապաշտք և խառնակեցիկք՝ կոչեցան որդիք մարդկան. յորոց 'ի չար գնացից զգուշացուցանէր սէթ զզաւակս իւր ։

Որդ՝ անդրանիկն սէթայ անուանեալ Ենովս յառաջադէմ եղև 'ի լաւութեան քան զայլ եղբարս իւր. զորոյ զգովութիւն յայն քան բովանդակեն Ա՟ծային տառք. նա յուսացաւ կոչել զանուն Տ՟ն Ա՟յ ։ Իսկ կոչելդ կրկնակի իմանի՝ ը՟ քերթողահօրն մովսէսի. կամ անուանել Ա՟յ զմտաւացեալ, կամ յօգնականութի՟ կարդալ. յորոց զերկրորդն առաւել ընտրէ. զի քաջայոյս եղեալ ասէ ուղղութե՟ հանդերձ՝ 'ի մէջ որդւոց մարդկան ընկղմելոց 'ի տարակուսանս և յանյուսութի, եւս առաւել յինքնահաճոյ գործս, յԱ՟ծ ապաւինի ենովս, միանգամայն և կոչէ զնա աղօթիւք և պատարագօք Տ՟ր իւր և Ա՟ծ, և զնա միայն պաշտել ուսուցանէ իւրոցն բանիւ՛ և օրինակաւ, և ոչ ծառայել դիւի և մարմնոյ ։ Ուղղից զոր ընթեռնուն եբրայեցիք, սա վստահացաւ կոչել զանձն Ա՟ծ. որ է խա-

տոր-

տորնակի վերծանութեն . եթէ ոչ իմացուք ոճով ը՟ն ըաքունեաց, այս է՝ ա՟ծանման որ ե-րևեցաւ՝ ա՟ծահաճոյ քաղաքավարութ՟բ իւրով : Ի սո՟ սերնդոց եւ մեծ նահապետն Ենովք՝ հինգերորդ յԵնովսայ , և եօթներորդ յԱդա-մայ , գերազանցեալ զամենեքումբք՝ որ յա-ռաջ քան զնա և որ առ նովաւ եղեն արդարք . և հաճոյ եղև յայժ ա՟յ . մինչ զի կենդանւոյն փոխեաց զնա ա՟ծ կամ առ ժամն 'ի դրախտն ադամայ , և կամ 'ի նոյնպիսի վիճակ երջա-նիկ , անտես յաչաց մարդկան . և ո՛չ ուրեք գտանիւր : Սա ինքն սքանչելին Ենովք ճա-նաչի և առաջին մարգարէ՝ գրաւոր կ՟մ ան-գիր պատգամաւորութ՟բ դուշակելով զՀանդե-րձեալս , քանի՞ն՝ զոր 'ի բերանոյ նո՟ գրէ երանելի առաքեալն յուդա 'ի թուղթն կա-թուղիկեայց , իբրև քաջածանօթ ամենե-ցուն . * Ահաւասիկ եկն տ՟ր բիւրովք ս՟բ վք
,, հրեշտակօք՝ առնել դատաստան ը՟ն ա՟մի ,
,, և յանդիմանել զա՟մ ամբարիշտս վ՟ս գոր-
,, ծոց իւրեանց՝ զոր ամբարշտեցին , և վ՟ս
,, ա՟մ խիստ բանից՝ զոր խօսեցան զնմանէ
,, մեղաւորք և ամբարիշտք ‖: Արդ՝ ո՟պ զայս ստուգութ՟բ գիտեմք աւանդեալ որդւոց յոր-դիս՝ եթէ գրով և եթէ անգիր մինչև 'ի Նոյ , և 'ի Նոյէ մինչև 'ի Ք՟ս 'ի մէջ եբրայական ազ-գին , նոյնպէս կային և այլ աւանդք պէս-պէս յաղագս հետէ՝ 'ի կարգի ա՟ծպաշտու-թե՟ և կենցաղօգուտ գիտութե՟ և արուես-տից . յորմէ եւ և աւանդութ՟ին այն՝ եթէ ստոյգ և եթէ անստոյգ , ա՟ծ գիտէ , թէ ե-

նովք

Այլ որ ստեղծն զադամ 'ի պատկեր իւր , եղև ը̃ պատկերի նորա , կերպարանօք իսկ առաւել նման նմին քան զա̃մ մարդ՝ գեղեցիկն տեսանելով ըստ սաղմոսին քան զա̃մ որդիս մարդկան . նմանեցաւ և ը̃ լրման հասակին երեսուն և երեք ամաց , ը̃ որում յայնպիսի հասակի հաստեցաւ ադամ : Ապ̃ և դրախտն ադամայ օրինակ էր եկեղեցւոյ ք̃ի ըստ թագուոր խորհրդոց , սկսեալ յականէ չորից գետոց ը̃ չորից աւետարանչաց , և 'ի ծառոյն կենաց՝ յօրինակէ կուսին և խաչին . և ք̃ս յուրբաթու ստեղծաւ և ել ադամ 'ի դրախտէն ը̃ երեկս , նոյնպէս և տ̃րն յուրբաթու ել 'ի խաչ , և ը̃ երեկս եմոյծ ը̃ իւր զաւազակն 'ի նոր դրախտ ա̃ծատեսութն : Այլ ք̃զի ճաշակմամբ պտղոյ անկաւ ադամ , տ̃րն ճաշակեաց զլեղի փոխանակ նորա , ո̃պ և քառասնօրեայ պահօք քաւեաց զնա . և դարձեալ ք̃զի կողին՝ որ եղև կողակից , վիրաւորեցաւ նախահայրն , նմին իրի և տ̃րն 'ի կողն կենարար ընկալաւ զխոցուածն գեղարդեան . և ք̃ս ել հուր մեղաց 'ի կողէն ադամայ 'ի տոչորել զբնութիս , ջուր ել 'ի կողէն ք̃ի 'ի շիջուցանել զնոյնս , և 'ի սրբել և 'ի նորոգել զմեզ . սոյնպէս և զայլ խորհուրդս իմասցիս 'ի բանից վ̃դպաց իմաստնոց :

Յաւել ինձ և զայն , զի յորմէ հետէ որդին ա̃յ եղև որդի ադամայ , ուստի և որդի մարդոյ զանձն անուանէր , ո̃պ ետ իշխանութի որդիս ա̃յ լինել՝ որոց հաւատացեն յանուն նորա , նոյնպէս և աւետարանն զադամ յորդի -

ղիսութիւն այ ՚ի վեր հանէ. ըստ այնմ, որ սե-թայն , որ ադամայն , որ այն : Նաև այն է ողբալի , զի յետ մահուն ադամայ և սեթայ` որդիք նոցա յորդիս այ համարեալք` հետզհե-տէ խառնակեցան ընդ որդիս մարդկան. և ապականեաց ամ մարմին զճանապարհ իւր. որով պէտք եղեն այ նորոգել զբն հեղեղաւ ջրոյց առ նոյիւ. զորմէ ժամ է ասել:

# ՅԻՇԱՏԱԿ

## Նոյի.

Հ. Յունիս. 17. կամ 18. և այլն:

ԵՐԿՐՈՐԴ ՀԱՅՐ ԱՇԽԱՐ-հի զկնի ադամայ, տասներորդն ՚ի նմանէ, մեծ նահապետն նոյ` եղև այր կատարեալ և արդար յազգի անդ իւրում. զորոյ զկատարութիւն կան-խաւ գուշակելով և հայր նր ղամէք մաթու-սաղեան` անդստին ՚ի ծննդենէ խորհրդով անուն եդ նմա Նոյ. ասէ, սա հանգուսցէ զմեզ ՚ի գործոց մերոց, և ՚ի տրտմութենէց ձեռաց մերոց, և յերկրէ` զոր անէծ տր այ. յայտ արարեալ` թէ նոյիւ նորոգի բն, որ հնացեալն էր չարութբ և մերձ յապականու-թի: Զանդի որդիք մարդկան` ազգք կայե-նի չարի , յորոց բազումք եղեն արք հսկայք և

բորդ ամի կենացն Նոյի, եղև ջրհեղեղ զքառասուն տիւ և զքառասուն գիշեր 'ի վերայ երկրի, սահանապաս անձրևօք յերկնից, և աղբերահոս պատառոտածովք 'ի յերկրէ. մինչ չև սատակեցաւ ջուրն յոյժ յոյժ, և ծածկեաց զամ լերինս բարձունս որ 'ի ներքոյ երկնից. և տապանն վերացեալ յերկրէ՝ շրջէր 'ի վր ծովացեալ ջրոց։ Տեսիլ ահարկու և սքանչելի. համաշխարհական էր կորուստն, և աթիւ միայն ոգւոց 'ի տապանի եղելոց ապաստութի. կորուստ քստմնելի, և փրկութիւն հրաշալի։ Բանի՞ զեղջ եղև ասիցես արդեօք 'ի պահու անդ ջրահեղձոյց և անդնդատոյզ արկածիցս, որոց յանհոգս եղեն զառաջինն. և քանի՞ ապաշաւ անմխիթար, եթէ ո՞րպէս և կա՞մ զիա՞րդ անլուր գտաք մեծաքարոզ ձայնի ապաշխարութե. և արդ այս ամ եկն 'ի վր մեր։ Ընթանալ ընթանային 'ի վր տանեաց, և 'ի վերայ աշտարակաց բարձանց, և բարձրաբերձ լերանց. այլ ջուրն՝ որ էր յաճախման բարձրութե մինչև ցաւուրս հարիւր և յիսուն, ծածկեաց զամ բարձունս. և մեռաւ ամ մարմին շարժուն 'ի վերայ երկրի՝ 'ի մարդոյ մինչև յանասուն, և 'ի սողնոց մինչև 'ի թռչունս երկնից. և ջնջեցան յերկրէ։ Այլ մնաց միայն Նոյ և որ ը նմա էին 'ի տապանի անդ Նոյի, յօրինակ քի և եկեղեցւոյ նր, և կենարար փայտի խաչին, որով լինի մեզ փրկութի։

Յայնժամ Նոյ և որ ը նմա անձինք եօթն, տեսանելով զայս առ․ ինքեանս քաղցր մնա-

դատաւորութիւն, և զընդդէմ յանցաւորաց զվրէժ-
խնդրութիւն ահաւագին, ահիւ և խնդութեամբ փա-
ռաւոր առնելին զքեզ Տէր, և ոչ դադարեսցին և
ոչ յագեսցին 'ի գոհանալոյ զտիւ և զգիշեր վասն
այցելութեան շնորհացն քոյ, որ եղև առ նոսա
միայն. և մնասցեն 'ի տապանին անդ զատարի մի-
ամբողջ՝ յօրէ մտիցն մինչև ցօր ելիցն ։

Եւ յիշեաց Տէր զնոյ զաւրեկին իւր, և զօրս
ընդ նմա զարարածս իւր, և եած հողմ 'ի վերայ
երկրի, և դադարեաց յորդութիւն ջուրց. և
սկսաւ նուազել ջուրն յետ հարիւր և յիսուն
աւուր. և տակաւ զիջանէր և թողանայր յեր-
կրէ դրեթէ զնոյնչափ աւուրս ։ Եւ եկն և
նստաւ տապանն 'ի լերինս Արարադայ, այն
է այրարատ կողմանն լեառն անուանի՝ յերկրի
հայոց մեծաց ։ Եւ յորժամ երևեցան գլուխք
այլ և այլ լերանց, սպասեաց Նոյ աւուրս քա-
ռասուն, և ապա եբաց զպատուհան տապա-
նին, և արձակեաց զագռաւն, տեսանել եթէ
ցամաքեցաւ լիցէ ջուրն յերկրէ. և եւ ագռաւն
և անդրէն ոչ դարձաւ. յայտ է՝ զի շատացաւ
կալ 'ի վերայ ճախճախուտ լերանց, գտեալ իւր
կերակուր 'ի դիականց մարդոյ և անասնոյ՝
ամենայն թռչունն գիշակեր. այն է օրինակ ան-
ամենայն քրիստոնէի, որ ախորժէ թաթաւիլ 'ի մե-
ռեալ գործս կենցաղոյս, քան որպէս թէ
քաղաքավարիլ 'ի տանն քոյ ։

Արձակեաց Նոյ և զաղաւնին զկնի թռչունն
զհետ նորա. նայլ աղաւնին մաքուր չգտեալ
հանգիստ ոտից իւրոց 'ի տղմաշաղախ գոլոյ
երկրի՝ դարձաւ անդրէն 'ի տապանն անդր.

և ձգեաց նոյ զձեռն իւր, և ընկալաւ զնա անդրէն 'ի ներքս․ այսպէս և առաքինասէր անձինք անձնապահ լինին յերեսաց պղծելոց զնացեալ և 'ի մրրկածուփ զբօսանաց կենցաղոյս, և հնարին պատսպարել զանձինս 'ի նաւահանգիստն կենաց 'ի ձեռն քնի փրկչին իւրեանց :

Պատարագեալ նորին ասուրս եօթն՝ միւսանգամ առաքեաց զաղաւնին․ և դարձաւ աղաւնին ընդ երեկս․ և ունէր տերև ձիթենւոյ շիւղ 'ի բերանն իւրում․ և գիտաց նոյ՝ թէ ցածուցեալ են ջուրքն յերկրէ : Խորհուրդ գեղեցիկ՝ 'ի նշանակ հաշտութեան այ Է մարդկան աղաւնակերպ երևմամբ սբ հոգւոյն, հանդերձ միջնորդաւոր տերևով այս է անապականն յաղթութեամբ 'ի կռիւսն արքայութեան Քի փրկագործութեան քնի․ որ և յառաջնում արարչագործութեան հոգի այ շրջէր 'ի վր ջուրց 'ի կենդանածնել զարարածս : Նոյնպէս և բացումն պատուհանի նոյեան տապանին՝ 'ի խորհուրդ բացման կողից կենարարին, հանդերձ բազմապատիկ նշանակօք խորհրդաւոր թուոց քառասուն աւուրց, և եօթն եօթն աւուրց, որք և թուովք սբ և անուն կենդանեաց․ զորոց չէ տեղւոյս ասել :

Արդ իբրև միւսանգամ առաքեաց նոյ զաղաւնին զկնի աւուրց եօթանց, ոչ ևս յաւել դառնալ․ զի ցածուցեալ էր ջուրն․ և յայնժամ երաց նոյ զձեղուն տապանի․ և ետես՝ զի նուազեալ էր ջուրն յերեսաց երկրի․ և յետ քանի մի աւուրց խաղաղ ցամաքեցաւ :

Եւ

Ծի տարածեցաւ 'ի մէջ խաւչին ; և արբոյց ան-
եղերաց զանմահութիւն 'ի կողահոս աղբերէ
արեան և ջրոյ ։

Այս եկաց նոյ յետ ջրհեղեղին ամն երեք-
հարիւր և յիսուն . և եղեն ամ ամք կենաց
նորա ինն հարիւր և յիսուն . և ետեսնա զոր-
դիս որդւոց իւրոց 'ի բազում ազգս . և ետես
զհայաստանն և զայլ ևս ծն լցեալ բազմութ .
և բաժանեալ զծն 'ի վերայ երից որդւոց
իւրոց , ըն ասուրբք փոխեցաւ 'ի կենաց . և
թաղեցաւ յծին հայոց աշխնհ հեռի յայրա-
րատայ 'ի տապանատեղւոյն . անդ թաղեցաւ
և կին նորա , զոր ոմանք նոյեմզարա անուա-
նեն . և յանուն նորա ասեն կոչել մարանդ-
զատեղին , ուր թէ անդ է մայրն հասարակաց
զկնի եւայի նախամօր ։ (3)

# ՅԻՇԱՏԱԿ

## Մելքիսեդեկի ։

Հ . մարտ . 25 . և այլ ։

ՔԱՀԱՆԱՅ ԱՍԻԱՄԲ յիշատակեալ նախ զաւաշխին
յածաւշունչ գիրս , և այն՝ քա-
հանայ այն բարձրելոյ , մի մի-
այն է սա լինքն երանելի հայրապետս մել-
քիսեդեկ , բազմօք յառաջ քան զահարոն

զևտացի՝ յորմէ սկիզբն առնու քահանայութիւն ազգին եբրայեցւոց, և ժամանակակից արքահանայապետին եկեղեցւոյ եբրայեցւոց։ Զի Թէպէտև Ադամ նախահայրն և այլ նահապետքն և ատենաւորեալքն մինչև ցՆոյ և ցԱբրահամ, և այլոքն ևս, մատուցանէին զոհս և պատարագս Այ, այլ ոչ որք ՚ի նշէ քահանայական կոչեցան՝ բաց ՚ի Մելքիսեդեկէ, որ եղև օրինակ Ճշմարիտ քահանայապետին մերոյ Քի, և ՚ի ստուերագրին պատկերի եղև նմանեալ որդւոյ Այ խորհրդաբար։

Արդ ըստ պատմական մասին՝ այսչափ միայն գիտութի ընծայեն մեզ գիրք, Թէ Մելքիսեդեկ քահանայ Այ բարձրելոյ՝ էր արքայ Շաղիմայ, կամ Սաղիմայ. այն ինքն է՝ Երուսաղէմ, Երուսաղէմ կոչեցեալ զկնի. և եղև՝ յորժամ դարձաւ Աբրահամ ՚ի կոտորածէ Քոդողոգոմորայ, ել ընդ առաջ նորա արքայ Սոդոմացւոց. և Մելքիսեդեկ արքայ Շաղեմայ եհան հաց և գինի. քանզի քահանայ էր Այ բարձրելոյ. և օրհնեաց զԱբրամ, և ասէ. օրհնեալ է Աբրամ յԱյ բարձրելոյ, որ արար զերկինս և զերկիր. օրհնեալ Այ բարձրեալ, որ մատնեաց ՚ի ձեռս քո զթշնամիս քո. և Աբրամ ետ նմա տասանորդս յամենայնէն՝ զոր առեալն էր. Ուր խորհուրդք Քի մեծ առաքեալն իբրև ՚ի զարմացմանէ. տեսէք, որպիսի ոք էր սա, որում և Աբրահամ տասանորդս ետ յաւարէն անտի նահապետն. և ոչ միայն տասանորդեաց սա է Մելքիսեդեկ, այլ և զնա՝ որ զաւետիսն ընկա-

Մելքիսեդեկի միանգամայն թագաւոր և քահանայ. և քան զծայրագոյնն ունէր զթագաւորութիւն և զքահանայութիւն միանգամայն, ժառանգ գտեալ թգ̃րուն դաւթի հօր իւրոյ ըստ մարմնոյ՝ անվախճան թգ̃րութբ̃ 'ի վ̃ր ամենեցուն, և կատարիչ խորհրդոյ քահանայութեան ստուերագրելոյ 'ի Մելքիսեդեկ: Չորրորդ ըստ նմանութեան նիւթոյ նուիրաց քահանայութեան կամ պաշտաման պատարագի. զի ոչ յիշէին զոհք և ողջակէզք անբանից 'ի քահանայութեան Մելքիսեդեկի (Թէպէտև առնէր որպ̃ զայլ նահապետս), այլ հանէր նշ̃ զհաց և զգինի խորհրդաբար. զորս մատոյց առ ըղեզք նախ այ̃ իբրև անարիւն պատարագ, զի քահանայ էր այ̃ բարձրելոյ. և ապա զնոյն նուիրական հացն և զգինին բաշխեաց աբրահամու և արանց նորա, զի հաղորդեցին ամենեքին և զօրացին. Քս̃ և քան ըզ-պատուական մարմին իւր և զարիւն նուիրեալ վ̃ն մեր 'ի պատարագ հօրն երկնաւորի՝ զնոյն կարգեաց ընդ տեսակաւ հացի և գինւոյ 'ի խորհուրդ սբ̃ և անարիւն պատարագի, և 'ի հաղորդութիւն անմահարար սեղանոյ:

Հինգերորդ՝ ըստ աստիճանի երիցութեան կամ կարգի քահանայութե՛՝ իբրև լաւագունի քան զղևտականն. քանզի Մելքիսեդեկ իբրև երիցագոյն և սրբագնագոյն քահանայապետ՝ օրհնեաց զարմատն ահարոնեան քահանայութեան զաբրահամ, և 'ի նմա զղևի և զղևտացիս, իբրև վերագոյն զստորինս, և լաւ՝ զնուաղն. և 'ի նշանակ այսմ՝ տասանոր-

դեաց

Ի ժամանակին յայնմիկ Թէոդոտեւ դատաւորէն
'ի վ̃յ երկրի անձինք ա̃ծածանօթք և ա̃ծա-
պաշտք, բայց Թու՛ով․ զի Է̃ մեծ մասն նց̃ի,
մանաւանդ 'ի քաղդէաստան յերկիր մոգաց՝
տարածեալ էր անօրէն կռապաշտութի̃ և
հեթանոսական բազմա̃ծութի̃ առ Թագաւո-
րութ̃ Նինոսի երեւելւոյ արքային ասորես-
տանեայց․ ոչ̃ և Թարայ քաղդէացի 'ի նոյն
կռամոլ օրէնս էր սնեալ, և պաշտէր զձե-
ռագործս և զփ̃ծս օտարս ։

Իսկ որդի նո̃ր աբրահամ ընտրեալն յորովայնէ՝
իբրև եհաս յամս ընտրութեան բարւոյ և չա-
րի, ծանեաւ զճշմարիտն ա̃ծ բարձրեալ՝ արա-
րիչ երկնի և երկրի, և զնա միայն պաշտե-
լի, 'ի ներքուստ լուսաւորեալ 'ի հոգւոյն ա̃յ,
և արտաքուստ 'ի գործոցն ա̃յ, ստէպ հայե-
լով յերկինս՝ որք պատմեն զփառս ա̃յ․ իբրև
գործք մատանց ամենարուեստ ճարտարա-
պետի․ քանզի էր մանուկ մտավարժ և կիրթ
յաստեղաբաշխական գիտութի̃ս քաղդէաց-
ւոց ։ Եւ այնպէս յարարածոց զարարիչն ի-
մաստասիրեալ՝ ծանեաւ զա̃ծ, և փոյթ կա-
լաւ փառաւորել զնա որպէս զա̃ծ․ յարեցաւ
յա̃մ սրտէ 'ի սիրել և 'ի պաշտել զտ̃ր ա̃ծ իւր
սրբութ̃ և արդարութ̃, և ոչ դարձոյց ե-
րբէք զսիրտ իւր 'ի նմանէ զա̃մ աւուրս կե-
նաց իւրոց ։ Եւ գուցէ խնքն էր՝ որ շահեցաւ
զսիրտ հօր իւրոյ և այլոց եղբարց իւրոց և
ազգատոհմին, Թողուլ զպաշտօն սուտ կռոց,
և որոշել 'ի միջոյ դիցամոլ քաղդէացւոց, և
գնալ խնդրել այլուր տեղի՝ ուր կայցէ ճշմա-
րիտ

ընդ ա̃ծգիտութի :

Նոր եթէ սովին խորհրդով, և եթէ վասն այլ ինչ պատճառաց, այլ ա̃յ տեսչութե և առաջնորդութե բարձրելոյն՝ էառ Թարայ զաբրամ զորդի իւր, և զնաքովր զորդի իւր, և զղովտ զորդի առանայ որդւոյ իւրոյ վախճանելոյ, և զսարա զկնու իւր զկին աբրամու, և եհան զնա յՈւռէն քաղդեացւոց՝ երթալ յերկիրն քանանացւոց. և եկին մինչև ցխառան՝ որ 'ի միջագետս ասորւոց մօտ յեդեսիա. և բնակեցան անդ զամս բազումս. մինչև մեռաւ Թարայ 'ի խառան 'ի հասակի երկերիւր և հինգ ամաց. յորում ժամանակի աբրամ էր ամաց եօթանասուն և հնգից:

Յայնժամ կոչեաց ա̃ծ զաբրամ երևելի տեսլեամբ հրեշտակի կամ երկնաւոր ձայնիւ, գալ զկնի իւր յերկիր՝ զոր ցուցցէ նմա. Ել դու ասէ յերկրէ քումմէ, ոչ միայն յերկրէն քաղդեացւոց՝ զոր լքեր, այլև 'ի խառանէ՝ յոր սկսար առնել բնակութի. Ել և յազգէ քումմէ և 'ի տանէ հօր քո, զի մի՛ մնասցէ 'ի զաւակս քո հետք հեթանոսութե. Ել ասէ յերկիր՝ զոր ցուցից քեզ, և արարից զքեզ յազգ մեծ՝ բազմութի̃ զաւակաց, և ուղղութի̃ ա̃ծպաշտ կարգաց, ընտրելով ըզքեզ և զքոյսդ ինձ ժողովուրդ սեպհական. քանզի օրհնեցից զքեզ հոգևոր և մարմնաւոր օրհնութի̃, և մեծացուցից զանուն քո, և եղիցիս օրհնեալ. և ոչ այսչափ միայն, այլև օրհնեցից զօրհնիչս քո, և զանիծիչս քո անիծից. և օրհնեսցին 'ի քեզ ա̃մ ազգք երկրի.

Մեծ

զայդ արարեր, տուր ցիս զմարդիկդ, և զա-
ւարդ քեզ առ. Եւ այնպիսի աբրամ մեծատունն հաւատով և անկարօտն մեծութեան Տր. Ձգեմ զձեռն իմ առ ած բարձրեալ՝ որ արար զերկինս և զերկիր, և յանուն նր երդուեալ՝ չառնուլ յանձն առնուլ ինչ յամէ որ ինչ քո իցէ, ոչ շաղամաթ մի՝ որ է թել ասղանւոյ, և ոչ խրաց մի կօշկաց. զի մի՛ ասիցես, թէ ես մեծացուցի զաբրամ. յայտ արարեալ՝ թէ ոչ մրդ, այլ՝ ած էր, որ մեծացուցանէր զնա ըստ խոստմանն. այսպէս էր յամի հաւատք և առաքինութի մեծի նահապետին :

Ապա վերստին երևեցաւ ած աբրամու՝ ի տեսլեան գիշերոյ, և ասէ ցնա. մի՛ երկնչիր աբրամ, ես վերակացու եղէց քեզ, և վարձք քո բազում եղիցին յոյժ. այս է՝ ես ինքնին եղէց վարձք քո, զի դու ես ազնիւ ծառայ իմ հաւատարիմ։ Տեսեալ աբրամու՝ եթէ այնչափ խանդաղատի զնովաւ ած, համարձակեցաւ և ինքն ասել. տ՛ր տ՛ր զի՞նչ տացես ինձ, զի ես կորնչիմ անորդի. գիտեմ, զի ճշմարիտ են խոստմունք քո, այլ որովհետև ոչ ետուր ինձ զաւակ, ժառանգ ուրեմն լինելով լինիցի իմ եղիազար դամասկացին որդի մասեկայ ընդոծնի իմոյ։ Իսկ վաղվաղակի ձայն տյ եղև առ նա, և ասէ. ոչ ժառանգեսցէ զքեզ դա, այլ՝ որ ելանէն ՚ի քէն, նա ժառանգեսցէ զքեզ. և եհան զնա ած արտաքս, և ասէ. հայեա՛ց ընդ երկինս, և թուեա՛ զաստեղս՝ եթէ կարող ինչ իցես թըւել զնս. և ահա այնպէս եղիցի զաւակ քո՝

անթուելի ՚ի բազմութենէ ։ Այլ հաւատոյ աբրահամու մերոյ, ասէ գիրն, և համարեցաւ նմա յարդարութիւն․ որ է ըստ առաքելոյն՝ գլուխ գովութեանց աբրահամու, որ թլփատեալ հայեր ՚ի ծերութիւն իւր և յամլութիւն սառայի, այլ յայսոր նմին վերայ՝ անյոյսն յուսով և աներկբայ մտօք հաւատայ խոստմանն նորա ։

Յաւելեալ ասէ ցնա այ․ ես եմ տէր այ քո, որ հանի զքեզ յՈւր քաղդէացւոց՝ տալ քեզ զերկիրդ զայդ ՚ի ժառանգութիւն որդւոց յոր-դիս ։ Այլ ՚ի խնդրել աբրահամու ՚ի տեառնէ յայտ-նել նմա, թէ որով օրինակաւ և ցորչափ ու-նի խնդրն և որդիք իւր ժառանգել զերկիրն քանանացւոց, եցոյց նմա այ ՚ի ձեռն սքան-չելեաց՝ որ եղեն ՚ի յօշոտումն կենդանեաց մատուցելոց ՚ի նմանէ՝ իջմամբ թռչնոց ՚ի վերայ, և փայլմամբ ճառագայթից հրոյ ընդ մէջ անդամոցն յօշելոց, թէ զի՞նչ ինչ անցք ան-ցանելոց էին նախ քան զառնել նոցա յերկիր օտար, զի յեգիպտական ծառայութեան․ և ապա վրէժխնդիր եղէց ասէ չարչարողաց զաւակի քո, և հանից զնոսա ՚ի ձեռաց նոցա․ և ածից յեր-կիրս յայս ամորհացւոց և քանանացւոց ։ Այլ եդ տէր ուխտ յաւուր յայնմիկ ընդ աբրահամու, և ասէ․ զաւակի քում տաց զերկիրդ զայդ յետ վախճանելոյ քո, ՚ի գետոյն եգիպտացւոց՝ ՚ի նեղոսէ մինչև ՚ի գետն մեծ եփրատ ։

Այլ եղև յետ գեգերելոյ աբրահամու պանդխտու-թեամբ զամս տասն յերկրին քանանացւոց՝ խորհուրդ ետ սարայ աբրահամու առնուլ իւր ՚ի կնութիւն զաղախին եգիպտացի զնաժիշտ իւր ․

զի

զի արարից ինձ ասէ որդի 'ի դմանէ : Եւ ունկնդիր եղև աբրամ ձայնի սարայի , զի թերևս նովին լցցի խոստումն այ̄ . և ծնաւ աբրամ զիսմայէլ յագարայ` յութսուն և վեց ամի հասակի իւրոյ : Եւ յորժամ եղև աբրամ ամաց իննսուն և իննից , երևեցաւ նմա ա̄ծ , և եդ նմա ուխտ` անուանել զնա հայր բազմութեան ազգաց . այլ և փոխեաց և զանուն նր̄ . ասէ . ոչ կոչեսցիս այսուհետև աբրամ , այլ` աբրահամ ( որ է հայր երամից , կմ̄ բազմութեան ) , զի հայր ազգաց բազմաց եդի ըզքեզ , և աճեցուցից զքեզ յոյժ , և թագաւորք 'ի քէն ելցեն . և հաստատեցից զուխտ իմ ը̄ն քեզ և ը̄ն զաւակս քո յուխտ յաւիտենական` լինել իմ ա̄ծ քեզ և զաւակի քում յետ քո . որով բանիւ կացուցաւ աբրահամ հայր հաւատոց ամ̄ հաւատացելոց . և նշանակ ետ նմա յայնժամ զուխտ թլփատութեան . զի հանդերձեալն զաւակ` լինիցի զաւակ ուխտի և հաւատոց :

Փոխեաց ա̄ծ և զանուն սարայի 'ի սառրա , յաւելլուածով տառի նշանակեալ զնա լինել մայր այնպիսւոյ զաւակի , յորում օրհնեսցին ազգք և ազինք . քանզի ասէ օրհնեցից և ըզսառրա զկին քո , և տաց քեզ 'ի նմանէ որդի . և օրհնեցից զզաւակն զայն , և թագաւորք ազգաց եղիցին 'ի նմանէ : Յայնժամ անկաւ աբրահամ 'ի վ̄ր երեսաց իւրոց , և ծիծաղեցաւ ը̄ն միտս . ոչ թէ ասելով 'ի սրտի . զուցէ կամի ա̄ծ մխիթարել զիս և զսառրա` փառս ոչ ունելոյ իմ զաւակ 'ի նմանէ . այլ եղև ինձ

յագարայ որդի, որ՝ ունի ժառանգել զիս ։ Այլ Տէր ասաց նմա. և զիսմայէլ օրհնեցից և աճեցուցից ըստ խնդրոյ քում, այլ ես յետ տարւոյ միոյ տաց քեզ որդի և 'ի սառրայէ՝ իսահակ անուն (որ թարգմանի ծիծաղ կամ խնդութիւն). և նա եղիցի զաւակ ուխտի իմոյ և աւետեաց. զոր և հաստատեաց տեսիլ երից հրեշտակաց, զորս յանդգէտս ընկալաւ աբրահամ. և յայնժամ առաւել յայտնու-թիւն տուան նմա և սառրայի աւետիք վասն ծննդեանն իսահակայ. և գիտաց աբրահամ, եթէ ինքնին Տէր ցուցաւ նմա 'ի դէմս միոյ 'ի հրեշտակաց. որ էր նշանակ բանին Այ որ հանդերձեալ էր երևիլ 'ի մարմնի 'ի զաւա-կէն աբրահամու ։

Յայնմ վայրի յայտնեաց նմա Տէր և զպատուհասն իւր 'ի կործանել զսոդոմ և զգոմոր. և ա-բրահամ միջնորդէր թախանձանօք, զի մի կո-րիցեն և արդարք ընդ մեղաւորս, և մանա-ւանդ տունն ղովտայ. զի կարծէր թէ գտանէ յիսուն կամ քառասուն, գէթ երեսուն կամ քսան, և առ յոյժ նուաղագոյնն՝ տասն ար-դարք գտանիցին 'ի քաղաքին. և իբրև իմա-ցաւ՝ եթէ ոչ գտանի և այնչափ, լռեաց ։ Նոյն երկոքին հրեշտակքն՝ որք գնացին 'ի կործանել զսոդոմ, ազատեցին զղովտ և ըն-տանիս նորա՝ առաւել 'ի շնորհս աբրահամու ։

Այլ եղև յետ պանդխտելոյ աբրահամու 'ի գերարա, ուր և վասն սառրայի կնոջ նորա պա-տուհասեաց Աստուած զաբիմելէք արքայ գերա-րացւոց, և աղօթիւք աբրահամու բժշկեաց զտուն

զատուն նր, 'ի կատարման սահմանին եղելոյ յնմ՝ 'ի հարիւրերորդ ամի աբրահամու ծնաւ 'ի սարրայէ խոստացեալ զաւակն աւետեաց իսահակ, որ և սահակ. զաւակ օրհնեալ, և արմատ օրհնութեան աւետեաց. զի էր կենդանագիր ածորդւոյն եղելոյ 'ի զաւակէ նր որդի մարդոյ, ոպ և աբրահամ հայրն հաւատոց եղև արժանի լինել պատկեր կամ օրինակ հօրն երկնաւորի ։

Սա ո՞ր բան բաւական իցէ պատմել զխնդութիւն աբրահամու 'ի ծննդեան իսահակայ, յորում տեսանէր ոչ միայն զլրումն ժամանակեան խոստմանց, այլ և զկատարումն խորհրդոցն այ մե խոստացեալ փրկչին քի 'ի զաւակէ իւրմէ ։ Մ՝ինչ զի ը վկայելոյ նորուն իսկ ածն՝ ցանկայր աբրահամ տեսանել զօրն քո. ոպ և ետես յօրինակին, և ուրախ եղև իսահակաւ, որ է ուրախութի և ծը անուանն ։ Նոտես և յետ աճելոյ զաւակին նաև զխորհուրդ պատարագելոյ զատկին այ 'ի զոհարան խաչի, յորժամ հրամայեցաւ նմա 'ի ածնէ զոհել զմիածին և զսիրելի զորդի իւր զիսահակ. և նա առանց ը բանս ինչ ածելոյ՝ փութացաւ զենուլ զորդին, յորոյ վերայ էին ամ խոստմունք այ. և 'ի հանդէս կատարեալ հնազանդութե՝ վկայեցաւ յայ զոր ճշմարիտ երկիւղած և ածաւէր. և կրկին կրկին ընկալաւ յայ զօրհնութի խնքն և զաւակ իւր օրհնեալ. որոյ փոխան հրամայեցաւ զոհել զխոյն կախեալ զծառոյն սաբեկայ. և 'ի վերայ նորա նահապետն, թէ

՚Ռեբեկա, աղաչեաց Իսահակ զՏր վս նորա. և յղացաւ Ռեբեկա մանկունս երկուորեակս, ՚և խաղացին մանկունքն յորովայնի նր, այլ թէ ելեալս զմիմեամբք առնելով կամէին ՚ի ծնունդ. և անդրանկանալ՝ վս լինելոյ ժառանգ մեծամեծ աւետեացն խոստացելոց հօրն իւրեանց Իսահակայ: Այլ ՚ի հարցանել Ռեբեկայ զԱծ՝ ասէ ցնա Տր. երկու ազգք են յարգանդի քում, և երկու ժողովուրդք յորովայնէ քումմէ զատցին, և ժողովուրդ զժողովրդեամբ ելեալ անցցէ, և երէցն կրտսերոյն ծառայեսցէ:

Այլ եղև ՚ի ժամանակի ծննդեանն՝ ել նախ անդրանիկն շառագոյն և թաւամորթ, զոր անուանեաց Եսաւ, իմ չափահաս. և ապա ել եղբայր նր՝ որ բուռն հարեալ էր զգարշապարաց Եսաւայ, որպէս թէ ունի զբռամբ ածել և նուաճել զնա ընդ իւրև. վյ կոչեաց զանուն նր Յակոբ, որ թարգմանի խաբող. զի գիտէր՝ թէ նա թէպէտև կրտսեր, ունի հնարիւք երիցանալ. այլ և եղև իսկ:

Որ ՚ի զարգանալ երկոցունց՝ յակոբ պատճառանօք հնարեցաւ գնել յեսաւայ զանդրանկութիւն, իրագէտ գոլով և ՚ի մօրէն՝ որ առաւել սիրէր զյակոբ, թէ մեծամեծ խոստմունք կան յայն անդրանկին. և եսաւ անմտութեամբ իւրով դիւրագին վաճառեաց ընդ միոյ շիկաթանի զանդրանկութիւն արհամարհանօք. որով կորոյս զառիթ մեծ, ՚ի նշանակ այնոցիկ՝ որք արհամարհեն զշնորհս Այ. և այնպէս յակոբ այր ընդառուն և խոնարհ եր-

Երթալով երթայր և յառաջէր իբրև սիրելի ա՟յ և մարդկան, քան զնոսա՝ որ եղև այր զօ-րաւոր և վայրագ և հմուտ որսոյ, բայց ինքն իսկ որսացեալ եղև գլխովին. և ոչ եգիտ շնորհս առաջի ա՟յ և մարդկան :

Նա մինչդեռ էր Իսահակ ա՟մ տասմբ իւրով առ ջրհորով երդմանն յերկրին քանանացւոց, եղև սով. վ՟ն խորհեցաւ իջանել յեգիպ-տոս. այլ սպասէր ակնարկութեան ա՟յ : Նա երևեցաւ նմա տ՟ր, և ասէ. մի իջաներ յե-գիպտոս, այլ պանդխտեայց յերկրիս յայս-միկ, և ես եղէց ը՟ քեզ, և օրհնեցից զքեզ, զի քեզ և զաւակի քում տաց զա՟մ երկիրս զայս, և հաստատեցից զերդումն՝ զոր երդ-ուայ աբրահամու հօր քում. և բազմացու-ցից զզաւակ քո իբրև զաստեղս երկնից. և օրհնեսցին 'ի զաւակի քում ա՟մ ազգք երկրի : Նա գնաց Իսահակ առ աբիմելէք արքայ փղշտացւոց առ բարեկամն հօր իւրոյ 'ի գե-րարա. և սերմանեաց սերմն յերկրին յայն-միկ, և եգիտ 'ի տարւոջն յայնմիկ հարիւրա-ւոր զգարին. զի օրհնեաց զնա տ՟ր. և բարձ-րացաւ այրն, և երթայր յառաջադէմ և մե-ծանայր, մինչև եղև մեծ յոյժ. վ՟ն 'ի նա-խանձիլ ը՟ նա փղշտացւոց՝ ասէ ցնա աբիմե-լէք. երթ գնա 'ի մէնջ, զի կարի զօրագոյն քան զմեզ եղեր :

Նա Իսահակ հեզութ՟բ մեկնեցաւ անտի. և կրեաց վիշտս և նեղութիւնս բազում 'ի յա-չաղկոտաց, ուր բիւր անգամ խցին զջր-հորս նորա՝ զորս տայր բանալ աստ և անդ. այլ

կալ՝ յետ մահուն հօրն. իսկ յակոբ խրա-
տու մօրն, համեղերձ կրկին եւս օրհնու-
թեամբ հօր իւրոյ, մեկնեցաւ գնաց 'ի մի-
ջագետս առ լաբան քեռի իւր, մինչև անց-
ցէ ցասումն եղբօր իւրոյ: Այլ 'ի գնալ յակո-
բայ զճանապարհայն՝ յորժամ ննջեաց ուրեք
գիշերի, ետես զսքանչելին զայն աստիճան երկ-
նաչափ սանդղոց, ը̃ն որ ելանէին և իջանէին
հրեշտակք ա̃յ, և տ̃ր հաստատեալ կայր 'ի
գլուխ սանդղոցն. և ասէ. ես եմ տ̃ր ա̃ծ
աբրահամու հօր քոյ, և ա̃ծ իսահակայ. մի
երկնչիր, զի երկիրդ՝ յորում դուդ ննջեցեր,
քեզ տաց զդա և զաւակի քում. և եղիցի
զաւակ քո իբրև զաւազ երկրի, և ը̃տարածա-
կեսցի ընդ չորեսին կողմանս երկրի. և օրհ-
նեսցին 'ի քեզ և 'ի զաւակի քում ա̃մ ազգք
երկրի. և ես աւասիկ ը̃ն քեզ եմ՝ պահել ըզ-
քեզ յա̃մ ճանապարհս քո՝ ուր և գնասցես.
և դարձուցից զքեզ յերկիրս յայս. զի ոչ
թողից զքեզ, մինչև արարից զա̃մ ինչ՝ զոր
խօսեցայ առ ը̃ն քեզ:

Այլ զարթեաւ յակոբ ահիւ մեծաւ և խըն-
դութը̃. և ասէ. տ̃ր է 'ի տեղւոջս յայսմիկ,
և ես ոչ գիտէի. ահեղ իմն է տեղիս այս. և
ո՛չ է սա, եթէ ոչ տուն ա̃յ, և այս է դուռն
երկնից: Այլ յարուցեալ էառ զվէմն՝ զոր ե-
դեալ էր ը̃ն սնարս իւր, և կանգնեաց զնա
արձան, և եհարկ իւղ 'ի գլուխ նը̃, զի չունէր
ինչ այլ 'ի ձեռին 'ի պահուն մատուցանել ա̃յ
'ի պատարագ գոհութե̃. և կոչեաց զանուն
տեղւոյն այնորիկ բեթէլ, զ̃ տուն ա̃յ. և

ուխ

ուխտեաց ուխտ այ, զի 'ի յաջողել ճանա-
պարհի իւրոյ և դարձի անդրէն 'ի տուն հօր
իւրոյ՝ վէմն այն կանգնեալ եղիցի ինքեան
տեղի տաճար այ . և յամէ՝ զոր տացէ նմ ած,
տացէ տասանորդս քահանայից նորա :
Եւ յայնմ հետէ զուարթացեալ սրտին յա-
կոբայ 'ի տեսլենէն այ՝ հաստատեալ էր խոր-
հրդովք 'ի գլուխ սանդղոցն 'ի տր ած իւր,
և ինքն նմանեալ հրեշտակի՝ ակնունէր վերե-
լոց 'ի ժամանակին, յորում բացցի դուռն
երկնից 'ի ձեռն զաւակին խոստացելոյ . և
այնպէս թէպէտև յերկրի կայր, այլ քա-
ղաքավարութի նր յերկինս էր . և նայլն
ածային տեսլեամբ և խոստմամբք մխիթա-
րէր յամ տառապանս պանդխտութե իւրոյ :
Եւ յորմէ հետէ եմուտ յանկոյս 'ի խառան
'ի տուն լաբանայ ասորւոյ՝ եղբօր մօր իւրոյ,
ոչ եղև հանգիստ . այլ հանապազ 'ի ծա-
ռայութի և 'ի վաստակս էր, և զրկանս և
նեղութիս կրէր անընդհատ :
Եօթն ամ ծառայեաց լաբանու 'ի կարգի
հովուութե՝ առ առնուլ զռաքէլ դուստր նր .
և խաբեաց զնա լաբան՝ տալով զլիայ զոչ
գեղեցիկն, զի հարկեսցի ծառայել այլ եւս
եօթն ամ վասն ռաքելայ . և յանկարծ յանձն
էառ սիրով և հեզութբ, միայն թէ կանխա-
տացի նմա և ռաքէլ . զի այն էր նախկին խո-
ստացեալն իւր օրինօք : Եւ ծնեան յակոբայ 'ի
խառան մետասան որդիք յերկուց կանանցն,
և յերկոցունց նաժշտաց նր, 'ի միջոցի անդ՝
երկրորդ եօթանց ամաց ծառայութեն : Եւ
եղև

եղև 'ի չորեքտասաներորդ ամի գալստեանն յակոբայ 'ի խառան , յորժամ ծնաւ զյովսէփն գեղեցիկ՝ զաւակ առաջին 'ի հռաքէլայ ցայն վայր ամուլ մնացելոյ , կամեցաւ յակոբ դառնալ առ հայր իւր իսահակ . այլ 'ի նեղել զնա լաբանու վն վարձուց ծառայութե նր , որոշեաց յակոբ իւր խաշինս ըստ գունոց՝ 'ի խաշանց լաբանու , և յանձն էառ հովուել և զնորայն այլ ևս ժամանակս . զի տեսցի՝ թէ ո՞յր խաշինք բազմանան , և յայտնի լիցի՝ թէ արդար վաստակօք անկանին նմ այնչափ խաշինք . և եկաց ամս վեց յայսմ ևս ծառայութե , և բազմացան յոյժ խաշինք յակոբայ քան զլաբանու ։

Նաև իբրև լցան քսան ամք կալոյ նր 'ի միջագետս , յորոց զամս չորեքտասան ծառայեաց վն դստերաց լաբանու , և զամս վեց վն խաշանց նր , տեսեալ թէ ոչ թողու զնա աներ իւր բռնաւոր , էառ զընտանիս իւր և զամ ազխս , և գաղտ խուսեաց 'ի նմանէ . և 'ի պնդել լաբանու զհետ նորա՝ յանդիմանել յայ 'ի տեսլեան՝ հարկեցաւ մեղմով խօսել ը յակոբայ . և արձակեաց զնա խաղաղութ ։ Եւ յակոբ գնաց զճանապարհս իւր . և հայեցեալ ետես 'ի վր ճանապարհին զբանակ այ բանակեալ , և ընդ առաջ եղեն նմա հրեշտակք այ . որով յայտ արար նմա ած , թէ ինքն էր՝ որ պահեաց զնա և պահէ յամ ժամանակի . և զօրացաւ յակոբ , և գիտաց՝ եթէ փրկէ զնա տր և 'ի ձեռաց եսաւայ եղբօր իւրոյ , յորմէ կասկածէր ։

Այլ երբեւ առաքեաց զծառայս իւր 'ի հաշտե-
ցուցանել զերեսս եսաւայ պատարագօք եւ
խոնարհ պատուադամութբ` կոչելով զինքն
ծառայ նորա, մնջեաց յակոբ զայն գոչէր 'ի
հոգւոյ` կարդալով առ Ած. եւ ապա յարուցեալ
զիշերայն խաղացոյց զբանակն իւր յառաջ. եւ
ինքն մնաց զկնի առանձինն։ Այլ ահա մա-
տեաւ առ նա հրեշտակ 'ի դիմաց բանին Այ
'ի կերպարանս որդւոյ մարդոյ, եւ մարտեաւ
ընդ յակոբայ մինչեւ ցառաւօտ. եւ իբրեւ ետես
հրեշտակն` եթէ անյաղթելի կայ յակոբ,
բուռն եհար զամոլաձիգն զրստին նր եւ ըստ-
մացոյց. եւ ասէ ցնա, արձակեա՛ զիս, քանզի
այգ եղեւ. եւ նա ասէ, ո՛չ արձակեցից զքեզ,
եթէ ոչ օրհնեսցես զիս։ Այլ հրեշտակն 'ի
կողմանէ Այ ետ նմա օրհնութիւն նոր` փոխելով
զանուն նր 'ի խորհուրդ սքանչելի. յայնժամ`
հրեշտակ ասէ` ո՛չ կոչեսցեն զանուն քո Յակոբ,
այլ` Իսրայէլ եղիցի անուն քո. զի ժուժկա-
լեցեր ընդ Այ, եւ ընդ մարդկան զօրաւո՛ր լիջիր.
քանզի Իսրայէլ թարգմանի յաղթող Այ, այլ
հաստիկօրէն տեսողականի 'ի մեզ Ածատես,
կամ որ նոյն է` բնեանատես։ Յաւել եւ յակոբ
հարցանել զանուն երեւեցելոյն. եւ նա ասէ.
զի՞ հարցանես զանուն իմ. յայտ ա-
րարեալ` թէ Ած է անանուն եւ անսահմանելի.
այլ օրհնեաց զնա երկնաւոր օրհնութբ. եւ
եղեւ 'ի նմանէ աներեւոյթ. եւ յակոբ կոչեաց
զանուն տեղւոյն փանուէլ, որ է տեսիլ Այ, կամ
երեւումն Այ. զի տեսի ասէ զԱծ դէմ յանդի-
մանս, եւ ապրեցաւ անձն իմ. եւ այս նմ հայեր
'ի

անձամբ զմանկանցն ընթերցեալ կատարելոյ 'ի ծննդեանն քո ։ Յետ այսորիկ հասեալ իջելն 'ի քերթողն՝ եգիտ զհայր իւր զքահանայն կենդանի ։ և եկաց մեծ նահապետն քահանայ յայնմ հետէ այլ ևս ամս իբր հնգետասան ։ և լցեալ զաւուրս իւր՝ մեռաւ 'ի հասակի հարիւր և ութսուն ամաց ։ և թաղեցին զնա յակոբ և եսաւ որդիք իւր, որք յայնժամ անցեալ էին զհարիւրամենիւք ։

Սոյն այնուհետև զանեղի կալաւ յակոբ յերկրին քանանացւոց պանդխտութեամբ իբրև զհայրն իւր ։ մինչև փառն անցիցն յովսեփայ՝ որոյ վաճառումն յեղբարց իւրոց եղև յառաջ քան զմահ իսահակայ, յորժամ բարձրացոյց ած̅ զյովսէփ յեգիպտոս, 'ի հրաւիրմանէ նր̅ էջ յակոբ ամ̅ տամբ իւրով յեգիպտոս ։ և եկաց անդ ամս եօթնևտասն, և անդ վախճանեցաւ հարիւր քառասուն և եօթն ամաց ։ այլ նա̅ պատուիրելոյ իւրոյ երդմամբ՝ բերեալ եղև 'ի յովսեփայ փառօք յերկիրն քանանացւոց, և թաղեցաւ ընդ հարս իւր ։ զի յայտնի լինիցի՝ թէ այն երկիր է, զոր խոստացաւ տալ ած̅ 'ի ժամանակի իւրում որդւոցն իէլի, և մի բաժանեսցի 'ի հարց իւրոց յիսահակայ և յաբրահամէ ։

Սոյնպիսիք ամենք էին այս երեք անձինք՝ ածարեալ նահապետք, բարեկամք այ̅ բարձրելոյ, աբրահամ, իսահակ, և յակոբ, նախահարք որդւոյն այ̅, և հիմունք հին և նոր եկեղեցւոյ ։ որոց ոչ ամօթ համարեցաւ ած̅, այլ՝ պարծանք յաւերժական, կոչիլ նց̅ ած̅ ։

ես եմ ասելով սմա` ած աբրահամու, ած
իսահակայ, եւ ած յակոբայ, կամ որ նոյն է`
տր ած իէլի։ Սմ իմիք նմանեցուցանք զմն-
տեւալքս մէ` զզարդարեալն ածային եւ գեր-
մարդկային քաղաքավարութի, բայց երից
ածաբանական անուանեալ առաքինութեց.
աբրահամ` հաւատոյ պատկեր ճշմարիտ`
հայրն հաւատոց. իսահակ` յուսոյ տիպ գե-
ղեցիկ յնմանման. եւ յակոբ` սէր ույ բոլորո-
վին, ընդ ած միացեալ. քանզի ած սէր է։ Նոյ-
ահա այսպիսեաց ծնունդ առաքինութեց հա-
րազատ` գտաւ մի միայն յովսէփն ընտրեալ
յորդիս յակոբայ, բարեգործութեց ածի օրի-
նակ եւ գործօնեայ սքանչելի, հայրենակա-
նացն հետեւօղ առաքինութեց, եւ իւրք իւրք
գերազանցեալ զհարսն. զորոյ զպատմութին
ախորժելի սերտ 'ի բերան ունին ամենեքին.
այլ ինձ ախորժական` զի առաքինի քաղաքա-
վարութի նոր մի առ մի անցանել մեզ յօրինակ։

# ՅԻՇԱՏԱԿ

Յովսեփայ Նահապետի։

Հ. փետր. 29. եւ մայիս։

ՍՐԲԱԶԵԱԼ ԱՅՐՆ ՅՈՎՍԷՓ` սիրեցեալ յաչս հօր իւրոյ իէլի վս լաւութեն առաւել քան զայլ մետասան որդիս իւր, անդստին 'ի մանկութէ լցեալ հոգւոյն ած` խելամուտ

եղև ամենայնին յայտնութեանց 'ի ձեռն երազաց. զի եօթնևտասան ամեայ էր՝ յորժամ ետես զե-րազն, զոր պատմեաց եղբարց իւրոց. որով գուշակեալ լինէր մերձին փառաւորութիւն նր, մինչև երկրպագութիւն առնուլ յնմ եղ-բարց իւրոց և 'ի ծնողէն։ Այլ քանզի պատրաստ էր նմ յօրինակ քնի՝ նախ չարչարիլ, և ապա մտանել 'ի փառսն յայն, վասն և 'ի նշանակ փրկչին վաճառեալ լինէր յեղբարցն՝ ըն խոր-հրդոյ յուդայի եղբօր իւրոյ, հլութ և հնա-զանդութ՝ 'ի կրել զնեղութիւս ամ. զի ամ նեղութիւն յառաջէ քան զհանգիստ, նոյն-պէս և նախանձն կից է ըն պատուոյ և փառոյ արժանաւորաց՝ 'ի նեղել զնա և 'ի հալածել. այլ այն իսկ է նշանակ և առիթ բարձրութե խոնարհաց և համբերողաց. որոց գլուխ ճա-նաչի 'ի հնումն կերպարանն յսի յովսէփ։ Ո՞վ վաճառեաց զյովսէփ, հարցանէր ոմն 'ի ոհյ. և ոչք լուծանին, ասեն. եղբարքն վա-ճառեցին. և նա ասէ, ոչ, այլ՝ հնազանդու-թիւն և խոնարհութիւն նր վաճառեաց զնա. զի անմռունչ եկաց իբրև զգառն առաջի կտրչի ըն նմանութե ամն. ապա թէ ոչ՝ եթէ բողոքեալ էր նր առ զնօղս, եթէ եղբարք իմ ասեն՝ ոչք զիս յանիրաւի վաճառեն, և կամ եթէ ասացեալ էր, զոյ իմ հայր կենդա-նի՝ այր մեծատունն և մեծանունն, չառանուլին յանձն զնել զնա իսմայելացիք (այն են մա-դիանացիք օտարեալք յիսմայելէ 'ի հօրեղբօ-րէն յակոբայ), այլ գուցէ դարձուցանէին ևս զնա ողջանդամ առ ինքն, և պատուէին մե-ծաւ

Ծամեծս տանութին 'ի նմանէ :

Վերկելն վաճառի յովսէփ յեգիպտոս ընդ զգե-րի 'ի տուն դահճապետին փարաւոնի ար-քայի եգիպտացւոց · ստարացեալն 'ի տանէ հօր իւրոյ՝ միայնացեալ նստի 'ի մէջ բարբա-րոսաց · բայց չէր միայն, զի ընդ էր Տէ նմա · յանձանձեալն 'ի ծնողաց՝ անմխիթար մնայ 'ի ձեռս օտարաց · այլ սիրտ նր̃ մխիթարեալ էր 'ի տր̃ ած̃ իւրն հօր իւրոյ · զաւակ սիրուն յաչս ծնողին՝ ծառայանայ ընդ օտարաւոյ վ̃ն սիրոյ ած̃ · ծաղկեայ պատմուճանաւ զար-դարեալն 'ի յակովբայ՝ զենջակ ստածեալ ծառայական ձեռով տապաս տանի ցածութբ̃ առն այլազգւոյ եգիպտացւոյ · ուր Տէ համ-բերութե վշտաց պանդխտութե փայլէին 'ի նմա ընդ առաքինութիւք, համդերձ ան-ձանձրոյթ աշխատասիրութբ̃ եւ հաւատար-մութբ̃ եւ պարկեշտութբ̃ · զի շնորհք ած̃ էին 'ի վերայ նորա :

Վասն որոյ իբրեւ գիտաց տէրն նր̃, թէ տր̃ է Տէ ընդ նմ̃, եւ զամ̃ զինչ եւ առնէր՝ տր̃ յաջողէր 'ի ձեռս նր̃, կացոյց զնա 'ի վր̃ ամ̃ տան իւրոյ · զոր եւ օրհնեաց տր̃ 'ի շնորհս յովսեփայ : Եւ էր յովսէփ ազնիւ երեսօք, եւ գեղեցիկ տեսլեամբ յոյժ · այլ առաւել ցուցաւ գեղեց-կութի հոգւոյն, եւ լուսափայլութի ներքին մարդոյն Է դէմ խաւարին խորհրդոց չարին : Քանզի տեսեալ բանսարկուին, եթէ նա-խանձ եղբարցն յովսեփու առ 'ի յիւրմէ թէ լադրեալ ինչ ոչ վնասեաց նմա, այլ առիթ-եղեւ վարձուց առաքինութե, ինքն զմահա-

զէն նախանձ իւր արկաւ զիւրեաւ՝ զնել զայթակղութի արդարոյն. 'ի ձեռս առնոյր զՀին զէնն իւր զկինն՝ դրդելով զկին ած յովսեփու ընդդէմ պատուանւոյն ։ Նայց 'ի դերև եղանէր պիղծն, և յամօթ լինէր հանդերձ գործակցաւն. ուր ողջախոհն յովսէփ՝ հայելի անարատ մաքրութե ոչ թողացոյց շնչով անգամ պղծախոհին աղարտել զսրբութի անձին իւրոյ. այլ զերեսս 'ի բաց դարձուցեալ՝ բացէ 'ի բաց հերքէր զանօրէն հրապոյրս տիկնոջն, և հաստատ սուսերբ բանին ած միջակտուր առնէր զօձն թունաւոր. զիարդ առնիցեմ աւէ զբանդ զայդ չար և զմեծ, և մեղանչիցեմ առաջի ած ։ Ուսցին առաքինիք զայս սուր երկսայրի շողացուցանել ընդդէմ փորձութեց չարին, և յաջ և յահեակ հասցեն փութապէս զամ փուտ շառաւիղս մեղաց. դիտելով զչարն ընդ ինքեան չառնել լի, և 'ի մեծ չարեն մեծապէս փախչել լի. արդ որ ինչ հակառակ է օրինացն ած՝ է մեծն 'ի չարիս, այն իսկ է մեղքն. որ յոր խորշս խաւարինս և գործիցի, առաջի ած գործի. և ոչինչ ծածկի յամենատես աչաց նորա ։

Յայնուհետև 'ի յետին ձիգն բերել սատանայի՝ 'ի փոխ էառ զձեռս կնոջն, և բուռն հարեալ զձորձոց արդարոյն՝ կարծէր կաշկանդել զնա անձողոպրելի 'ի թակարդս մեղաց ։ Իսկ նահատակն զի՞նչ. իբրև 'ի հրոյ 'ի բաց ստուցեալ՝ թողու զձորձս 'ի ձեռս բռնողին, և փախչի 'ի ձեռաց նր. զի մի հրա

դար

դարշուն կոոճեալ 'ի հանդերձս՝ շաղախեա-
ցէ զոգի նր՟ նր՟. ահա յաղթութի՟ն գեղեցիկ՝
փախչելով վանել, և մերկամարմին ըմբշա-
մարտութ՟բ՝ մնալ անըմբռնելի. որոյ յաղ-
թանակ 'ի տնէ՝ որ հանդիսադիրն է զօրա-
կանաց իւրոց, զգեցուցանել նմ՟ պատմու-
ճան շնորհաց, և պսակ դնել փառաց, և
տալ 'ի ձեռս զաւազան արքայութե՟ն ըս՟ յով-
սեփայ ։

Մ․ՅԼ այն՝ որ կամէր զսիրելին իւր ընդ նմ՟ հանդէս անցուցանել առաքինի ճգնութե՟ն, և բազմայաղթ մրցանօք բազմապսակ զարդարել, ոչ յայտնեաց առ օրին զանմեղուի՟ն յովսեփայ. այլ թոյլ ետ՝ զի ըս՟ չարախօսութե՟ն չար տիկնոջն իբրև մեզապարտ 'ի բանտ արկցի անպարտն ։ Նշանի՛ տամ յովսեփու բանտարգել եղելոյ յանիրաւի վասն ճանապարհին արդարութե՟ն ըս՟ նոր օրինացս շնորհի ըս՟ առաքելոց, քանիրաւամբք մերաբազմելոյ յերկրորդ զահ փարաւոնի. զի տուն բանտին եղև նմա դպրատուն առաքինուե՟ն, աթոռ քարոզուե՟ն ճշմարտութե՟ն, և վկայարան մարտիրոսութե՟ն. իսկ այլոց պատժաւորաց մէջ պտարան ուղղուե՟ն, և դաճիրայ պատգամաւորութե՟ն յանծակոյս կողմանէ. զի զոր ի՞նչ և հարցանէին՝ որք դայինն առ նա, իբրև 'ի բերանոյ նմյ լսէին զանվրէպ լուծումն տարակուսանաց ։ Մ՟ինչ զի և բանտապետն՝ որ տէրն էր յովսեփու, մոռացիւր ծառայանայր նմա սիրով, յանձնելով զամ՟ իշխանուե՟ն 'ի ձեռս նր՟. զի տէրն տիեզերաց էր ըս՟ նմա ։

զանէին, և ծառայս անուանէին նց ոչ միայն զանձինս, այլ և զհայր իւրեանց զԻէլ: Տակաւին պնդէր զանձն յովսէփ փառաւորեալն յեղբարց իւրոց չյայտնել զանձն. զի մի՛ լիցի անձնացոյց, այլ եղբարքն ինքնին ծանիցեն զնա. Իսկ նք առ անակնկալ գիւտուածոյն՝ անկարացան ճանաչել զիւրեանց հարազատն. և այնպէս յովսէփ՝ որ ճանաչէր զոչ ճանաչօղս իւր, և սիրէր զոչ սիրօղսն, գորովէր և խորովէր յաղեկիզմանէ սիրոյն:

Այնուհետև 'ի հնարս մտանէր՝ խաղալ ընդ եղբարս իւր խաղ եղբայրական խրատու, որ կարօղն էր միանգամայն բանալ զաչս նց. մեծարէր զնս՝ առանց փոքրկացուցանելոյ զանձն յաչս նց, զի ծանիցեն՝ թէ ո՞վ էր ինքնին մեծացոյց զփոքրն յամենեսին. գգուէր իբրև սիրելիս, և ձգնէր զնոսա վերանալ 'ի միտս զգաստութե. զՇմաւոն առաւել 'ի նեղ արկանէր, զի զառաջնորդն եղբայրատեցութե՝ յեղբայրաճանաչութիւն նախ ձգեսցէ, և նովաւ զայլսն 'ի նոյն առաջնորդեսցէ: Իբրև ետես՝ եթէ առապատեալ են միտք նց, զբենիամին զկրտսերն իւր հարազատ տայր բերել պատճառանօք. զի թերևս անմնախանձն համամօրն՝ ծանիցէ զնախանձելին իւր եղբայր. և 'ի նը ևս անգիտանալ 'ի պաշարմանէ չար համբաւոյն՝ եթէ գազանակուր եղև եղբայր իւր երէց, արդ ինքնին յովսէփ տայր նց գիտել պարզապէս. զի մի յառաւել վարանմանց՝ աւելի ք զչափն նեղեսցին: Ասէ յովսէփ ցեղբարս իւր. Ես եմ յովսէփ.

ով

ոչ թէ տանել . ես եմ յովսէփն այն տառա-
պեալ, որ փոքրիկն էի 'ի մէջի ձերում, և
յաչս ձեր անպիտան . և արար զիս Տէր պի-
տանի, և այնպէս փառաւորեաց՝ ոնց տեսա-
նէք դ . այլ ես նոյն եմ, և ոչ փոխեցայ . զի
ոչ փքացայ փառօք և մեծութեամբ, այլ տակա-
ւին անպիտան եմ յաչս իմ: Ոայս և առա-
ւել քան զայն կարէր առնել յովսէփ . այլ
զգուշացաւ, զի մի յամօթ արասցէ զեղբարս
իւր, և մի կարի ձմլեցուսցէ զսիրտս նոցա .
միայն զիւրոյ սրտի զձմլումն 'ի վերայ էած .
ասէ . արդարև տակաւին կենդանի՞ է հայրն
իմ: Սակայն և ոչ այդմ բանի կարող եղեն
նոքա տալ պատասխանի . զի խռովեցան յերեսաց
նորա, և ալէկոծ ծփանօք խորհրդոց յա-
պուշ կրթեցան ը խորհուրդն ոյ :
Յայնժամ յովսէփ խանդաղատեալ զնոքօք՝
համարձակեցուցանէր մօտ մատչել առ նա
իբրև առ ընտանի հարազատ, և քաջալե-
րեալ սրտապնդէր սիրողապէս . ես եմ ասէ
յովսէփ եղբայրն ձեր, զոր դուք վաճառե-
ցիք յեգիպտոս . բայց մի խիստ տրտմիք, և մի
խիստ թուեսցի ձեզ, զի վաճառեցիք զիս
այսր . քանզի 'ի փրկութիւն առաքեաց զիս ած
առաջի ձեր՝ առ 'ի թողլոյ ձեզ զաւակ յեր-
կրի, և կերակրել զամենեսին . և արդ ո՛չ
եթէ դուք առաքեցիք զիս այսր, այլ՝ ած .
և արար զիս հայր փարաւոնի, և տէր ամ տան
նր և իշխան ամ երկրիս եգիպտացւոց : Արդ
փութացեալ ելէք առ հայրն իմ, և ասասջիք
ցնա, ո՛չ վն իմ խնչ պարծանաց, այլ յաւրա-
խու-

խաւթին պատի ծերութեանս առանց մեզ, թէպէտ այս-պէս ասէ որդին քո յովսէփ՝ որ Է մեռեալն էր համարեալ. արար զիս տէր՝ տէր տան եր-կրիս եգիպտացւոց. արդ եկ էջ առ իս, և մի հեղգար: Սոյնպէս հօրպայր յովսէփ վասն ծնողին. այլ առաւել հօրպայր մեր եղբարցն, զի մի յառաւել տրտմութիւն ընկղմեսցին յե-շատակաւ չարեացն՝ զոր ընդ նմա անցուցին. Նմին իրի դարձեալ պատուիրէր նոցա՝ ասելով. մի զայրանայցէք ինչ 'ի ճանապարհի:

Զուարճացաւ իէլ իջանել յեգիպտոս ըստ բանին նմա 'ի տեսլեանն՝ տէր տամբ իւրով. և ել յով-սէփ փառօք և կառօք ընդ առաջ հօր իւրոյ գքաղջաց քաղաքաւն. և անկեալ զպարանո-ցաւ՝ լացին լալիւն մեծ 'ի մեծէ ուրախութէ. և ասէ իէլ ցյովսէփ. մեռայց այսուհետև, որովհետև տեսի զերեսս քո, զի տակաւին կենդանի ես: Սա եւ յովսէփ, և պատմեաց փարաւոնի. և նա բնակեցուցանել զտուն հօր իւրոյ յերկիրն գեսեմ յերկիր բարի և խաշնադարման:

Իսկ եղև 'ի լրանալ աւուրց իէլի՝ յորժամ երդուաւ յովսէփ ըստ խնդրոյ նորա չթա-ղել զնա յեգիպտոս, այլ ընդ հարս իւր յերկիրն քանանացւոց՝ յերկիր աւետեացն մեզ, երկիրպագ իէլ 'ի վերայ գլխոյ գա-ւազանի իւրոյ, այս է առ ծերութեան՝ յեցեալ 'ի գաւազան՝ խոնարհեցոյց զգլուխ իւր մին-չև 'ի վերին ծայր գաւազանին, և այնպէս երկիր եպագ յովսեփայ՝ որ էր իբրև առաքին ծայր գաւազանի ծննդոց իւրոց:

Իս

նորա փափաքելի օրհնութե ժառանգ. զատաւ
յովսէփ՝ իբրև նախանձելի առաքինութբ ՚ի
մէջ ամ եղբարց իւրոց :

Իսկ եղև յետ վախճանի և թաղման իէլի,
երկեաւ եղբարցն յովսեփու՝ անկան յոտս նր,
և հնարեցան խնդրել թողութի ՚ի նմանէ
վն անցիցն անցելոց՝ ոչ թէ ՚ի բերանոյ հօր
իւրեանց : Իսկ ելաց յովսէփ հեզն և անյի-
շաչար՝ վն բանիցն, զոր խօսեցան ը նմա. և
յասել նց, ահաւասիկ մեք ծառայք քո եմք,
յարոյց զնս և քաջալերեաց. ասէ. մի եր-
կնչիք, քանզի և ես այ եմ, և ածսիրութբ
և եղբայրսիրութբ՝ ծառայակից ձեր եմ. դուք
խորհեցայք զինէն ՚ի չարութի, և ած խորհե-
ցաւ վն իմ ՚ի բարութի. և այն ևս ՚ի բարիս
ձեր և ամենեցուն. որպս և եղև իսկ յաւուր
յայսմիկ, զի կերակրեցի ժողովուրդ բզմ.
մի երկնչիք, ես կերակրեցից զձեզ և զտունս
ձեր. և այնպէս մխիթարեաց զնս, և սփո-
փեաց զսիրտս նց :

Յետ այսորիկ եկաց յովսէփ այլ ևս ամս բա-
զումս, և ծերացաւ. և ասէ ցորդիսն իէլի
ցեղբարս իւր և ցզաւակս նոցա. ես աւասիկ
մեռանիմ. այցելութբ այց արասցէ ձեզ ած,
և հանցէ զձեզ յերկրէս յայսմանէ յերկիրն՝
զոր երդուաւ ած տալ հարցն մերոց՝ աբրա-
համու, սահակայ և յակոբայ : Իսկ երդմնե-
ցոյց զնս, զի ՚ի ժամանակին՝ յորում հանցէ
ած զորդիսն իէլի յեգիպտոսէ, հանցեն և
զոսկերս նորա : Իսկ վախճանեցաւ յովսէփ
ամաց հարիւր և տասանց. և թաղեցին զնա

՚ի

՚ի տապանի յեգիպտոս . մինչև յետ ամաց բազմաց՝ յորժամ եհան Մովսէս զորդիսն Իէլի յեգիպտոսէ, եառ Ը̃ իւր և զոսկերսն յովսեփու. Զոր և թաղեցին յետոյ ՚ի սիկիմ, ՚ի բաժնի ագարակին՝ զոր ստացաւ յակոբ յեմովրայ ամորհացւոյ. քանզի և զսիկիմ ետ յակոբ յաւանդին ժառանգութիւն յովսեփու արտաքոյ եղբարց իւրոց ։ (6)

# ՅԻՇԱՏԱԿ

## Մովսէսի, Ահարոնի, և Եղիազարու ։

Ել. գլուխ. 18 ։ Յ. Ն. գլուխ. 4 ։ Րողլմնդրեանն [illegible] . ՚ի Ե̃ հատ. գլուխ. երես . 6 = 177 ։ Փիլոն ։ Յովսեպոս ։ Գիր. Նէոս . ՚ի Մովսէս ։ և այլք ՚ի Նախնեաց ։



ՆԱԽԱՄԱՐԳԱՐԷՆ Մովսէս՝ մ̃ծախօս և մ̃ծամեծս, գլուխ տեսանողաց՝ քանզի և զրով, և արդեամբք նշանագործութեանց, մ̃ծ փարաւոնի կարգեալ յԱ̃յ, ընտանի ծառայ և հաւատարիմ բարեկամ Ա̃յ՝ բերան ՚ի բերան խօսակցութեամբ, որոյ նմանն ոչ յարեաւ ՚ի մէջ Իէլի, էր որդի Ամրամայ որդւոյ Կահաթու որդւոյ Ղևեայ՝ որդւոյ երանատեսին Իէլի յակոբայ, եօթներորդ յաբրահամէ ։ Եւ էր երեց եղբայր Մովսէ-

սի

որ աՀարոն՝ գլուխ քահանայութեան ղեւտացւոց. եւ քոյր նոցա աւագ քան զերկոսին՝ Մարիամ. Երեքեան եւս ընտրեալք յԱստուծոյ, եւ կարգեալք՝ ի փրկութեան տոհմին յակոբայ պանդխտելոյ յաւուրց անտի յովսեփայ յեգիպտոս :

Քանզի ՚ի բազմամեայ որդւոցն իսրայէլի յերկրի անդ պանդխտութեան, նախանձեցան եգիպտացիք. եւ յաւուրս թագաւորին՝ որ ոչ ճանաչէր զյովսէփ, հնարեցան չարչարել զազգ նոցա ազգի ազգի տառապանօք. եւ զի ընդ յաճախել նեղութեանց՝ եւս քան զեւս աճէին ՚ի բազմութիւն, հրաման ետ փարաւոն արքայ անողորմ ընկեցիկ առնել ՚ի գետն նեղոս զնորածին արու մանկունս եբրայեցւոց : Յայնմ ժամանակի ծնաւ եւ կրտսերն յորդւոց ամրամայ, այն է կոչեցեալն յետոյ մովսէս. եւ անուն մօր նորա յովքաբեդ : Սա եւ իբրեւ ետեսին ծնօղքն նորա զմանուկն կայտառ իբրեւ հրեշտակ Աստուծոյ, թաքուցին զնա ՚ի տան ամիսս երիս. եւ իբրեւ ոչ եւս կարէին ծածկել, եդ մայրն զմանուկն ՚ի պրտուէայ տապանակի, եւ ընկեց ՚ի խաղ մի առ ափն գետոյն. եւ դիտէր քոյր նորա Մարիամ ՚ի հեռաստանէ : Այլ եղեւ խնամօքն Աստուծոյ, զի դուստրն փարաւոնի եկեալ զտապանակն՝ ետ ՚ի վեր առնուլ. եւ իբրեւ ետես զմանուկն՝ զի լայր, խանդաղատեցաւ ընդ նովաւ, եւ ասէ. ՚ի մանկանց եբրայեցւոց է սա : Յայնժամ մատեաւ Մարիամ առ նա իբրեւ յանդէտս, եւ ասէ. կամիս, զի կոչեցից քեզ կին մի դայեակ յեբրայեցւոց անտի, եւ սնուցանիցէ քեզ զմանուկդ,

օրինակ երէկ սպաներ զեգիպտացին ։
Զահի հարաւ Մովսէս , և ասէ , զիա՞րդ
այդպէս յայտնի եղև բանս ․ զի ինքն կար-
ծէր՝ թէ ոչ ոք գիտէ , եթէ ո՞ է սպանօղն
եգիպտացւոյն ․ այլ յետոյ իմացաւ , զի հա-
սեալ է բանն մինչև յունկն փարաւոնի , և
խնդրէ սպանանել զինքն ։ Մոյ փախեաւ
գնաց Մովսէս յերկիրն Մադիամու ընդ Մադիա-
նացւոց , և բնակեցաւ անդ պանդխտութ ․
մինչև փեսայացաւ Ռագուէլի Յոթորայ
քրմի տեղւոյն՝ մին ծառայութեան , զոր արար
՚ի նպաստ դստերացն նր , որք արածէին զխա-
շինս հօրն իւրեանց ։ Եւ ծնաւ անդ երկուս
որդիս ․ յորոց զանդրանիկն կոչեաց Գեր-
սամ , ընդ պանդխտութ կամ օտար ․ զի պան-
դխտեալ եմ ասէ յօտար երկրի ․ և զերկրորդն
անուանեաց Եղիազար , ընդ ած իմ օգնական ․
զի ասէ , ած հօր իմոյ օգնեաց ինձ , և ապ-
րեցոյց զիս ՚ի ձեռաց փարաւոնի՝ միանգամ
և երկիցս ։ Եւ եկաց Մովսէս ՚ի պանդխտութե
անդ ամս քառասուն ՚ի գործ հովուութե ,
զի արածէր զխաշինս աներոյ իւրոյ ․ մինչև
մեռաւ արքայն եգիպտացւոց՝ որ խնդրէր
զանձն նր ․ և նստաւ այլ թագաւոր՝ նոյնպէս
փարաւոն կոչեցեալ առ եգիպտացիս ․ և նա
և՛ս չարաչար տառապեցուցանէր զեբրայե-
ցիս ․ մինչև աղաղակել որդւոցն իէլի հառա-
չալ առ ած ․ և ած լուաւ նոցա և յիշեաց
զուխտ իւր՝ որ ընդ հարս նց ․ և այց արար նց
՚ի ձեռն Մովսէսի՝ ընտրեալ զհովիւն ոչխա-
րաց ՚ի հովուել զժողովուրդ իւր զիէլ ։

Սա զի էր այրն մանկաս՝ այր ա՟ծ սրտին ի՟յ ,
հեզ քան զա՟մ մարդիկ՝ որ ’ի վերայ երկրի ,
միանգամայն և փառէր ’ի նախանձ փառացն
ա՟յ , ուստի և անձամբ , և եղբայրսն ան-
նման՝ մինչև գնել զանձն ’ի մ՟ժ եղբարց ·
անփառացաւ , և խոնարհ , և լի հաւատովք ·
և այս է սանէն տառքելոյն · հաւատովք
մովսէս իբրև անձնաց , ուրացաւ կոչել որդի
դստերն փարաւոնի · լաւ համարեցաւ չար-
չարիլ ընդ ժողովրդեանն ա՟յ՝ քան առ ժամա-
նակ մի վայելել ’ի մեղս · կարևոր համարե-
ցաւ զնախատինսն ք՟ի քան զմեծութի գան-
ձուցն եգիպտացւոց · զի հայեցեալ անն ու-
ներ վարձուցն հատուցմանն : Այլ եթէ ակիզբն
նր այսպէս , քանի՞ ևս ընթացք կենացն յետ
կոչելոյ զնա ա՟ն ’ի մարգարէութիւն , և տալոյ նմ
զառաջնորդութի տանն իւրոյ մեծամեծ նշա-
նօք և արուեստիւք յեգիպտոս և յանապա-
տի զամս քառասուն · զորս չէ՛ տեղւոյս մի
առ մի երկարօտել :

Զի՞նչ ա՟մ առաքինութեանց խոնարհութեան նր
յայտնի եղև բազմօք յընտրութեան անդ իւ-
րում , յորժամ հրաժարէր բազում պատճա-
ռանօք , նրբաձայն և ծանրալեզու զինքն
անուանել · և թէ՝ չեմ խօսօղ ես · աղաչեմ
տէր զ՟քեզ տր , առաքեա ’ի ձեռն զայլ ոք զօ-
րաւոր՝ զոր առաքիցես · մինչև բարկացաւ
տր սրտմտութբ , և բանադատեաց զնա ’ի
պաշտօն առաքելութեն և առաջնորդութեն ,
տալով նմա գործակից զահարոն զեղբայր
նր · և յայնժամ յանձն էառ մովսէս : Այլ

Մ․Կ․ R նր

րատուՒ , յաղօթս եկաց մովսէս և բժշկեաց զնա ․ Թող զհաւատալին բարկութիւն՝ զոր առ- Թիւք իւրովք անցայց յաՀարոնէ 'ի ժամանակին , յորում անուաց նա ամբոխին , և արար զորթն պղնձի ։

Զարչարակից էր և աՀարոն յամ̃ ձգնութիւս եղբօր իւրոյ ․ զի Է նմա կրեաց զամ̃ վիշտս յեգիպտոս և յանապատի , և Ը նմա եբարձ զխստապարանոցութի ազգին իւրոյ ․ զի և զնա կամէին՝ երբեմն քարկոծել , երբեմն ընկենուլ 'ի քահանայապետութէ ․ այլ տր էր ընդ նմա , և բազում նշանօք արդարացոյց զնա , և յամօթ արար և սատակեաց զթշնամիս նր ․ և հաստատեաց զքահանայութի նր ուխտիւ , և յայտնի օրհնեցելովք գաւազանոյն ծաղկելոյ ։ Նոյնպէս և 'ի նշանագործութիւս ամ̃ էր գործակից մովսէսի աՀարոն ․ և բազում այն էր՝ զի ինքն անձնէր ըղնշանսն բանիւ մովսէսի ։

Եւ այլոց ասել զմեծամեծ խորհուրդս՝ որ յամ̃ գործս մովսէսի և աՀարոնի օրինակեալ լինէին՝ 'ի նշանակ տնօրէնութեանց փրկչին , և խորհրդոց նորս եկեղեցւոյ ․ որպ̃ գաւազանն մովսէսի՝ որ դարձաւ յօձ , և դարձեալ եղև գաւազան , որով գործեցան այնչափ նշանք յեգիպտոս , և նովին պատառեցաւ ծովն կարմիր՝ յօրինակ պատուականին և անենայաղթ խաչին քի ․ նոյնպէս և օձն պղնձի բարձրացեալ 'ի վը նշանակի՝ 'ի բժշկութի օձահարաց , յայտ առնէր զնն բարձրանալ 'ի խաչ վըՄ փրկութե հարուածեալոց 'ի հնոյ օձէն ․

Դնայն կերպ ըմբռնեալ և ահարանի՝ ոչ հոգացաւ ցածուցանել զսիրտ մոլեկսի, և յորդորել՝ որք պարտական էր, զի հանդարտեալ մտօք կատարեսցէ զգործ տիրական հրամանի. վասն երկոքեանն իսկ արգելան մտանել ՚ի պարգևական երկիրն։ Այսպէս խրատէ Տր զսիրելիս իւր, և ոչ անպատիժ թողու զոք և է ներելի յանցանս նոցա. ուր զատելիս իւր թողացուցանէ բազում անգամ յառաջիս առանց երևելի պատժոյ. որ է խստագոյն քան զամ պատուհաս, պահիլ պատուհասի ՚ի հանդերձեալն։

Ահարոն ննջեաց ՚ի կամս այ ՚ի հովր լերինն. և քահանայացաւ Եղիազար որդի նր Է նր, այր ընտրեալ և հաճոյ առաջի այ և ամ ժողովրդեանն իբրև զահարոն, և թերևս առաւել ևս քան զնա. զի ոչինչ պակասութիւն նշանակէ գիրն. ոք և որդի Եղիազարու փենեհէս՝ որ զնր կնի յաջորդեաց ՚ի քահանայութն, և ևս զօվելի զտաւ նախընծայ առաքինութն իւրով ՚ի նախանձայուզութի փառացն այ, և ազգովքն ժառանգ եղև քահանայութե։ Նայց Եղիազար էր՝ որ Է յեսուեայ էանց Է յորդանան, և ժառանգեցոյց որդւոցն իէլի զերկիրն աւետեաց։

Իսկ մովսէս ծառայ այն յետ ելանելոյ ՚ի լեառն նաբաւ, և տեսանելոյ անտի զերկիրն աւետեաց, յորժամ բանակեալ էր իէլ մօտ ՚ի յորդանան յանդիման երիքովի, հրամանաւ այն վախճանեցաւ յերկրին մովաբու, և թաղեցաւ ՚ի գայլի մերձ ՚ի տունն փոգո-

բայ՝ առէ զիր․ և ոչ ոք գիտաց զգերեզմանն նորա մինչև ցայսօր․ զի մի պաշտեսցեն զնա իբրև զԱստուած որդիքն Իսրայէլի վասն մեծամեծ գործոցն, զոր արար Աստուած 'ի ձեռն նորա ։ Այս էր Մովսէս ամաց հարիւր և քսանից 'ի վախճանելն իւրում․ և ոչ վատեցին աչք նորա, և ոչ խորշոմեցան ծնօտք նորա․ Թողեց աւել զայլ ևս փառաւորութիւն նորա յաւուրս լինելոյ նորա օրէնսդիր, զի լուսաւորեալ էին երեսք նորա, և ճառագայթք հատանէին 'ի նմանէ․ Մինչև արկանել քօղ զերեսօք․ Թո՛ղ և զանթարգմանելի օրինակ աստուածութեան նորա 'ի ծակ վիմին․ ուր տեսանել նմա զյետոյսն Աստուծոյ նշանակէր զհանդերձեալ տեսութիւն, որով տեսես զփառս Քրիստոսի 'ի Թաբորական լերին հանդերձ Եղիայիւ․ ընդ և քառասնօրեայ պահելն երկոցունց հայէր 'ի պահս փրկչին տեառն մերոյ ։

Սա ինքն նախամարգարէն Մովսէս գրեաց նախ հոգւով Աստուծոյ զհնգամատեանն նախնիկին գիրս Աստուածաշունչ տառից․ Զի են գիրք արարածոց կամ Ծննդոց, Ելից, Ղևտացւոց, Թւոց, և Երկրորդ օրինաց․ Ուր կարծեն յոմանս և Փիլոն եբրայեցիք, թէ Մովսէս ինքնին գրոշմեալ իցէ և զվերջին բանսն զմահուանէ իւրմէ․ զի մի կարծեսցի 'ի յետնոց, եթէ ոչ մեռաւ․ բայց առաւել է ստուգութիւն, եթէ եկեղեցին Իսրայէլի՝ կամ յեսու և Եղիազար արձանագրեցին 'ի կատարած մատենին ըզպատմութիւն վախճանելոյն Մովսեսի առն Աստուծոյ, հանդերձ բանիւն՝ որ յաւիտենական յիշատակ

տանկաց է արժանի . ցր է . * Այլ ոչ եւս ե-
,, կաց մարգարէ յիէլի իբրև զմովսէս, այր՝
,, զոր ծանեաւ տր դէմ յանդիման, ամենայն
,, նշանօք և արուեստիւք, զոր առաքեաց
,, զնա առնել յերկրին եգիպտացւոց՝ 'ի փա-
,, րաւոն և 'ի ծառայս նորա և յամ երկիր
,, նորա զնշանս մեծամեծս, զձեռն հզօր և
,, զբազուկ բարձր՝ զոր արար մովսէս առա-
;,, ջի որդւոցն իսրայէլի || : (7)

Եւ կարգեցաւ 'ի մովսիսէ հրամանաւ տն յաջորդ իւր՝ պաշտօնեայ նր յեսու զօրավար, որ և առ մովսեսիւ էր հզօրացեալ ընդդէմ թշնամեաց մարտնչելով յանուն տն. յայսմ է 'ի պատերազմէն՝ որ ընդդէմ ամաղեկայ, ուր փրկական զօրութի խաչին քի 'ի վխնուամն դիրհին՝ կենդանի նկարագրեցաւ 'ի գործս մովսեսի և յեսուայ միանգամայն. զի մովսէս յաղօթս կայր 'ի լերին բազկատարած որպ 'ի խաչի. և լինէր՝ զի 'ի վաստակել ձեռացն մովսեսի և 'ի թուլանալ՝ զօրանայր ամաղէկ. և 'ի վեր համբառնալն՝ զօրանայր բանակ յեսուայ. վն ահարոն և ովր օգնէին ձեռաց մովսեսի, և քարինս 'ի ներքոյ եդեալ 'ի վեր ունէին զբազուկս նր. որով իսպառ զօրացաւ յեսու, և 'ի գլուխ տարաւ զյաղթութի. այլ զառանձին գործս յեսուայ զկնի մովսեսի մնայ մեզ ասել և կա :

# ՅԻՇԱՏԱԿ

## Յեսուայ :

Հ. Յ. Ա. սեպտ. 1 : Բոլլանդեանն ընծայեալ 'ի ա. հատ. սեպտ. եջ. 6=77. և այլ :

ՅԻՍՈՒՍ ՓՐԿԻՉՆ ՄԵՐ անուանակից և օրինակ՝ յեսու որդի նաւեայ էր 'ի ցեղէն եփրեմի որդւոյ յովսեփայ. և օրհնութիւնքն իւրն առ յովսէփ և առ եփրեմ՝ առաւել լրացեալ 'ի յեսու կատարեցան. մինչ զի և փառամիութեամբ անուանէ, իբր փրկիչն անուան յովսեփայ՝ առաւել պայծառացաւ 'ի յեսու : Զի յառաջին իսկ անուան էր նորա ովսէ կամ օսէա, որ թարգմանի աղբերացուցիչ կամ փրկիչ. իսկ 'ի մովսիսէ կոչեցաւ յաւելուածով միոյ յոդի, իբր եօղայի՝ յովսէ կամ յեսու, որ է փրկիչ տն, ամին նոյն ընդ անուանն յսի. զի եթէ յս և եթէ յեսու միօրինակ գրին առ եբրայեցիս տառիւք նոցա ישוע, և նոյնօրինակ հնչին իհուշա, կամ եհօշուա, կամ յեշուահ :

Նորա յառաջագոյն էր յեսու գլխաւոր պաշտօնեայ մովսեսի՝ իբրև ծառայութեան աշակերտ նորա և փոքրաւոր. եղանէր և մնայր յամ ժամ էր մովսեսի առաջի տն և առաջի ժողովրդ-

վերջեանն . եւ ՚ի մտանել մովսեսի ՚ի խորանն նոյ՝ ՚ի սպասու կայր նմ յեսու առ դրունս խորանին վկայութեան աղօթականացութն որպ սարկաւագ . եւ ՚ի պահելն մովսեսի զքառասուն օրն եւ զքառասուն գիշեր ծոմով պահեաց եւ յեսու ը նմա . զի ը նմա էր ՚ի մք լերինն . եւ լսէր ՚ի բացուստ զպատգամսն այ՝ զոր խօսեցաւ ը մովսեսի ։ Եւ էր յեսու կուսան եւ որք՝ պատկեր Ճշմարտին յսի . միանգամայն եւ զօրավար բանակի նորա ՚ի փրկութի տանն իէլի՝ յօրինակ փրկչին մերոյ եւ զօրագլխի հաւատոց ։

Սա եղեւ մին յերկոտասան ցեղապետաց կմ ՚ի նահապետաց , որք առաքեցան ՚ի մովսիսէ ըս բանի նորա՝ լրտեսել զերկիրն աւետեաց . եւ ՚ի տալ այլոց տասանց համբաւ չար զերկրէն , միայն քաջն յեսու նաւեան իշխան ցեղին եփրեմի , եւ համանման նորուն քաղեբ որդի յեփոնեայ իշխան ցեղին յուդայ՝ բերին համբաւ բարի ։ Եւ իբրեւ տեսին զտրտունջ ժողովրդեանն , որք վատասրտեալ կամէին կացուցանել իւրեանց գլուխ զօրավար , եւ դառնալ յեգիպտոս , երկոքին սոքա յեսու եւ քաղեբ պատառեցին զհանդերձս իւրեանց . եւ խօսեցան ընդ ամ ժողովրդեան որդւոցն իէլի , եւ ասեն . երկիրն՝ զոր մեք լրտեսեցաք , երկիր բարի է յոյժ . եթէ հաճեսցի միայն ը մեզ ած , եւ տարցի յերկիրն յայն , եւ տացէ զնա մեզ , երկիր է՝ որ բղխէ զկաթն եւ զմեղր . բայց ՚ի տնէ միայն ապստամբ մի լինիցիք , եւ ՚ի ժողովրդենէ երկրին մի երկն-

չիք

կնչիք · քանզի կերակուրք մեր են · զի մեկ-նեցաւ 'ի նոցանէ տր, և ընդ մեզ է տր · մի՛ զանգիտիցէք 'ի նոցանէ։

Իսկ ամբոխն անսաստեալ՝ ձայն ետուն մի-մեանց, և կամէին քարկոծել զյեսու և ըզ-քաղէբ քարամբք, եղեալ 'ի բանս տասանց բանսարկուաց։ Յայնժամ փառքն տն երևե-ցան ամպով և ահարկութբ 'ի վրն խորանին վկայութե յանդիման ամ որդւոցն իէլի · և մեռան արքն այնորիկ չարաբանք՝ չարաչար հարուածովք առաջի տն · և փառաւոր եղեն երկոքին ապրեալքն յեսու և քաղէբ · մինչ զի և սոքա երկոքեան միայն 'ի մէջոյ ել-լոցն յեգիպտոսէ չափահաս արք՝ արժանի եղեն մտանելոյ 'ի խոստացեալ երկիրն · ուր այլքն ամ անհամար բազմութբ մեռան 'ի ճա-նապարհ անապատին, և որդիք նց 'ի տեղի նց մտին յերկիրն աւետեաց · փոխանակ զի սաէին խոտապարանացքն, թէ տանի տր զմեզ 'ի կոտորել զուստերս և զդստերս մեր · և տր եմոյծ զզաւակսն, և ոչ զծնողսն։ Այլ իբրև մերձեցան աւուրք վախճանելոյ մովսեսի, ասէ մովսէս ցտր · տեսցէ տր ած հոգւոյ և ամ մարմնոյ՝ այր 'ի վերայ ժողո-վրդեանս այսորիկ, որ ելանիցէ առաջի սո-ցա, և որ հանիցէ և մուծանիցէ զսոսա · և մի՛ լինիցի ժողովուրդս տն իբրև զոչ-խար՝ որոց ոչ իցէ հովիւ։ Այլ խօսեցաւ տր ընդ մովսեսի և ասէ · առ դու քեզ զյեսու որդի նաւեայ՝ զայր, յորում գոյ հոգի, և դիցես զձեռն քո 'ի վր նորա · և կացուսցես

զնա

զնա յանդիման Եղիազարու քահանայի, և պատուիրեսցես վն նորա յանդիման նց. և տացես ՚ի փառաց քոց ՚ի վր նր. զի լուիցեն նմա որդիքն Իէլի. և կացցէ առաջի Եղիազարու քահանայի, և հարցցեն ՚ի նմանէ զիրաւունս յայտնութեանց առաջի տն. ըստ բանի բերանոյ նորա ելանիցեն, և ըստ բանի բերանոյ նորա մտանիցեն, ինքն և որդիքն Իէլի միաբան, և ամ ժողովուրդն: Եւ արար Մովսէս զնմն. և առյա տարաւ զյեսու առաջի խորանին վկայութե. և՚ի կալ նմա առ դրան՝ էջ Տր սեամբ ամպոյ, և յայտնեաց զփառս իւր ՚ի վկայութի ամ ժողովրդեանն, եթէ ինքն ընտրեաց զյեսու յետ Մովսէսի:

Եւ ասէ Մովսէս ծառայ տն զյեսու առաջի ամ Իէլի և Եղիազարու քհնյի. քաջ լեր և զօրացիր. քանզի դու մտանելոց ես առաջի երեսաց ժողովրդեանդ այդորիկ՝ յերկիրն, զոր երդուաւ Տր հարցն ձերոց տալ նոցա. և դու ժառանգեցուսցես զնա. և Տր՝ որ երթալոց է ընդ քեզ, ոչ թողցէ զքեզ, և ոչ ընդ վայր հարցէ. մի երկնչիր և մի զանգիտեր: Եւ եդ Մովսէս զձեռն իւր ՚ի վերայ նորա. և լցաւ յեսու հոգւով իմաստութե. և հնազանդեցան նմա որդիքն Իէլի:

Եւ այնուհետև յետ վախճանին Մովսէսի յեսու եղև յաջորդ նորա յառաջնորդութե ամն Իէլի՝ հանդերձ զօրավարութբն. և ասէ ցնա Տր. զօրացիր և քաջ լեր, զի որպէս էի ընդ Մովսէսի, նոյնպէս եղէց և ընդ քեզ. և ոչ թողից զքեզ, և ոչ անտես արարից զքեզ. և ոչ դք

կաց

կացցէ ընդդէմ ձեր զամ աւուրս կենաց քոց։ Նա յնուհետև 'ի հրամանէ նց պատուէրեաց յետոյ նմ ժողովրդեան պատրաստ լինել անցանել ընդ յորդանան գետ . և կանխաւ պատմեաց նոցա զսքանչելիսն՝ զոր առնելոց էր տր՝ ոչինչ ընդհատ 'ի սքանչելեաց անցից կարմիր ծովուն առ մովսեսիւ . սրբեցարուք ասէ առ վաղիւ , զի վաղիւ արասցէ ձեզ տր սքանչելիս ։

Եւ ահա 'ի վաղիւ անդր խաղացոյց յեսու զբանակն իէլի 'ի մօտս երկրին աւետեաց . և եղև 'ի մխիլ ոտից քահանայիցն բարձողաց զտապանակ ուխտի տն յեզր յորդանանու , պակասեցաւ ջուր գետոյն . և որ իջանէր 'ի վերուստ՝ եկաց իբրև զկարկառակոյտ մի . և էանց նմ ժողովուրդն ընդ յորդանան ցամաքեւ . և ընդ դնել քահանայից զոտս յեզր գետոյն յայնմ կողմանէ՝ անդրէն ակաւ ջուրն խաղալ ընդ ճանապարհ իւր ։ Բայց ընդ պատուէրին յեսուայ բարձին մի մի քար 'ի յորդանանէ երկոտասան նահապետք ցեղիցն իէլի . զորս կանգնեաց յեսու 'ի գաղգաղա . և ասէ ցժողովուրդն . յորժամ հարցանիցեն որդիքն ձեր առ վաղիւ , և ասասցեն՝ զի՞նչ են քարինքս այսոքիկ , պատմեսջիք որդւոց ձերոց , թէ ցամաքաւ էանց իէլ ընդ յորդանան , 'ի ցամաքեցուցանել տն այ մերոյ ըզջուրն յորդանանու յերեսաց նց մինչև անցին . ոպ արար տր ած մեր ընդ ծովն կարմիր , զոր ցամաքեցոյց տր ած մեր , մինչև անցաք . զի ծանիցեն ամ ազգք երկրի , թէ զօրութ

տն

Տն զօրաւոր է. և զի դուք պաշտիցէք զՏր Ած մեր զամ ժամանակս: Այլ այն նմ օրինակաւ անցանէր ՚ի ձեռն յեսուեայ: Է հիննիէլ՝ ՚ի նշանակ ճշմարտութեան յսի փրկչին մերոյ, որ մկրտութիւն ՚ի յորդանան առաջնորդեաց մեզ յերկիրն կենդանեաց. զի ոչ ոք մտցէ յերկինս առանց մկրտութե:

Եւ եղև մինչ էր յեսու յանդիմման երիքովի, ամբարձեալ զաչս իւր՝ ետես, զի կայր առաջի նր այր զօրաւոր իբրև զօրավար, և սուսեր մերկ ՚ի ձեռին նր. և մատուցեալ յեսուայ՝ ասէ ցնա արհաքար. մե՞ր ես, թէ ՚ի թշնամեաց մերոց. և նա ասէ. ես զօրավար եմ զօրու Տն, և այժմ եկի. այն իմքն էր միքայէլ հրեշտակապետ: Յայնժամ անկաւ յեսու ՚ի վր երեսաց իւրոց, և երկիր եպագ, և ասէ ցնա. տէ՛ր զի՞նչ հրամայես ծառայի քում: Եւ ասէ զօրավարն Տն ցյեսու. լո՛յծ զկօշիկս յոտից քոց, զի տեղիդ՝ յորում կաս՝ սբ է. և արար այնպէս, յոր և նման մովսեսի ՚ի տեսլեան՝ որ ՚ի մորենւոջ: Եւ հրեշտակն զօրացոյց զնա՝ ցուցանելով զինքն նիզակակից լինել նմա յամ պատերազմունս թշնամեաց Տն:

Յայնու հետև ևս քան զևս զօրացեալ յեսուայ զօրութբ Տն՝ կործանեաց զեօթնազգաբրիսպն զերիքով քաղաք սքանչելապէս, և վանեաց հետ զհետէ զամ թշնամիս զբնակիչս երկրին քանանացւոց զեօթն ազգս. կալաւ և սատակեաց զթագաւորս և զիշխանս երկրին, և տիրեաց քաղաքաց նց. և ել անուն նորա

Է

ընդ ն̃մ տեղիս. և առՀասարակ ասպատակէին 'ի
Նմանէ ազգք և ազինք իւրև 'ի զօրավարէ ն̃ն
զօրուէց: Մանաւանդ զի յայտնի եղև ն̃մ
երկրի աՀագին նշանն՝ որ եղև 'ի ձեռն յես-
ու՛այ 'ի ժամ պատերազմին Հանդէպ գաբա-
ւոնի, երբ Հրամանն ետ արեգական և լուսնի
կալ 'ի տեղիս իւրեանց, մինչև վանեսցէ ըղ-
թշնամիս ն̃ն: Նոյն կացին՝ ասէ գիրք, արե-
գակն և լուսինն 'ի կայս իւրեանց. ո՞չ ապա-
քէն գրեալ է այս 'ի գիրս ուղղութեան. և
եկաց արեգակն 'ի մէջ երկնից, և ո՛չ խաղաց
ընդ արևմուտս՝ մինչև ցկատարումն աւուր
միոյ. և ո՛չ եղև այսպիսի որ՝ ո՛չ յառաջ և ո՛չ
յետոյ, լսել ա̃յ ձայնի մարդոյ. զի տ̃ր պա-
տերազմեցաւ վասն ի̃է̃լի: Նոյն այս դրշ̃լ
յօրինակ ճշմարտին յեսու՛այ՝ յետ փրկչին. զի
յաղաղակել 'ի խաչին՝ սուգ զգեցան արա-
րածք ք̃ի չարչարանս և ք̃ի մահ արարչին մար-
դացելոյ, և արեգակն և լուսին խաւարեցան
միանգամայն, որ 'ի վեր է քան զատկայանաւ
ն̃ց 'ի տեղիսն: Ընդ յաղթեալ լինէր յետին
թշնամին մահ՝ մահուն անմահին. և թագա-
ւորէր կեանք և փրկութի̃:

Ընդ յետ վանելոյ յեսու՛այ զն̃մ թշնամիս
ն̃ն, զն̃մ երկիրն՝ զոր էառ, բաժանեաց վի-
ճակաւ իւրաքանչիւր ցեղից որդւոցն ի̃է̃լի,
և ժառանգեցոյց ն̃ց զխոստացեալն երկիր.
մ̃զ և յս̃ զերկինսն՝ զոր խոստացաւ սիրելեաց
իւրոց: Նոյն եղև իբրև ծերացաւ յեսու ծա-
ռայ ն̃ն, և մերձեցան աւուրք վախճանի նո-
րա, կոչեաց առաջի իւր զն̃մ որդիսն ի̃է̃լի և
զծե-

զծերակոյտս նց. եւ ասէ ցնս. Դուք ձեզէն
տեսիք զամ, զոր արար Տր Ած մեր ընդ ամ
ազգսն՝ զորս եբարձ յերեսաց ձերոց. եւ ոչ
ոք եկաց ընդդէմ ձեր մինչեւ ցայսօր. մի 'ի
ձէնջ հալածէր զհազարս, զի Տր Ած ինքնին
տայր պատերազմ վն ձեր, որպէս խոստացաւ ընդ
ձեզ։ Զգոյշ լինիջիք յոյժ անձանց ձերոց՝
սիրել զՏր Ած ձեր. եւ ես ահա երթամ այ-
սօր զճանապարհ, որպէս ամենեքին՝ որք են
յերկրի. եւ արդ երկերուք դուք 'ի Տնէ, եւ
պաշտեցէք զնա ուղղութբ եւ արդարութբ.
Ապա թէ՝ ոչ իցէ ձեզ հաճոյ պաշտել զՏր,
ընտրեցէք այսօր՝ թէ զո՞ պաշտիցէք. (քան-
զի սկսեալ էին հակամիտել զհետ կռոց).
այլ ես եւ տուն իմ պաշտեմք զՏր, զի սբ է։
Պատասխանի ետուն ժղվրդն, եւ ասեն. քա՛ւ լիցի
մեզ թողուլ զՏր Ած մեր, եւ պաշտել զածս
օտարս. զի Տր Ած մեր նա եհան զմեզ յե-
գիպտոսէ, եւ արար մեզ զնշանս մեծամեծս
զայնոսիկ. այլ եւ մեք պաշտեսցո՛ւք զՏր, զի
նա է Ած մեր։ Եւ ասէ Յեսու ցժղվրդն. ո՛չ
կարէք դուք պաշտել զՏր, զի սբ է. եւ նա
'ի տեսանել զխոտորութիւն ձեր 'ի նմանէ՝ ո՛չ
ներեսցէ չարեաց ձերոց, եւ սատակեսցէ զձեզ՝
փոխանակ բարեացն, զոր արար ձեզ։ Եւ
ասէ ժղվրդն ցՅեսու. ո՛չ այդպէս, այլ զՏր
պաշտեսցուք։

Յայնժամ ասէ ցնս Յեսու. ահա դուք ձեզէն
եղերուք վկայք անձանց ձերոց, զի ընտրե-
ցիք զՏր՝ պաշտել զնա։ Եւ ասեն. վկա՛յ
եմք։ Եւ ասէ. արդ 'ի բաց արարէք 'ի ձէնջ

իա

վութեան առաքելական բանից, բարակ, գե-դէոն, յեփթայէ, և սամփսոն. մինչև յա-րեաւ սամուէլ մարգարէ ած՝ օծ զՍաւուղ մով-սեսի և ահարոնի. ընդ, մովսէս և ահարոն երիցունք նր. սամուէլ է այնոսիկ՝ որ կար-դան զանուն նորա ։

# ՅԻՇԱՏԱԿ

## Սամուէլի մարգարէի ։

Հ. օգոստ. 20, կամ 21 ։ Յ. Լ. օգոստ. 20 ։
Ընթերցուածք. ի այլ ։

Ի ՎԵՐՋ ԵՒ Ի ՍՊԱՌ-առաջնորդութեան իւրոյ՝ ընդ դա-տաւորութեան և ընդ քահանայու-թեան 'ի հեղի քահանայապետ 'ի տանէ ահարոնի, և 'ի խոտորիլ անարժան որդւոց նորա 'ի սրբութենէ յանօրէնութիւն և 'ի զօշաքաղութիւն, ընտրեաց ած զսամուէլ 'ի դատաւոր, 'ի քահանայ, և 'ի մարգարէ, 'ի ցեղէն ղևեայ 'ի տանէն կահաթու, և ոչ ահարոնի, 'ի լեռնէն եփրեմի, որդի առն ածապաշտի եղկանայ արեմաթեմացւոյ, և մօր սքանչելւոյ աննայի, ուխտիւք խնդրեալ յայ և սքանչելեօք պարգևեալ զաւակ յա-մուլ արգանդէ. վսյ և անուն եդաւ նմա Սամուէլ, (որպէս թէ՝ խամ էլ), այ. է ածա

նուն, կամ անուն նորա յիշյ. զի ասէ ամենա-'ի ձեռն իմ զօրութենց խնդրեցի զսա. յորմէ առեալ թարգմանեն ոմանք՝ խնդրուած յիշ:

Արդ և հասուցաւ մանուկն սամուէլ 'ի սանե-նէ, տարաւ զնա մայր իւր, և մատոյց տն ընծա ուխտին 'ի ձեռն հեղեայ քահանայապետին՝ կալ 'ի տան տն զամ աւուրս. տամ զդա ասէ փոխ տն զամ աւուրս, որչափ և կեցցէ. և եթող զնա առաջի տն, և դարձաւ 'ի տուն իւր յարեմաթեմ. և տր հատոյց ամենայն փո-խանակ փոխոյն՝ զոր ետ տն. քանզի եղեն նմ այլ ևս երեք ուստերք և երեք դստերք. և այնպէս ամուլն ծնաւ եօթն՝ ըստ ջերմ աղօ-թից և հաւատոց նորուն ամենայն:

Եւ մանուկն սամուէլ կայր 'ի սպասու երե-սաց տն առաջի հեղեայ քահանային, և պաշ-տէր առաջի տն՝ արկեալ զիւրև եփուտ. և կրկնոց փոքրիկ առնէր նմա մայրն իւր, և տանէր նմա աւուրց յաւուրս յելանել ընդ-առն իւրում զոհել զզոհ աւուրցն: Եւ մե-ծացաւ մանուկն սամուէլ առաջի տն. իսկ հեղի ծերացեալ էր յոյժ. և որդիքն նորա ոփնի և փենեհէս երթալով երթային չա-րեաց 'ի չարիս 'ի դայթակղութի ամ ժողո-վրդեան. իսկ հայր նց մեղմով ևեթ և թու-լութբ խրատէր զնս, և ոչ ոպ պարտն էր: Եւ էր դադարեալ յաւուրսն յայնոսիկ տե-սիլ և մարգարէութի. վմյ ասէ գիր. բանն տն պատուական էր՝ այս է անգիւտ՝ յա-ւուրսն յայնոսիկ, և ոչ գոյր տեսիլ՝ որ զու-

ջա

ջանկէր ։ Մին որոյ և ոչ 'ի միտ եկաւ Սամուէլ զձայնն Տ՟ն, յորժամ 'ի ննջել նր՟ 'ի տան Տ՟ն 'ի սեղան՝ ուր էր տապանակն Տ՟ն, կոչեաց զնա Տ՟ր, և ասէ. Սամուէլ Սամուէլ ։ Համարեցաւ՝ թէ Հեղի ձայնէ զնա 'ի սենեկէ իւրմէ ։ Եւ յանկողնոյ՝ ընթացաւ առ նա, և ասէ. աստանիկ եմ, զի կոչեցեր զիս ։ Եւ Հեղի ասէ ցնա. ո՛չ կոչեցի զքեզ որդեակ իմ, դարձի՛ր անդրէն և ննջեա՛ ։ Այս եղև երկիցս անգամ ։ Եւ յերրորդ նուագի ընթանալոյ նր՟ միամիտ հնազանդութ՟բ առ Հեղի, յայնժամ իմացաւ Հեղի՝ թէ Տ՟ր կոչէ զմանուկն ։ Եւ ասէ ցնա. դարձի՛ր անդրէն և ննջեա՛ որդեակ ։ Եւ եղիցի՝ եթէ կոչեսցէ զքեզ, ասասցես. խօսեա՛ց Տ՟ր, զի լուիցէ ծառայ քո ։ Այս նա արար այնպէս. և եկն Տ՟ր եկաց 'ի վ՟ր, և յայտնեաց Սամուէլի, թէ ո՛րպս համպերձեալ է մերժել զտունն Հեղեայ վասն անօրէնութե՟ որդւոց նր՟ ։ Այլ իբրև եանց տեսիլն Տ՟յ, երկեաւ Սամուէլ պատմել Հեղեայ զիրսն. այլ 'ի ստիպել նորա յոյժ երդմամբ հանդերձ, պատմեաց զՏ՟ն զբանսն ։ Այս մեծացաւ Սամուէլ, և էր Տ՟ր ը՟ նմ՟ ։ Եւ ոչ անկաւ յամ՟ բանից նր՟ 'ի գետին ։ Եւ գիտաց ամ՟ իէլ, թէ հաւատարիմ է Սամուէլ 'ի մարգարէս Տ՟ն ։ Քանզի յաւել Տ՟ր այլ ևս սքանչելեօք յայտնել առաջի ժողովրդեան զճշմարտութ՟ի Սամուէլի ։

Այս եղև 'ի գերիլ տապանակին Տ՟ն յայլազգեաց, և յանկանիլ որդւոցն Հեղեայ 'ի պատերազմի, և 'ի մեռանիլ Հեղեայ, Սամուէլ

միայն էր՝ որ ելանէր և մտանէր առաջի նց
և ամ ժողովրդեանն։ Այլ իբրև դարձաւ տա-
պանակն նց 'ի կարիաթարիմ՝ վն հարուա-
ծոցն, որ եղև 'ի նոսա 'ի վր այլազգեաց,
խօսեցաւ սամուէլ ընդ ամ տանն իէլի, և
ասէ. եթէ յամ սրտէ ձերմէ դարձեալ էք
առ տր, 'ի բաց արարէք զածսն օտարոտիս
'ի միջոյ ձերմէ և զանտառսն. և պատրաս-
տեցէք զսիրտս ձեր առ տր, և ծառայեցէք
նմա միայնոյ, և փրկեսցէ զձեզ 'ի ձեռաց
այլազգեաց։

Յետ այսորիկ ժողովել սամուէլի զամ իէլ
'ի մասեփաթ՝ ետ նց պահել պահս, և ա-
նել արտասուօք, մեղաք առաջի տն. և խնդրէր
յաղօթս կայր վն նց։ Զայն իբրև գիտա-
ցին այլազգիքն, փութացան հասանել 'ի
վր նց յանկարծակի. և ժողովուրդն զահի
հարեալ՝ ասեն ցսամուէլ. մի դադարեր 'ի
գոչելոյ վն մեր առ տր ած քո, և փրկեսցէ
զմեզ 'ի ձեռաց այլազգեացն։ Այլ էառ սա-
մուէլ զգառն մի դիեցիկ, և եհան զնա յող-
ջակէզ տն հանդերձ ամ ժողովրդեամբքն. և
գոչեաց սամուէլ առ տր վն իէլի, և լուաւ
նմա տր. զի 'ի ժամ ողջակիզելին իբրև մեր-
ձեցան այլազգիքն 'ի պատերազմ, որոտաց
տր 'ի պարզոյ մեծաւ բարբառով. յորմէ խռո-
վեալ թշնամիքն՝ անկան առաջի իէլի 'ի մա-
սեփաթ, և որք մնացինն՝ 'ի փախուստ դար-
ձան։

Այլ կանգնեաց սամուէլ վէմ մի 'ի մէջ մա-
սեփաթայ և 'ի մէջ փաղեայ, և կոչեաց
զա

զանսուն նր աքենեզեր , յո վէմ օգնականի . զի յիշեցեն որդիքն իէլի , թէ մինչև ցայն վայր օգնեաց նմ տծ : Եւ կորացոյց տր զայլազգիս , և ոչ ևս յաւելին եկանել 'ի վր սահմանացն իէլի զմ աւուրս սամուէլի : Այլ եղև սամուէլ որդւոցն իէլի 'ի ժամանակին յայնմիկ իբրև մովսէս և ահարոն և յեսու միանգամայն , պատուիրէ 'ի ձեռաց ատարաց , և օրէնսդիր և դատաւոր , քահանայ և մարգարէ յամենայն կողմանէ , և դատեաց զիէլ զմ բարեկարգութբ զմ աւուրս կենաց իւրոց : Երթայր ամ յամէ անձամբ , և պատէր զհեռաւոր քաղաքօք և զբնակութբ որդւոցն իէլի՝ իբրև տիրապէս վերատեսուչ և այցելու հոգւոց և մարմնոց ժողովրդեանն այ . և ապա դարձ առնէր յարեմաթեմ 'ի տուն իւր . և անդ դատէր զիէլ . ուր և շինեաց սեղան տն :

Իսկ իբրև ծերացաւ , կացոյց զորդիս իւր զյովէլ և զաբիա դատաւորս իէլի . բայց նք ոչ գնացին զհանապարհ հօրն իւրեանց , այլ վարեցին զօշաքաղութբ , առնուին կաշառս և թիւրէին զիրաւունս . և չեղև նց իրաւուղղութե սքանչելի քաղաքավարութն ամամարձ հօրն իւրեանց : Զայն տեսեալ ժողովրդեանն՝ խոկ և խոկ անկանն 'ի տրտմութիւն . և եկեալ առ սամուէլ՝ տխրալէին զնա դնել նց թագաւոր զդք հանգոյն այլոց ազգաց . և չար թուեցաւ բանն առաջի սամուէլի . այլ տծ ասէ ցնա . արա՛ զկամս ժողովրդեանդ , զի փորձիւ՛ ուսցին՝ եթէ ո՛չ ուղիղ էր սիրտ

ցի զոք, կամ առի ինչ զաւրուք, ասէք զինէն այժմիկ, և հատուցից ձեզ։ Եւ ասեն ցՍամուէլ. ոչ մեղար մեզ, և ոչ զրկեցեր զմեզ, և ոչ նեղեցեր զմեզ, և ոչ առեր ի ձեռաց ուրուք և ոչինչ. և երդուեան առաջի Տն և թագաւորին։

Զայնժամ ասէ Սամուէլ. և արդ կացէք յառաջ, և դատեցայց զձեզ առաջի Տն. և պատմեցից ձեզ զամ արդարութիւն՝ զոր արար Տէ ձեզ Տր, և զապերախտութիւն ձեր յամի Իէլի։ Եւ սկսեալ կարդալ յուշ արար նոցա, թէ որպէս ազատեաց զնս Ած հզօր ձեռամբ ի ձեռաց եգիպտացւոց ի ձեռն Մովսէսի և Ահարոնի, և զհարսն ժառանգեցոյց նոցա զերկիր օտարաց ի ձեռն Յեսուայ. և թէ ի մոռանալ նց զՏր՝ մատնեաց զնոսա ի ծառայութիւն այլազգեաց, և յաղաղակել ն առ Տր՝ առաքեաց առ նս ըդ-գեդէոն և զբարակ և զյեփթայէ և զսամփսոն, և ապրեցոյց ի ձեռաց թշնամեաց շուրջանակի. և բնակեցոյց վստահութեամբ ի խաղաղացեալ երկիրն։ Եւ արդ՝ ասէ, նոյնպէս կարող էր միշտ պահել և փրկել զձեզ Տր Ած մեր թագաւոր մեր. իսկ դուք անսաստեն խնդրեցէք ձեզ թագաւոր. և ահա ետ ձեզ Տր թագաւոր. համայն զգուշ լերուք և տեսէք, թէ որպէս գնայցէք առաջի Տն. ապա թէ ոչ՝ եղիցի ձեռն Տն ի վր ձեր և ի վր թագաւորին ձերոյ։

Եւ ի հաստատութիւն ասացելոցն Տն՝ յաւել ասել Սամուէլ. և արդ կացէք և տեսէք

զբանս զայս մեծ, զոր արասցէ տ՟ր առաջի աչաց ձերոց. ո՞չ ապաքէն հունձք ցորենոյ են այսօր, և խաղաղութ՟ի օդոց, և ո՛չ մի նշան ամպոց. և ահա կարդացից առ տ՟ր, և տացէ ձայնս և անձրևս. և գիտասջիք և տեսջիք, թէ մեծ է չարութ՟ի ձեր՝ զոր արարիք առաջի տ՟ն՝ խնդրել ձեզ թագաւոր։ Եւ կարդաց Սամուէլ առ տ՟ր, և ետ տ՟ր ձայնս և անձրևս յաւուր յայնմիկ. և երկեաւ ա՟մ ժողովուրդն յոյժ 'ի տ՟նէ և 'ի Սամուէլէ. և ասեն միաբան ցայրն ա՟յ. կա՛ց յաղօթս առ տ՟ր ա՟ծ քո վ՟ս ծառայից քոց, և մի՛ մեռցուք. զի յաւելաք յա՟մ մեղս մեր և 'ի չարիս, և խնդրեցաք մեզ թագաւոր։

Յայնժամ քաջալերեաց զնոսա Սամուէլ՝ ասելով. մի՛ երկնչիք, այլ խրատեցարո՛ւք յանձինս ձեր՝ չխոտորիլ յայսմ հետէ 'ի տ՟նէ, այլ ծառայել տ՟ն հանդերձ թագաւորաւն յա՟մ սրտէ ձերմէ. և մի՛ երթայցէք զհետ ոչնչից՝ կռոց սնոտեաց, որք զոչինչ վճարեն և ո՛չ փրկեն, քանզի չեն ա՟ծք. զի ոչ մերժեացէ տ՟ր զժողովուրդ իւր վ՟ս անուա՛ն իւրոյ մեծի. զի հեզութ՟ե եառ զձեզ տ՟ր իւր ժողովուրդ։ Եւ ինձ քա՛ւ լիցի մեղանչել տ՟ն, հեղգալ առ 'ի չյաճախելոյ աղօթս վասն ձեր. և ցուցից ձեզ զճանապարհն բարի և զուղիղ. բայց դուք երկերո՛ւք 'ի տ՟նէ, և ծառայեցէ՛ք նմա ճշմարտութ՟բ յա՟մ սրտէ ձերմէ. քանզի տեսիք զմեծամեծսն՝ զոր արար ա՟ծ մեզ։ Եւ եթէ խարդախութ՟բ խարդախիցէք, սատակիցիք և դուք և թ՟գաւորն ձեր։

Դ՛րդ՝ սաւուղ արքայ զատաւորեանն իբրև զամս երկուս թագէր ուղիղ վարել զթագաւորու-թիւն իւր 'ի վ՟ր որդւոցն իէլի առհասարակ. այլ յետ այնորիկ գնալով գնաց և փոխեաց զճանապարհս իւր. քանզի միանգամ և եր-կիցս յայտնապէս անհնազանդ եղև բանին Տ՟ն՝ զոր խօսեցաւ 'ի բերանոյ սամուէլի. մի՝ զի ոչ պայմանեաց զալստեանն սամուէլի ըստ աւուր ժամադրութեանն 'ի գաղգաղա, այլ ժամե-ցաւ և իշխեաց առանց նորա մատուցանել զոհս. որով զրկեցաւ 'ի մեծ աւթէ հաստատու-ռելոյ Տ՟ն զնա 'ի թագաւորութե՟ն որդւոց յոր-դիս։ Այս մինչ և ս՝ զի ոչ ընջեաց զամաղէկ իսպառ, այլ ապրեցոյց զագագ թագաւոր ամաղեկացւոց, և էառ յաւարի զընտիրս յոչխարաց նո՟ց՝ պատճառանօք մատուցանե-նելոյ զոհ Տ՟ն։ Այս վ՟ն խոստադրյնս կշտամբ-եաց զնա սամուէլ բանիւ Տ՟ն. և նա ոչ զղջացաւ ճշմարտութ՟բ, այլ 'ի վերին երեսս. և զի մի անարգեսցի յազգէն՝ խնդրէր 'ի սա-մուէլէ մեծարել զնա յառաջ ժողովրդեան. իսկ սամուէլ 'ի բաց եկաց 'ի նմանէ. և լը-ճեալ որ Ի՟ օրէ զանկարգ գնացս նո՟ա՝ սուգ-ունէր 'ի վ՟ր նո՟ա զա՟մ աւուրս։

Այս Տ՟ր պատժեաց զսաւուղ այսահարութ՟բ. և Հրամանաւ ետ սամուէլի օծանել զդաւիթ զկրտսերն յորդիս յեսսեայ բեթղեհեմաց-ւոյ յազգէ յուդայ 'ի թ՟ր 'ի վ՟ր ժ՟ղվրդեան իւրոյ, որպ՟ս Ի՟ պարծանս պատմի 'ի գիրս առաջինս թ՟գւորաց. որ ասի գրեալ 'ի նմին իսկ 'ի սա-մուէլէ։ Այս Հասեալ սամուէլի 'ի խոր ծե-

րու-

# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սբյն Անթիմոսի և Փառմինոսի:

Հ. օգոստ. 12: Յ. օգոստ. 11: Լ. օգոստ. 12:
Սուրիոս. անդ. ըստ Մետափրաստու": Յունարէնն յոյն:
Բոլլանդեանք. 'ի Է. հատ. օգոստ. երես. 705.
և այլն: (1)

ԸՆԴ ԲԱԶՈՒՄՍ ՚Ի այլոց վկայից նահատակելոց 'ի մեծ հալածանս դիոկղետիանոսի՝ գտանեն սբն անթիմոս և փառմինոս, և գուցէ յառաջագոյն քան զայլսն ամ սկիզբն եղև կապանաց և չարչարանաց նց. քանզի յամի տն 302. կմ 303. յորում ժմկն յետ առանձինն հանդիսից ոմանց ոմանց 'ի վկայից՝ եւ հրովարտակ արքունի վս տիեզերատարած հալածանաց, և ընթերցեալ եղև զառաջինն 'ի նիկոմիդիա քաղաքի, նախագրաւ նահատակ հանդիսացան երկոքին ոք՝ նորին քաղաքի քաղաքացիք, որք երևելիք և նշանաւորք: Օր 'ի նոյն աւուրս՝ մինչդեռ 'ի նիկոմիդիա էր դիոկղետիանոս եւ նստաւ հրապարակաւ յերևելի տեղւոջ, և սկսաւ խրոխտ բանիւք ահ արկանել քրիստոնէից. ա՛ ոք իշխեաց առնել զանձն քրիստո-

թաթովն և լեզուաւն ընդ ապաւինակաւ ոտքեր զքրտունս. երեսաց նոցա : Յորժամ գոչացաւ նորա անհնարին. և ըստ պատուհասելոյն հրացեալ՝ փառս ետ Այ, օրհնելով զամենակալն հա-

մանաւորութեան բարերարին :

Նա մինչդեռ նորա յաղօթս կայր, զահիճքն դարձեալ տանջել սկսան. և ահա նոյնժա-մայն եղև շարժումն մեծ, և անկեալ կոր-ծանեցաւ բագինն հերակլեայ, և մանրեալ խորտակեցաւ. ըստ նմին վայրաբերեալ քայքայե-ցան և տունք բագնում՝ ՚ի հիւսիսակողմն քա-ղաքին. և յոլովք յանհաւատիցն մեռան յարկածից անտի : Նոյն որ զայրացեալ թա-գաւորին, միանգամայն և զահի հարեալ՝ զի մի և այլ նմանք մեծամեծք գործիցին, փու-թանակի ետ հրաման սրով սպանանել զա-նխկատս : Այլ ՚ի վերայուցանել զահճին

զատուսերն ՚ի վեր՝ գոսացաւ ձեռն նր : (5)

Յայնժամ այլք ՚ի զահճացն կապեցին զնորա ՚ի վզն անուանոյ կմձախապակի, ըստ որում սովո-րեալ էին կայծակունք հրոյ. զի ՚ի հոլովել անուանոյն՝ ջարդեսցին ոսկերք նորա, և մար-մինն ողջոյն խանձողեսցի ՚ի հրոյ անտի : (6)

Մինչդեռ յայն տանջանս էր նորա, յաղօթս եկաց առ Այծ. և առժամայն կապանք նորա լուծան, անիւն մնաց անշարժելի, և հուրն շիջաւ : Նա դարձեալ արկին զնա յեռացուցեալ կատարայրին. և նոյնժամայն ցրտացաւ կառա-սայն ՚ի ձեռն հրեշտակի Այ, որ երևեցաւ նոյն. և նա մնաց ամբողջ : Նա զայն տե-սեալ դիւակզերտփանս՝ հայհոյեաց զկուռսն,

և

յաւիտեանս : Նա 'ի կատարել աղօթիցն՝ ասա-
ցեալ զամէնն , աւանդեցին զհոգիս իւրեանց
առ Տէր՝ յօգոստոսի ժԲ , յամի Տն 305 . կամ
306 :

Նաև մարմինք նոցա մնացին 'ի մէջ կայծականց
հրոյ իբրև կենդանիք մինչև ցվեց ժամս . և
ապա պատուաւորքն արքունի 'ի դուրս ձգե-
ցին զմարմինս նոցա երկաթի երկեքժանեօք :
Նա եկեալ աղքատական աղախնայն՝ գտանէր զնոսա անա-
պական 'ի հրոյն , որ և մազ մի 'ի գլխոց նոցա
ոչ էր այրեցեալ . և տարեալ սպասաւորացն
խնկս բզմ՝ բարձին զնա ; և տարեալ թաղե-
ցին մեծաւ պատուով պատեալ խնկօք և
կտաւովք : Նա յետ այնորիկ գնացին ամենեքեան
որք հաւատացեալ էին 'ի Քս բանին նոցա ,
և համարձակութբ աղաղակէին՝ թէ քրիս-
տոնեայ եմք , և զՔս Տր հաւատամք . և առ-
ժամայն արկին զնոսա 'ի հուր , մինչև լնուլ
հնոցին 'ի բազմութէ . և այնպէս կատարե-
ցան բանաւոր ողջակէզքն 'ի սէր անմահին
Քսի՝ ուրախութբ օրհնելով զՏր ցաւանդումն
հոգւոց իւրեանց :

Նաև եղև զկնի ժամանակաց իբրև եգիտ դուղ-
կիտոս քրիստոնեայն զմարմինս նոցա , և
ամփոփեաց զնոսա 'ի մկայարանս՝ զորս կանգ-
նեաց յանուն նոցա : Ապա գնեցաւ և 'ի կոստան-
դինուպօլիս մկայարան , ուր և յայլ տեղիս՝
յանուն նոցա մկայիցս : Մի 'ի մկայարանաց
անտի յանուն նոցա անկարոյ և փոխեալ
էր 'ի դամբանայ կղզւոյն եգիպտական ծովու՝
ը մէջ սամոսի և լեսբայ , նշանօք բժշկութեանց
ե-

է՝ մանկաբերանց մայր ։

Ի միասին կատարի և տօն եղիպտացւոց քահանայի, զի 'ի նոյն հալածանս անտանելի վկայեաց . զոր և ոմանք համարեցան դաստիարակ լինել եօթանեցունց մանկանցն շամունեայ . և զամենեսին յեէմ կարծեցին նահատակել . բայց ստոյգ եւս է՝ թէ կամ ամենեքեան, և կմ շամունէ և որդիքն յանտիոք քաղաքի կատարեցան ։ Նշան է որոյ 'ի հանդէս վկայութե ոսկւ մասանցն ընծա- յութե ծայլին տաւնից ։ (1)

Անտիոքոս անօրէն արքայ ասորեստանեայց, որ և յունաց և սելևկիացւոց թագաւոր կոչի, 'ի կարգէ յաջորդութե սելևկիոսի՝ միոյն 'ի չորից յաջորդաց մծութե մեծին աղեքսանդրի մակեդոնացւոյ . և մականուն նոր եպիփան, այս երևելի, որդի անտիոքոսի մեծ կոչեցելոյ, այր սէգ և խորոտ, ժանտ և գազանաբարոյ, նստաւ յաթոռ իշխանութե յանկ թագութե յունաց, այն է 'ի թուականութե սելևկիացւոց՝ հարիւրորդի երեսներորդի եօթներորդի, այն է իբր 170 ամօք նախ քան զքս ։ Նա իբրև զօրացաւ 'ի թագաւորութե իւրում, և յաղթեաց պատերազմաւ պտղոմեայ արքային եգիպտացւոց, եկն եհաս յեէմ յամի յունաց 140 . և կողոպտեաց բզտամձարն եէմի . և արար անհնարին չարիս և կոտորած բազում, և եած սուգ մծ 'ի մէջ համօրէն ազգին հրէայեցւոց . և կնքեաց բազում աւարաւ և գերութե դարձաւ 'ի քաղաքն անտիոքացւոց, որ և անտիոքիա կամ

 ան-

անտիոքայ արքայանիստ յաթոռին :

Յետ երկուց ամաց՝ յամի յունաց 142. առաքեաց անտիոքոս զիշխան մի հարկահան՝ ի հրէաստան զօրօք բազմօք . որք մերձեալն աւարեցին և աւերեցին զերէմ , և շինեցին անդ ներքնաբերդ՝ ի բնակութիւն հեթանոսաց . և գործեցին բազում չարիս , և խափանեցին զպաշտամունս եբրայեցւոց՝ ի տաճարէն . որոյ վասն բազումք յերկիւղածաց խոյս ետուն յանապատ և յանշէն վայրս . էն որս և մատաթի քահանայ հայրն մակաբեանց : Այլ բազումք ևս՝ ի թուլամտաց և՝ ի վատաց զհետ չարքան կամացն հեթանոսաց , և զօրացուցին զնոսա՝ ի չարիս , և համարձակ ետուն զանձինս՝ ի կռապաշտութի :

Զայն իբրև գիտաց անտիոքոս , այնուհետև տիրաբար հրամանաւ տայր , զի ամ հրէայք և ամ ազինք որ ը տէրութբ իւրով՝ թողցեն զհայրենի օրէնս , և դարձցին՝ ի կրօնս հեթանոսութե , և կանգնեսցեն զկուռս քաղաքէ քաղաքէ . ետ կանգնել արձան պղծութե և՝ ի տաճարին այ՝ ի վր սեղանոյ սրբութե՝ ի քսաներորդի հինգերորդի աւուր ամսեանն քասղև՝ յամի տէրութե յունաց . 145 . այն ամ է սաստիկ հալածանաց՝ ի վր ամ եբրայեցւոց , յորում եղև և նահատակութեն մակաբայեցւոց ը օրինակիս ը այլովք :

Ի ժամանակին՝ յորում կանգնեցաւ պաշտօն հեթանոսաց՝ ի տաճարն այ , այր ոմն անտիոքացի հնացեալ աւուրբք չարութե աթենացիոս անուն՝ լնոյր զքաղաքն երէմ ամ պղ-

լոց էք. մեք պատրաստ եմք ՚ի մեռանել՝ քան անցանել զօ̅ր օրէնս հայրենիս։ Բարկութ̅ լի եղև թագաւորն. հրամայեաց ջեռուցանել տապակս և կաթսայս, և անթեռս և պէսպէս գործիս տանջանաց պատրաստել, և զնահատակն յառաջ կացուցանել։ Եւ նախ զլե-զուն կտրեցին, և զգլխոյն մորթն զերեսօքն դարձուցին. ապա զոտս և զձեռս առաջի մօրն և եղբարցն ծայրաքաղս առնէին։ Եւ իբրև ՚ի բանից և ՚ի ձեռաց անպիտան ա-նէր, հրամայէր կենդանւոյն ՚ի տապակսն ջեռուցելոյս իջուցանել։ Ապա իբրև ձեն-ձերն ը̅ երկար այնպէս ՚ի տապակէ անտի ե-լեալ դիզացեալ ծառանայր, սկսան եղբարքն ը̅ միմեանս մարքն հանդերձ մխիթարել և ասել. քաջութ̅' մեռցուք, զանուն և զօ-րէնս ժառանգեսցուք. հայր մեր ած ՚ի ձրգ-նութե̅ պատերազմիս մերոյ, և ՚ի ծառայս իւր մխիթարի. որպ̅ յայտնապէս ասաց մով-սէս յօրհնութե̅ իւրում։

Եւ առաջինն զայսօրինակ յետ փոխեցաւ, զերկրորդն (մանկար, թերևս մանքիր, կամ մանկար կոչեցեալ) ՚ի տեղի տանջանացն մա-տուցանէին. և զգլխոյն մորթն վարսիւքն հանդերձ զերեսօքն արկանէին. և անդէն հարցանէին, կերիցես խոզենի միս, մինչև զքո̅ մարմինդ անդամ անդամ լուծեալ է։ Նա ետ պատասխանի հայրենանց բարբառովն, և ասէ. ոչ. վ̅նկ և զսա ՚ի նոյն տանջանս տապակի մատուցին։ Եւ յդուոցն պարզել ապա-ռան եղև, սկսաւ խօսել և ասէ ցթագա-ւորն.

համարեցիր . կա՛ց մնա՛ դու , և տեսցես զզօրութիւն մեծամեծ սքանչելեացն . որ զի զքեզ և զազգատոհմն քո չարաչար հարուածովք չարչարեսցէ :

Յետ այսորիկ ածեալ եղև վեցերորդն ( զազիլէ առանձինեալ ) . և իբրև մերձ եղև 'ի մեռանել՝ ասէ . զի՞ մոլորեալ ես տարապարտուց . ընդ մեզ այս անցք՝ որ անցանեն վ̃ն մեր մեղաց , զի մեղանչեմք առ ա̃ծ արժանի զարմանալոյ . բայց դու մի՛ ակն ունիցիս ողջ անպատիժ բարեմիտ ապրել՝ յա̃ծամարտ մատուցեալ :

Նաև առաւել բարեաց յիշատակաց արժանի մայրն սքանչելի շամունի անուն . որ զայսպիսի զեօթն որդի յիւրմէ կորուսեալ՝ 'ի միում աւուր վ̃ն յուսոյն ա̃յ , քաջալերեալ սրտապնդեալ զմի մի 'ի նոցանէ մխիթարէր իւրեանց բարբառովն . և զկիրսն և զմիտսն զիգութե̃ անձնապէս վառեալ՝ քաջութե̃ յառաջ մատուցեալ ասէր . չգիտեմ ո՛րպէս բնաւ դուք յարգանդի իմ երևեցայք . և ո՛չ ես ինչ զոգիսդ կամ զկեանսդ ձեր շնորհեցի , և ո՛չ զկերպարանսդ ձեր զիւրաքանչիւր ես նկարեցի . և ո՛չ զհասակսդ ձեր աճեցուցի . այսուհետև ես իմ ինչ ո՛չ համարեցայց . այլ որ Տ̃ր արարիչն է , որ ստեղծ զծնունդս մարդկան , զկեանսդ և զոգիսդ 'ի դալարեան իւրում իւրով ողորմութե̃ 'ի ձեզ դարձուսցէ :

Իսկ Անտիոքոս թէպէտև արհամարհեալ զինքն համարեցաւ վասն արիական բարբառոյ՝ զոր լուաւ 'ի միոյ միոյ 'ի քաջ նահատակացն ,

զի՞ յապաղէք. չե՛մ ինչ լսելոց հրամանի թագա-
ւորին. այլ հրամանաց հնազանդել եմ
օրինաց հարցն մերոց՝ որ տուա՛ն 'ի ձեռն
Մովսիսի։ Եւ դու՝ որ զա՜մ ինչ չարիս խո-
րամանկեցեր 'ի վ՟ր որդւոցդ եբրայեցւոց,
ոչ ապրեսցիս 'ի ձեռաց ա՜յ. զի եթէ առ խրա-
տու պատուհասի կենդանին տ՜ր մեր առ փոքր
մի ինչ բարկացեալ իցէ, դարձեալ հաշտեսցի
ողորմութ՟բ ը՟ ծառայս իւր։ Եւ դու անօրէն
ապստամբ, պի՛ղծ, փա՛տ արանց, զի՞ զուր
հպարտանաս յուսով քոյով. սնոտեաւ 'ի վ՟ր
ծառայից նր՟. սակայն չե՛ս ինչ ապրելոց յա-
մենազէտ յամենակալ դատաստանացն ա՜յ։
Զի այժմիկ մեր եղբարք սակաւ ինչ ցաւոց
համբերեալ վ՟ն կենացն յաւիտենից, և 'ի
վ՟ր ուխտի կտակարանացն ա՜յ, անկեալ կան
մահու տարածեալ։ Եւ ես հաւատով եղ-
բարցն իմոց զշունչ և զմարմին մատնել պատ-
րաստեալ ունիմ 'ի վ՟ր հարցն օրինաց. յու-
սացեալ կարդամ առ ա՜ծ՝ քաւութ՟ի ազգին
ա՜մի գտանել. և զքեզ՝ մեծամեծ տանջա-
նօք հեծեծութ՟բ խոստովանել, զի նա միայն
է ա՜ծ, և այլ ոք չի՛ք. և այնպէս լինել և եղ-
բարցն իմով՝ զա՜մ նիւթեալ սրտմտութ՟ն
բարկութ՟ն ընջել և 'ի բաց անցուցանել։
Յայնչափ քաջութ՟ն սրտի մանկանցն եօթա-
նեցունց որոտաբեկ լինէր թագաւորն. առա-
ւել 'ի վ՟ր կրտսերոյն դառնապէս տանջանս
մատուցանէին. սակայն և սա անարատութ՟բ
և սրբութ՟բ յուսացեալ 'ի տ՜ր՝ մեկնեցաւ յաշ՟է։
Հետ որդւոցն և մայրն երանելի 'ի նոյն
օրէնս

,, ցոյց նախնիքն առաջնորդ. զաւակքն նը տուն շինել՝
,, 'ի պատիւ նոցա նուէրերաց. որ և ցարդ տեսանի 'ի
,, փոխարանի գլխաւոր եկեղեցւոյն վենետիկոյ. ուստի
,, ծագեցաւ յարգութին նը նահատակացս, որ մինչև
,, ցարդ զօրացեալ է անդ, երևելի առնախմբութբ առ
,, բնակիչս աւուրոյն նշանաւոր յոյժ:
,, Կայ և 'ի կողմնս աբբայութեան եկեղեցի բենեդիկ-
,, տեան կուսանաց յանուն սբց այս վկայից. յորում
,, մարմինք, կամ ոք նշխարք նց անձեռացեալք պահին
,, պատուով. իսկ գլուխքն առանձինն անթերի պահին՝
,, ընծային և յաւուր յիշատակի 'ի յարգութն ընդունելութն
,, ժողովրդեան: Այլ թէ զիարդ փոխադրեալ իցեն
,, անդր և ամփոփեալ, այսպէս պատմի. յետ Է եր-
,, կար ժամանակս մնացելոյ նը նշխարացս յանապատ քա-
,, ղաքի՝ ուր կատարեցան ամարեալ նահատակքս, երա-
,, նելին հեղինէ մայր կոստանդիանոսի յորժամ գնաց
,, յուխտ Երուսաղեմ հաւատով 'ի պաղեստին, Է ետ բերել
,, զայնոսիկ 'ի կոստանդինուպօլիս. զորս և զկնի յուս-
,, տինիանոս առ աւուրբ պատուելոյ՝ զետեղեաց 'ի
,, հոյակապ տաճարի սբյն սոփիայ 'ի կառուցեալն
,, յիւրմէ, հանդերձ պատուականն նշխարօք երից մո-
,, գուց եկեղեց յերկրպագութն ծննդեանն քնի: Եւ
,, կացին մնացին անդ մինչև 'ի ժամանակս մանուէլի
,, կայսեր. և նա պարգևեաց զայնս մեդիոլանեցւոց.
,, և նց առեալ ամփոփեցին 'ի մայրան անդ՝ որ յետոյ
,, կոչեցաւ յանուն սբյն եւստորգիոսի, և մեծացաւ
,, յոյժ յոյժ յաղագս պաշտաման նց, և վն յիշատակի
,, երից սբ մոգուց. քանզի և նշխարք սոցա անդր փո-
,, խեցան: Բայց յետ այսորիկ 'ի կործանել փրեդերի-
,, կոսի կայսեր զմեդիոլան, ը թախանձելոյ ռէյնալ-
,, դոսի դիտապետին կողոնիոյ՝ որ առանձնապետն էր
,, ինքնակալին, մարմինք մակաբայեցւոց և երից մո-
,, գուց միանգամայն՝ հանդերձ մարմնովք երկուց սբց
,, պաշտպանացն մեդիոլանու, գ փելիքսի և նաբորի,
,, բերեալ եղեն 'ի կողոնիա աբբայութեան 'ի վանս մագ-
,, դաղենացւոյն՝ որ յուրսուլանեան ագարակի, և որ-
,, ժանաւոր պատուով անդ ամփոփեցան. ուր և մին-
,, չև ցայժմ բարեկրօն կարգաւ պահին՝ հանդերձ ան-
,, ուանակոչութբ սբյ տաճարին յանուն մակաբայեց-
,, ւոց, և հանդիսապէս մեծարին ը արժանւոյն յա-
,, ւուր յիշատակի||: Այլ այս առ մեզ Է քննութբ և ընդ-
յարգութբ:

ՎԱՐՔ

կացցեն ։ Այլ նոքա սուրբն. առանց տանջանաց 'ի մէնջ պատասխանի ոչ լուիցես. քոյով զօրութեամբ չարչարեա՛ զմեզ, որպէս և կամիս. և տեսցես զահեղ զօրութիւն քրիստոսի Աստուծոյ մերոյ ։ Այլ զարմացեալ թագաւորն ընդ քաջութեան հաստատուն հաւատոց նոցա, եհարց զսոփիա, քանի՞ ամաց են դստերք քո ։ Ասէ սոփիա. առաջին զաւակս իմ պիստիս՝ երկոտասան ամաց է. և երկրորդս եղպիս՝ մետասան ամաց. և երրորդն ագապիս՝ ինն ամաց է ։ Կոչեաց առաջի իւր զպիստիս, և սպառնացաւ յոյժ. և նա անարգեալ թշնամանեաց զթագաւորն և զաստուածս իւր ։ Այլ բարկացեալ հրամայեաց կախել զնա, և գաւազանօք գան հարկանել ուժգին. և նորա ամենևին ոչ ըզգաց զցաւսն, և ոչ վիրաւորեցաւ, և ոչ այլագունեցաւ մարմինն ։

Այլ ապա սուր առեալ՝ ծեծէին զմարմին նորա. և որպէս երկաթ անխոցելի մնայր. Պարձել ընկեցին 'ի շանթս հրացեալս. և հուրն շիջաւ. և շանթն որպէս զսառն ցուրտ եղև ։ Այլ նորա գոհանալով օրհնէր զաստուած. և ասէ. ով թագաւոր՝ տեսեր զզօրութիւն քրիստոսի իմոյ, և զանկարութիւն քոյոյ չարուն մեքենայից ։ Այլ բարկացեալ հրամայեաց սրով հատանել ըզգլուխ նորա ։ Յայնժամ գնաց երանելին առ մայրն և առ քոյրսն իւր. գիրկս արկեալ համբուրեաց արտասուօք. և ասէր ցքոյրսն իւր. մի երկնչիք 'ի տանջանաց, զի ամենևին ես ոչ զգացի. այլ փութացիք և եկայք զհետ իմ. և երթեալ դահճին եհատ զգլուխ նորա ։

կմ՝ զատագանագիր՝ գտանել՝ի պահել յեկեղեցւոջ կու-
սանոցի սրբուհւոյն յուլիայ ․ * Այսր բերեալ եղեն
„ ( սբ. նշխարքս ) 'ի հին եկեղեցւոյ՝ սբց կուսանաց և
„ մկայուհեաց՝ յուլիայ , պիստեսի , եղպիսի , ագապի ,
„ և սոփեայ մօր նց են ․․․ որոց մարմինք անհամար
„ մք նշխարաց համեդերձ , 'ի ժամանակս կղեմայ ութե-
„ րորդի ․․․ փոխադրեալ եղեն 'ի յոբելեան ամին 1600 ․
„ 'ի 16 ․ աւուր կաղանդացն յունվարի ||:



Ճունել վըր մկրտութեն ։

Յաւուրսն յայնոսիկ Թագաւորեաց ուրա-ցողն Քի յուլիանոս . և մի ոմն ՚ի պաշտօնէից նոր ողիբրիոս անուն (5) , կարգեցաւ կուսակալ և դատաւոր ՚ի վը կողմանցն սարուց երկրի փոխարքայ ( զոր այժմ շրիֆեն է գենար կայսեր , և անունք դագնոս Թագաւոր կոչեն ) ։ Սա էր հալածումն քրիստոնէից , և հայհոյեալ ըմբեր անուն նորին . և նեղէին ըզքրիստոնեայս սոմ ուրեք ։ Նոյն յայնժամ ժամանակի մարգարիտն շանտագլաւիս էր յաստրիս . քանզի եղիտ զնա կոմս մի ՚ի պատերազմին , և զինուորեցոյց ՚ի զօրս իւր . և ՚ի գալ յուլիանոսի յանտիոք՝ եհան զնա առ Թագաւորն երկրի այր անձնեայ և կորովի և զօռ պատերազմօղ . վայ և պատուեալ ըզնէր յաշս մեծի և փոքու ՚ի մէջ զօրականնին ։

Նաև նոյն մարգարիտ՝ որ առնն ունէր յերկիր անօգ քրիստոնէից համարձակ պաշտել զՔս , երբեմն տեսանէր զգործս ամբարշտութե որ քան զոր զօրացեալ , զայրանայր յոգի իւր և խռովէր ։ Սա շարժմամբ սրտին ՚ի շնորհաց հոգւոյն սբյ՝ աղաչէր զԱծ ըմբել ձեռնտու և ապաւէն յամի . և խնդրէր՝ զի համարձակեսցի խօսել զբանն կենաց նովին բարբառով և լեզուաւ , զոր վարէին զօրքն արքունի և հալածիչքն , ոյք յունարէն . զի ոչ էր տեղեակ լեզուացն . և Թերևս անկարանայր կոկորդահնչիւն լեզուաւն վարել ըզբերկրելի հեղլենախօսութի ։ Սա ամ շնորհեաց

 նմա

նմա զտմ̃ խնդրելին. զի շնորհեալ լինէր նմա 'ի վերին զօրութենէն (ասէ վկայաբանն) համ-բաւոյ հաստատութի̃, և գիտութի̃ ճշմար-տութե̃, և բանի հաղորդութի̃, և ցանկալի առ Քս̃. և զօրացեալ փառաւորէր զա̃ծ ։ Եւ այլք յայսմաւուրք մեկնաբանեն, եթէ առ նա հրեշտակ յերկնից, և ասէ. մարգարիտ ա-րիացիր և քաջ լեր. և մերձեցաւ հրեշտակն 'ի շրթունս նր̃. և առ ժամայն սկսաւ խօ-սել պարզ և յստակ յունարէն ։

Յետ այսորիկ գէալ եղև նմա տեսանել, զի չարչարէին զքրիստոնեայսն զինուորք դա-տաւորին դիկոսի. և յանդիմանեաց զհալա-ծիչսն ։ Եւ այր մի անուն բաքոս՝ եհար զնա ուժգին կզ̃ ապտակեաց ։ Նա ետ այլմի, և ասէ. համբերեմ վս̃ քս̃ին իմոյ. ապա թէ ոչ՝ լաւ էս կարօղ էի ես հարկանել. և ոչ թագաւորն ձեր կարէր կալ ընդդէմ իմ ։ Զայս ասացեալ՝ լցաւ հոգւով, և ասէ ցչար-չարօղս սն̃ցն. պաշտօնեայք ամբարշտու-թե̃, և ըմբռնեալք 'ի ձեռս սատանայի, դուք պերկիւղածս ա̃յ ի̃ ձե̃զ կամիք կոտո-րանել. և այլ բազում ինչ խօսեցաւ առ նս̃ 'ի մեծութի̃ փառացն ա̃յ, և յանարգանս հե-թանոսական մոլորութե̃ ։

Իսկ զինուորքն զարմացեալ ը̃ զօրաւոր բանս նր̃, միանգամայն և զահի հարեալ յահա-ւոր տեսլենէ առն, ոչ իշխեցին ձեռն ար-կանել 'ի նա. այլ գնացին պատմեցին դա-տաւորին դիկոսի զվրէժխնդրութի̃ նորա 'ի վ̃ր քրիստոնէից, և զա̃մ զբանս նր̃. արդ ա-

ասեն

տեսն՝ որպէս հաճոյ Թուի, արասցես : Յայն ժամ առաքեաց դատաւորն զօրական երկերիւր՝ տեղեկանալ վս այնր, և ածել զնա յատեանն, զի սուրդադոյնս գիտասցէ վս նորա :

Իսկ երանելին յայնժամ պահու երթեալ էր 'ի տուն աղօթից, և կայր յաղօթս 'ի ծածուկ առաջի քեմին, և ասէր առ ած. Գոհանամ զքէն տր վս մեծի շնորհաց քոց, զոր շնորհեցեր ինձ ճանաչել զքեզ, և առնել զկամս քո. և այժմ մի՛ թողուր զիս 'ի քումմէ օգնականութէ, այլ առաջնորդեա՛ ինձ 'ի խորհուրդս կամաց քոց տր հաճոյ քում. և բաց զբերան իմ 'ի խօսել զբանն կենաց առաջի Թագաւորաց և դատաւորաց վասն անուանն քո 'ի վկայութի. զի բարձրասցի անունն քո և փառաւորեսցի. զի դու միայն ես փառաց և պատուոյ արժանի : Զայս և զայսմին նման պաղատէր երանելին առաջի այ ջերմ արտասուօք :

Եւ ահա 'ի վր հասին զինուորքն, և պատմեցին նմ զբանս դատաւորին. և ասեն՝ Թէ տանել զքեզ եկաք հանդերձ կապանօք յատեան : Իսկ նա ասէ արիաբար. քս արձակեաց զիս 'ի կապանաց սատանայի և յամ 'ի պատրանաց նր, և առաջնորդեաց 'ի խաւարէ 'ի լոյս, յանածութէ յածգիտութիւն ճշմարիտ. խնդութի ընդունիմ զկապանս և զչարչարանս և զմահ վս քո. զի նա վս իմ կրեաց զայս ամ կամաւորու, որ տրն է երկնի և երկրի. և որ ծանեան զնա և հա-

ւա

